# ԿԵԱՆՔԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ

ՀԵՂԻՆԱԿ

## ԼՈՐՏ ԷՅՎՊԻՒՐԻ

(ՃՈՆ ԼԻՒՊՈՔ)

Անդամ Բրիտանական Խորհրդարանի,
Նախագահ Լոնտոնի Առեւտրական Սենեկին
Խնամակալ Բրիտանական Թանգարանին
եւն. եւն. եւն.



ԱՆԳՂ. ԲՆԱԳՐԷՆ ԹԱՐԳՄԱՆԵՑ

**ԳՐԻԳՈՐ ՈՍԿԵԱՆ**

Գրաքննիչ Կրթական Նախարարութեան

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1908

UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

Google



Ի ՅԱՒԷՐԺԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ

ՋՈՅԳ ՈՂԲԱՑԵԱԼ ՀԱՐԱԶԱՏԱՑՍ

# ԿԱՐԱՊԵՏ ՈՍԿԵԱՆ

*ՍՐՏԱՅՈՅԶ ԲԱՆԱՍՏԵՂԾԻՆ*

ԵՒ

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ՈՍԿԵԱՆ

ԱՌԱՔԻՆԱՍԷՐ ԲԺՇԿԻՆ

ԳՐԻԳՈՐ ՈՍԿԵԱՆ

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ



Գոհութեամբ կը նշմարուի թէ, ընթերցասիրութեան օր քան զօր ծաւալմամբ՝ գրական լուրջ երկասիրութիւնք մեր մէջ առհասարակ աւելի ջերմ ընդունելութիւն կը գտնեն քան պարզ վիպասանութիւնք. այսինքն օգտակարն աւելի կը փնտռուի այժմ քան թէ զուարճալին։

Հասարակութեանս ճաշակին այս զգալի բարեփոխութիւնը կը խրախուսէ օտար գրականութեամբ զբաղող մեր գրական անձինքն, յաւէտ այդ առաջին դասակարգին պատկանող գործոց մէջէն ընտրելու իրենց աշխատասիրութիւնքը, վստահ ըլլալով որ անոնք միւսերէն աւելի պիտի գնահատուին, եւ աւելի արդիւնաւոր պիտի ըլլան։

Անգղիացի գիտուն ազնուականին ներկայ աշխատասիրութիւնն ալ այդ մի եւ նոյն դասակարգին կը վերաբերի։ Գրական ճշմարիտ գոհար մը, ա՛յնքան խնամով գունագեղ զարդարուած, Ս. Գրքէն քաղուած սքանչելի հատուածներով, հին եւ նոր ժամանակաց եւ ազգաց իմաստուններուն ընտիր խորհրդածութիւններով, արուեստից, գիտութեանց եւ դպրութեանց մեծամեծ աշխատաւորներու վեհ եւ զմայլելի օրինակներով, վեհանձնութեան եւ մարդասիրութեան ազնիւ տիպարներով, ինչպէս նաեւ առողջապահական հմտալից եւ օգտակար պատուէրներով։

Մեր հոգեկան եւ մտային կարողութեանց զարգացման, մեր սրտին զգացմանց ազնուացման, եւ մեր մարմնոյն խնամքին եւ պահպանութեան, այսինքն, մարդուն բնական եւ բարոյական կատարելութեան եւ կեանքի ճշմարիտ երջանկութեան վսեմ նպատակին նուիրուած, եւ ամէն հասակի եւ ամէն վիճակի յարմար ոճով եւ ճարտարութեամբ գրուած այս գրքոյկս է որ թարգմանելով կը յանձնարարեմ սիրելի Հասարակութեանս, ո՛չ միայն կարդալ, այլ մտադրութեամբ ուսումնասիրել։

Գ. Ռ.

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ



Digitized by Google

# Կեանքի գործածութիւնը



## ԳԼՈՒԽ Ա.

## ՄԵԾ ԽՆԴԻՐԸ

*Կեանքի մէջ ամէնէն կարեւոր բանն ապրիլ սորվիլն է ։ Չկայ բան մը զոր մարդիկ աւելի բաղձանք յայտնեն պահպանելու քան թէ կեանքն, և չկայ բան մը զոր աւելի նուազ ջանան լաւ կառավարել ։ Ադոր յաջողիլը կարծուածին չափ դիւրին չէ ։ «Կեանքը կարճ է, կ՚ըսէ Իբօկրատ, իւր բժշկական առածներուն սկիզբն, անոր արուեստն երկար, առիթն անցաւոր, փորձը խաբուսիկ և դատաստանը դժուարին ։»*

*Երջանկութիւնն և յաջողութիւնն ոչ թէ պարագաներէն՝ այլ մեզմէ կախում ունին ։*

*«Աւելի շատ մարդոց կործանման պատճառը բուն իսկ իրենց յանցանքն եղած է քան թէ ուրիշներու չարակամութիւնն. աւելի շատ տուներ և քաղաքներ մար-ւ ձեռամբ անհետացած են քան թէ փոթորիկներու և կրաշարժներու հետեւանօք ։»*

*Երկու տեսակ կործանում կայ. մին ժամանակին ործն է, իսկ միւսին համար մարդն է պատասխանատու ։*



Digitized by Google

Կործանումներուն ամէնէն ցաւալին մարդուն կործանումն է։ Սենեկա ըսած է. իւրաքանչիւր մարդու չարագոյն թշնամին բուն իսկ իւր սրտին մէջն է։ «Մարդոց մեծագոյն մասը, կ'ըսէ Լա Պռիւյէր, իրենց կեանքին մէկ մասը կը գործածեն միւս մասը դժբախտ ընելու համար,» և շատ անգամ «արեան տաքութիւնը մեր երիտասարդութեան ժամանակ այնպիսի բաներ ընել տուած է մեզ, որոց համար ծերութեան ժամանակ մեր ցաւաքար ոսկրերը կը ղղջան» (1)։ Մարդ իւր անձը կը սիրէ յաւէտ եռանդով քան թէ իմաստութեամբ։

Երբեմն իբրև լաւատես կը բամբասեն զիս։ Այլ սակայն երբեք անգիտանալ չեմ կեղծած, և երբեք չեմ ուրացած մեր էութեան հոգերն և վիշտերն։ Երբեք չեմ հաստատած թէ մարդիկ երջանիկ եղած ըլլան, մի միայն կարծիք ունեցած եմ թէ կարող են երջանիկ ըլլալ, թէ յանցանքը մի միայն իրենցն է եթէ աղոր չեն յաջողիր, և թէ մարդոց մեծագոյն մասն իւր ձեռքն անցած երջանկութեան առիթներէն շատը կը կորսնցնէ։ Եւ այս վերջին խորհրդածութիւնը թերևս ամէնէն ցաւալին է։

« Վասն զի բոլոր գրուած և ըսուած տխուր խօսքերուն մէջ
Ամէնէն տխուրներն սոնք են. « այս պիտի կայ ենար ըլլալ » (2)։

Շատ անգամ մեր չարիք անուանածն ընդհակառակը բարիք մ'է զոր չենք կրցած պէտք եղած կերպով գործածել, և կամ մինչև ի չափազանցութիւն մղած ենք։ Չափազանց արիութիւնն յանդգնութեան կը դառնայ, սէրը՝ տկարութեան, խնայողութիւնն՝ ագահութեան։ Եւ սակայն երբեք կարելի չէ եղած ապացուցանել թէ

(1) Լիլի։ (2) Ուիդդիէ։

Digitized by Google

բնական օրինաց մէջ ո՛ և է փոփոխութիւն մը՝ յառաջադիմութիւն մ'եղած ըլլայ։

Պարսիկները կը կարծէին թէ երջանկութիւնը Հէօրմիւզէն, բարութեան իշխանէն կու գայ, և դժբախտութիւնն Էհրիմէնէն, չարութեան ոգիէն։ Բայց ստուգիւ մեր վիշտերը մեր անձնական գործն են. մեր սխալներէն յառաջ կու գան, բառին կրկին իմաստովը, այն սխալներէն միանգամայն զորս կը գործենք խղճիւ և կատարեալ գիտակցութեամբ, և դարձեալ այն սխալներէն՝ որք ոչ նուազ բաղմաթիւ ըլլալով՝ տգիտութեան կը վերագրուին։ Մեր սխալներուն առաջին դասակարգին համար, մեր ներսի դին անսխալական առաջնորդ մ'ունինք։ Եթէ գէշ կը գործենք պատճառն այն է որ աչքերնիս գէշը տեսած են։ Եթէ գէշը չեն տեսած — միայն թէ բան մը չտեսնելու համար յօժարութեամբ զանոնք խփած չըլլանք — մեղքով յանցաւոր չենք, այլ միայն անխորհրդութեամբ։.

Սխալներու երկրորդ դասակարգին մասին, պէտք է որ դատողութեան վստահանանք, մեր ծնողաց, մեր անդրանիկ եղբարց, մեր բարեկամաց դատողութեան վրայ։ Մեր կրթութիւնը մասամբ իւիք մենք կը կատարենք։ Ամէնքս ալ գէթ մէկ աշակերտ ունինք զոր պարտինք կրթել և դաստիարակել։

Ինչ որ մենք մերովին կը սորվինք՝ աւելի իսկապէս մեր էութեան մասը կը կազմէ քան ինչ որ ուրիշները մեզի կը սորվեցնեն։ Մեր կրթութիւնը մեր դպրոցական դասերուն վերջանալովը չվերջանար. ընդհակառակն հա-
թէ այն ատեն կ'սկսի. և մեր կեանքին չափ կը
։ «Որքան չահաւոր կ'ըլլար, կ'ըսէ Սենեկա, եթէ
էինք որ մարդիկ իրենց ուղեղն ալ իրենց մարմ-
պէս կը մարզեն, և որչափ որ հաճոյքներ վայելելու՝
չափ ալ առաքինութեան հասնելու համար կը տքնին։

Digitized by Google

Ոմանք այնպէս համոզուած են թէ ամէն բան յառաջագոյն կարգադրեալ է և ինչ որ ըլլալ կը պարտի, պիտի ըլլայ, յանձնառու ըլլանք կամ ոչ։ Անոնք այնպէս կը նկատեն թէ մարդը պարզապէս լարուած մեքենայ մ'է, գերագոյն զօրութեան մը խաղալիք։ Ուստի նախ և առաջ քննելու խնդիրն այն է թէ արդեօք կեանքի գիտութիւն մը կա՞յ թէ չկայ։ Կարո՞ղ ենք արդեօք մեր ճանապարհն ուղղել ժամանակի ովկէանին մէջէն, թէ դատապարտեալ ենք խարխափելով երթալու։ Պատասխանը շատ պարզ է. «Մարդը մարդ է և իւր ճակատագրին տէր(1)» և կամ, գոնէ, եթէ չէ, այդ մասին յանցանքը մի միայն իրեն պէտք է վերագրել։ — Ինչ որ ըլլալ ուզէք, պիտի ըլլաք, վասն զի մեր կամքին կարողութիւնն այնպէս է գերագոյն կամքին հետ համերաշխ գտնուած ատեն, ինչ որ լրջօրէն և հաստատապէս առաջադրենք ըլլալ՝ կ'ըլլանք ստուգիւ(2)։

Արդ քանի որ կրնանք այսպէս տրամադրել մեր ճակատագիրը, մեզ համար շատ մեծ կարեւորութիւն ունի հարցնելն իւրովին թէ ի՞նչ կ'ուզենք ըլլալ, և թէ ի՞նչպէս պէտք է կարելի եղածին չափ օգուտ քաղել կեանքի ճոխ ժառանգութենէն։ Կան մարդիկ որ էութեան մէջ նպատակ մ'ունին, կան նաև այնպիսիք որ բնաւ ո՛և է նպատակ չունին։ Մեր առաջին բաղձանքը պարտէր ըլլալ մեր անձէն կարելի եղածին չափ աւելի և լաւագոյն կերպով օգուտ քաղել։ «Ամէն մարդու նախ և առաջ հետամուտ ըլլալու պարտաւոր եղած բանը՝ կ'ըսէ Հիւմպոլդ, իւր բոլոր կարողութեանց ամէնէն կատարեալ և ամէնէն ներդաշնակ զարգացումն է, որպէզի կարող ըլլայ իւր բովանդակ էութեան՝ մինչև ամենէ ճոխ և ամենէն հզօր նշանակութեան բարձրանալ.

(1) Թէննիսըն։ (2) Ց. Պ. Րիխդր։

Digitized by Google

և կամ, անգամ մ'ալ Յ. Պ. Ռիխդըրի խօսքը մէջ բերելով, «յաջողիլ ինքն իրմէն քաղելու այն ամէն բան որ այդ նախնական նիւթը կը պարունակէ»: Այլ սակայն շահախնդրական նպատակաւ մը չէ որ այսպէս ընել կը պարտինք, կամ նախապէս ադոր բնաւ չյաջողելու պիտի դատապարտուէինք: «Եւ ոչ մէկ մարդու անհատական յաջողութիւնը, կ'ըսէ Պագօն, կրնայ երբեք նկատուիլ իբր խոստովանելի նպատակ իւր էութեան:» Ամէնէն վսեմ և լաւագոյն հոգիներն իսկ, Պղատոն և Արիստոտել, Պուտտա և Պօղոս առաքեալ, երբեք պիտի չբաւականանային մի միայն իրենց անձին համար կատարելութեան հետամուտ ըլլալով:

Ուստի իբր անժխտելի պիտի նկատեմ թէ մենք ուրիշին օգտին տեսակէտով պարտինք մեր անձին զարգացման աշխատիլ. և կ'ուզէի անմիջապէս դիտել տալ թէ մեր այդ առաջադրած գործն ո՛րքան շահեկան է: Ծանիր զքեզ ծանօթ առածը կը ցուցնէ թէ ո՛րքան կարեւորն և միանգամայն ո՛րքան դժուարին է մեզ մեր անձին ճանաչումը: Մոնթէնեը կ'ըսէ իւր քաղցր լեզուաւ. «Աշխարհի մէջ իմ անձէս աւելի յայտնի հրէշ կամ հրաշք չեմ տեսած»:

Խրատ տալը միշտ ապերախտ գործ մը եղած է: Ջեմ մոռնար Նոր-Զելանտացի նորադարձին տխուր դիպուածն «որն որ, կ'ըսէր իւր ցեղապետը քարոզչի մը, այնքան խրատ կուտար մեզ որ ստիպուեցանք զինքն ուտել, որպէս զի լռէ»: Այլ սակայն «անոնք որ չեն ուզեր իրենց տրուած ձրի խրատներն առանց ընդդիմութեան ընդունիլ, հուսկ ապա զզջումը շատ սուղ պիտի գնեն»[1]: Ուստի իմ միտքս քանի մը օգտակար խրատ տալ է այնպիսեաց որ կ'ուզեն բան մ'ըլլալ կամ ընել, որք կը բաղձան իրենց անձէն և էութենէն կարելի ած լաւագոյն օգուտը քաղել:

---

[1] Լիլի:

Ոչինչ աւելի տխրազդեցիկ է քան տեսնելը թէ մարդ ո՛րքան անխորհրդաբար կը վատնէ իրեն շնորհուած առիթներն։ Ո՛րքան երջանկութիւն կրնայինք պարգեւել ուրիշներու եթէ օգուտ քաղել տայինք անոնց այն բարիքներէն զորս մենք անմտաբար կը գործածենք, եւ կամ անոնցմէ օգուտ քաղելու եղանակը չենք դիտեր։

Ուշադիր ըլլանք որ մեր հաճոյքներն իրական ըլլան եւ ոչ թէ երեւակայական։ Շատ բաներ կան զորս մեզի իբր հաճոյք ճանչցուցած ըլլալնուն համար յանձն կ'առնունք ընել։ Պիտի ներողէինք անոնցմէ եթէ տարբեր անուն մը տուած ըլլային անոնց։ Շատ մարդիկ կարծեն թէ կ'զբօսնուն քանի որ բնաւ օգտակարութիւն մը չեն տեսներ իրենց ըրած բանին մէջ։ Ուրիշներ կարծեն թէ այնպէս կը հաւատան որ միմիայն զգայական հաճոյքն է որ գոյութիւն ունի։ Ճշմարիտն այն է որ հոգեկան հաճոյքներն ամէնէն քաղցր եւ միանգամայն ամէնէն տեւականներն են։

Մենք անխորհրդաբար անխնամ կը թողունք կամ կը կործանենք մեր մարմինն, եւ սակայն մէկէ աւելի մարմին չունինք. հոգւոյն առողջութիւնն անոր առողջութենէն կախում ունի։ Գեղարուեստից մեզի ընծայած հաճոյքներուն գոնէ կէսէն օգուտ քաղելու կերպը չենք գիտեր։ Նոյնպէս ալ գիտութեանց օգուտն հասկնալու համար չենք պատրաստուիր։ Թանգարաններու եւ գիտական հաւաքածոյներու այցելողք միթէ յոյժ բազմաթի՞ւ են։

Երկնի եւ երկրի գեղեցկութիւնքն ալ պէտք եղածին պէս չենք վայելեր. անտարակոյս աւելի օգուտ կը քաղենք երաժշտութենէն, այլ սակայն ոչ այնքան որքան դեռ կրնայինք քաղել. կը պարծինք թէ մենք միայն բանականութիւն ունինք, եւ սակայն այն բանականութենէն՝ որուն համար այնքան կը պարծինք, ո՛րքան չենք

Digitized by Google

գիտեր օգտուիլ մեր երջանկութիւնն աւելցնելու համար։ Կրնար նոյն իսկ հարցուիլ — և չնական իմաստասէրք խնդիր ըրած են զայս — թէ, այս ամէնը նկատելով հանդերձ, հոգին վնասակար ժառանգութիւն (1) մը չէ՞, աղբիւր մը չէ՞ յաւէտ տառապանքի քան թէ հաճոյքի։ Անասունք բնաւ մեր աւելորդ մտատանջութիւնները չունին։ «Մարդ ունայն ստուերի մը մէջ կը քալէ և ի զուր ինքզինք կը մաշեցնէ»։ Մենք կասկածներով, երկիւղներով, հոգերով և նեղութիւններով զմեզ կը չարչարենք։ Գաղտնիքն ամէն կողմանէ զմեզ կը պաշարէ, բայց անոր դէմ անհամբերութիւն ընելն անօգուտ է։

Այսու հանդերձ որքան որ մտահոգութիւնն անօգուտ եղած ըլլայ, անտարբերութիւնն ալ կրնայ վտանգաւոր ըլլալ։ Պէտք է միտք յոգնեցնենք նոյն իսկ այն բաներուն վրայ՝ որոց մասին կարծենք թէ աւելի ծանօթութիւն ունինք։ Սխալելն ամէն տեղ պատրաստ է մեզ համար։ Բայց «հակառակ այս աշխարհի բոլոր թերութեանց, աստուածային ողորմութիւնը չէ ուզած որ մենք յանկարծ չար դառնանք։ Շատ ժամանակի և շատ աշխատութեան պէտք ունինք զմեզ բոլորովին ի կորուստ մատնելու համար։ Հեփեստոսի երկնքէն իյնալուն պէս առաքինութեան բարձունքէն չենք իյնար, մէկ օրուան մէջ»(2)։

Եւ եթէ անհատը թողլով, ցեղը նկատողութեան առնունք, արդեօք աւելի ևս զգալի չը՞լլար թէ մենք մինչև ո՛ր աստիճան կ՚անփութանանք մեր շահերուն մասին, մարդկութիւնն այսօր իսկ կրնայ խոստովանիլ Նեվտոնի հետ թէ մենք կը նմանինք ծովեզերքը խաղացող մանկանց, որք հոն մերթ ընդ մերթ աւելի փայլուն ցցի մը, և աւելի հետաքրքրաշարժ մամուռ մը կը

(1) Damnosa hereditas. (2) Սըր Թ. Պրոուն։

գտնեն․ մինչդեռ ճշմարտութեան անհուն ովկէանն իրենց առջև կը տարածուի, դեռ բնաւ չխուզարկուած։ Չկայ միակ նիւթ մը որոյ յատկութիւններն և բուն օգուտն ստուգիւ ճանչցած ըլլանք, առաւօտէն մինչև երեկոյ կ'աշխատինք, և սակայն եթէ միայն բնութեան բոլոր յատկութիւնները ճանչցած ըլլայինք, հաւանական է որ օրական մէկ կամ երկու ժամ աշխատութիւնը լիովին բաւական կ'ըլլար մեր ամէնէն անհրաժեշտ պէտքերն հոգալու համար, և պէտք եղածին չափ ալ ժամանակ կը մնար մեզի մեր միտքը մշակելու և մեր սրտին պահանջումներուն գոհացում տալու համար։

Շոգիի զօրութենէն իսկ դեռ կատարելապէս օգուտ չէ քաղուած․ յիսուն տարի առաջ ելեկտրականութեան պաշտօնները դեռ անծանօթ էին, այսօր իսկ հազիւ հազ գիտենք անկէ քիչ մ'օգտուիլ, գետերու շարժիչ կարողութիւնը կորսուած զօրութիւն մըն է։ Եւ ո՛րքան ցաւերէ գրեթէ զերծ կ'ըլլար մարդ եթէ յաւէտ անզգայութիւն պատճառող դեղերը գտած ըլլար։

Ամբողջ հատոր մը բաւական պիտի չըլլար այս խընդիրը պաշտպանելու համար ցուցուելիք օրինակները պարունակելու։ Բնաւ տարակոյս չկայ թէ տակաւին հազարաւոր գիւտեր յայտնուելու մօտ են։ Հետևաբար, տարօրինակ բան չէ՞ որ քաղաքակիրթ ազգեր միլիարներ վատնեն առ հասարակ իրենց կործանման համար, և իրարու հետ կռուին երկրի անկիւն մը ձեռք ձգելու համար․ մինչդեռ «ճշմարտութեան անհուն ովկէանն իրենց առջև կը տարածուի, դեռ բնաւ չխուզարկուած։»

Հազիւ մէկ սերունդ առաջ կը հաւանէին որ մանկանց կէսն առանց կարդալ և գրել գիտնալու մեծնայ։ Այսօր իսկ կրթութեան իբր թէ չափազանցութեան մասին յաճախ պարսաւանք կը լսենք։ Ճշմարիտն ըսելով, այս քննադատութիւնը կը դատապարտէ յաւէտ այն ամէն

Digitized by Google

կրթութիւն որ կեանքի հետ ուղղակի առնչութիւն չունի։ Մարդիկ ալ կան, արդարեւ ոչ այնքան բազմաթիւ, որ մեր դպրոցական ծախքերը չափազանց կը գտնեն։

Չեն տեսներ թէ ազատութիւնը կրթութենէ շատ աւելի սուղի կ'ըլլայ։ Մեր տղաքն ամէնքն ալ այսօր կրթութեան քանի մը տարրերը միայն կ'ստանան։ Բայց իրաւամբ կրնանք մենք մեզի հարցնել (թէեւ չեմ ուզեր այս խնդիրն հոս քննել) թէ այս մասին մեր ընդունած դրութիւններն արդեօք լաւագոյննե՞րն են։ Բաւական պիտի համարիմ դիտել տալով միայն թէ մեր վարժարանաց մէջ բարոյական դաստիարակութիւնը շատ անխնամ թողած ենք, և աղէկ յառաջ եկած է տեսական վարդապետութիւն մը, որ թուի թէ ըսել կ'ուզէ, եթէ Աստուծոյ պատուիրանքը չյարգէք, գէշ ըրած պիտի ըլլաք անտարակոյս, և ձեր այդ վարմունքն ուրիշի վըշտակրութեան պատճառ պիտի ըլլայ, բայց ձեզի, գէթ այս աշխարհի մէջ, երջանկութիւն և կարեւոր շահեր պիտի պարգեւէ։ Ըստ այս խորհրդածութեան, անձնասիրութիւնն, ագահութիւնն, անժուժկալութիւնը, ծուլութիւնն և ուրիշ մոլութիւններ, թէև ըստ ինքեան դատապարտելի, սակայն գէթ մեզի համար հաճոյքներու աղբիւրներ պիտի ըլլային։ Անոնք ուրիշի միայն պիտի վնասէին, զուարճութիւնը բնականաբար միմիայն իրենց անձին վրայ խորհողները պիտի փնտռէին, և առաքինութիւնն և բարութիւնն, ըստ ինքեան ազնիւ և վսեմ բաներ, նոյն իսկ անմեղ զուարճութիւններէ հրաժարելու պատճառ պիտի ըլլային, և զմեզ մշտնջենաւոր անձնուրացութեան մը պիտի դատապարտէին։

Բայց, ճշմարիտը բոլորովին ատոր հակառակն է։ Մոլութիւնն այնքան քիչ կը վայելէ բնաւ բռնութիւն կամ օրէնք չճանչնալու առանձնաշնորհութիւնն, որ չարն ինքնին կ'իյնայ յոռեգոյն գերութեան մէջ, ան է իւր

Digitized by Google

մոլութեանց գերութիւնն։ Այսու հանդերձ շատ երիտասարդներ կարծեն թէ այնպէս կը հաւատան որ մոլութիւնն այրական բան մը կը պարունակէ։ Սակայն ամէնէն յիմար և ամէնէն տկար էակն ալ կարող է մոլութիւններ ունենալ։ Ճշմարիտ այրութիւնն առաքինութիւնն է, որոյ մէջ կը կայանայ ճշմարիտ ազատութիւնն, իսկ ճշմարիտ գերութիւնը՝ մոլութիւնն է։ Ապրելու այս ինչ կերպը նուաստացուցիչ չէ՝ անբարոյական ըլլալուն համար, անբարոյական է՝ ըստ որում կը նուաստացնէ։ Եւ եթէ իրաց ո՛ և է արտաքոյ կարգի յեղաշրջութեամբ, չարիքն ի բարիք դառնար, երջանկութիւնն և հոգւոյ խաղաղութիւնը դարձեալ ոչ նուազ աղէկ կը վնասուէին։

Չեմ ուզեր հոս աստուածաբաններուն կարծիքը մէջ բերել հաստատելու համար այն խնդիրը թէ չարիքն և ցաւն իրարմէ անբաժանելի են։ Լաւագոյն կը համարիմ կատարեալ աշխարհականէ մը՝ Լորտ Չէսթրֆիլտէն վկայութիւն մէջ բերել։ Նա առ որդին իւր գրած խրատական նամակներէն մին այսպէս կը վերջացնէ. «Ասոնք են առհաւասիկ այն վարձատրութիւնք զորս առաքինութիւնն անվրէպ կ'ստանայ, և ասոնք են այն նկարագիրք որոց նմանելու պարտիս ջանալ, եթէ կ'ուզես բարի և մեծ մարդ մ'ըլլալ. որով միայն կարելի է երջանկութեան հասնիլ։»

Տէգարդ կեանքը կառավարելու վերաբերեալ իւր կանոնները չորս առածներու մէջ կը համառօտէր.

«Առաջինը, տէրութեան օրէնքներուն և սովորութիւններուն հնազանդիլ, հաւատարմութեամբ պահելով այն կրօնքն որուն մէջ մանկութենէս ի վեր կրթուիլ շնորհած է ինձ Աստուած.

«Երկրորդը, գործերուս մէջ կրցածիս չափ աւելի անյողդողդ և աւելի հաստատամիտ ըլլալ.

Digitized by Google

«Երրորդը, միշտ ջանալ յաւէտ անձիս յաղթելու քան թէ բաղդին.

«Չորրորդը, բոլոր կեանքս գործածել ճշմարտութեան գիտութեան մէջ կրցածիս չափ յառաջադիմելու։»

Միայն անձնասէրներն, անտարբերները կամ չարերը չեն որ իբր իրենց շահը նկատած բանին անամօթաբար հետամուտ ըլլալով՝ իրենց անձին և թէ ուրիշին դժբախտութեան պատճառ կ'ըլլան։ Պէտք է նաև խոստովանիլ թէ շատ պատուական անձինք և ընտիր դրեանք թէև բարի դիտաւորութիւններով լի, ըստ ինքեան միևնոյն սխալը կը գործեն։ Անբարոյականութիւնն և հաճոյքն իրարու հետ շփոթած են, առաքինութիւնն իբր մշտնջենաւոր անձնուրացութիւն նկարագրած և խստապահանջութիւնն իբր կրօնք նկատած են։. Ամէն օր մեր չուրջ կը տեսնենք այնպիսի լաւ մարդիկ որք կարծես համոզուած են թէ ինչ բան որ հաճոյք կը պատճառէ՝ մեղք ըլլալու է, թէ կրօնքի ճշմարիտ հոգին կատարեալ խստութիւն, տխրութիւն և մահացում է. թէ պայծառ, լուսալի և զուարթագին բնութիւնն ոչ թէ օրհնութիւն մը՝ այլ չարիք մըն է, Չարութեան ոգիին մէկ փորձութիւնն է, և ոչ թէ ամենայն Բարեաց Արարչին մեզ շնորհած վայելքներուն մեծագոյն աղբիւրներէն մին։ Գօուքըր երկու յոյժ գեղեցիկ տողերու մէջ կ'ըսէ թէ

Ճանապարհն վշտի, և այս ճանապարհը միայն
Կ'առաջնորդէ մեզ այն երկիրն ուր ամէն վիշտ անծանօթ է։

Ստոյգ է թէ չենք կրնար կեանքի ճանապարհը կատարել առանց վիշտը ճանչնալու։ Ամէն լոյս ստուեր մը կը թողու։ Առանց խօսելու այն անխուսափելի տրտմութեանց վրայ զորս էութեան յոյժ նեղ սահմանները մեր

Digitized by Google

վրայ կը թողուն, մեր սիրելեաց կորստով, մեր կեանքն այնքան բազմայօդ է, աշխարհ դեռ այնքան անփորձ է, և այնքան քիչ կ'ըմբռնենք մեր էութեան պիտոյքն, զմեզ շրջապատող նիւթոց և զօրութեանց բնութիւնն ու յատկութիւններն, որ ճակատագրի բերմամբ՝ շատ վիշտ զգալու և շատ տառապանք կրելու ենթակայ ենք։ Բայց Գօուբըր կը պնդէ թէ միայն վշտի ճամբան է որ երկինք կ'առաջնորդէ, իբր թէ այս աշխարհի մէջ երջանիկ կեանք մը՝ հանդերձեալին մէջ անվրէպ տառապանօք փոխարին-ուելու պարտաւոր ըլլար։ Բոլորովին սխալ գաղափար, որ սակայն շատ վիշտ պատճառած է փափուկ հոգի-ներու, զանոնք խռովելով և անձկութեամբ և տա-րակուսանօք լեցնելով։ Զուարթ բնաւորութեան տէր մէկէ աւելի երիտասարդ խղճի անհանգստութիւններ զգացած՝ և ինքզինք յանդիմանած է իւր երջանկութեան համար որոյ մասին երախտադէտ ըլլալ կը պարտէր։ Եւ սակայն միթէ թանկագին առանձնաշնորհութիւն մը չէ՞ իւր զուարթութեան ներկայութեամբ կարենալ լուսաւո-րել զամէն անոնք որ, իրենց փորձանքներուն և կամ վատառողջութեան հետեւանօք, այլ ևս ինքնին չեն ճանչնար լուսոյ և ուրախութեան այն առատաբուղխ աղբիւրը։ Գօուբըր թէև պարզ Մաքրակրօն մ'ըլլալէ շատ հեռու էր, սակայն իւր վարդապետութիւնը զու-նաւորեալ է այնպիսեաց ոգւովն, որք, ըստ Մագոլէյի խօսքին, ցլամարտն և աքաղաղներու կռիւը կը դատա-պարտեն, ոչ թէ կենդանեաց չարչարանքի պատճառ մ'ըլլալնուն՝ այլ հանդիսականները զուարճացնելնուն համար։

Շատ մարդիկ կը նեղուին և կը խռովին թէ չեն կրնար էութեան գաղտնիքն հասկնալ։ Սակայն «բարի և խելացի մարդը կրնայ երբեմն աշխարհի կազմակեր-պութեան դէմ զայրանալ, և երբեմն ատոր համար տրտ-

Digitized by Google

միլ. բայց վստահ եղէք թէ երբեք չէ եղած մարդ մը որ հոն իր պարտաւորութիւնը կատարելէ յետոյ աղէկ դժգոհ ըլլայ» (1)։ Աշխարհ հայելիի մը կը նմանի. եթէ ժպտիք՝ կը ժպտի, իսկ եթէ խոժոռիք՝ ինքն ալ կը խոժոռի։

«Չկայ պարտաւորութիւն մը, կ'ըսէ Սենեկա, որ, կատարուելով, չյաջողի զմեզ աւելի եւս երջանիկ ընել. ոչ ալ փորձութիւն մը՝ որոյ դէմ դարման չգտնուի»։ Բնութիւնը մի՛ զրպարտեր, կ'ըսէ Միլգըն, «նա առ քեզ ունեցած պարտաւորութիւնը կատարած է. դուն ալ քու պարտաւորութիւնդ կատարէ»։ Կրնանք վստահ ըլլալ թէ Արարիչն այնպէս ըրած չէր ըլլար որ բնութիւնը գեղեցկութիւն միայն ներկայացնէ մեր աչքերուն և նուազ միայն՝ մեր ականջներուն, եթէ ուզած չըլլար որ մենք միեւնոյն ժամանակ մեր ամբողջ էութեամբ զայն վայելենք. և «գրեթէ անկարելի է ճշդիւ գնահատել թէ մարդ ո՛րքան խաղաղութիւն կը պարգեւէ ուրիշին, և ո՛րքան ուրախութիւն իր անձին, իր կեանքը լաւ կառավարելով»(2)։

Եթէ այս դարն ստուգիւ (և շատ նկատումներով այս է իմ կարծիքս) աշխարհի տեսած բոլոր դարերուն մէջ ամէնէն հրաշալին, ամէնէն շահեկանն և ամէնէն լուսաւորեալն է, այդ մեր բարեբաղդութիւնն է, բայց անոր փառքը մեզի չվերաբերիր. այդ պատճառաւ պէտք է որ զմեզ երջանիկ համարինք, բայց յաւէտ երախտագիտութեամբ քան թէ հպարտութեամբ։

Ուստի պէտք է երախտագիտութեամբ և կարելի եղածին չափ կատարելապէս վայելել էութեան անհամար բարիքները։ Պատրաստ ըլլալով միանգամայն անոր հոգերն և տրտմութիւններն ալ ճանչնալու։ «Կեանքն,

(1) Սաւութէյ։ (2) Նմանողութիւն Քրիստոսի։

ըսած է Ուալքօլ, կատակերգութիւն մ'է անոնց համար որ լաւ կը խորհին, իսկ եղերերգութիւն մը՝ անոնց համար որ կ'զգան»։ Արդարև կեանքն երբեմն եղերերգական է, և շատ անգամ ալ կատակերգութեան երևոյթ կ'առնայ, բայց յոյժ շատ անգամ ալ ինչ որ զայն ընել ուզենք այն կ'ըլլայ։ «Ոչ մէկ չարիք, ըսած է Սոկրատ, կրնայ իմաստուն մարդուն հասնիլ, ոչ կեանքի և ոչ մահուան մէջ»։ Անտարակոյս բարիք մարգարէացողներն աւելի իրաւունք ունին քան թէ չարիք մարգարէացողներն։ Այսու հանդերձ անտարբեր ենք երջանկութեան տարիներու ընթացքին համար. մինչդեռ տրտմութեան կամ ցաւի իւրաքանչիւր վայրկեանը զգուշութեամբ կը հաշուենք։

Չենք կրնար յուսալ թէ միշտ պիտի յաջողինք։ Բնութիւնն իսկ շատ անգամ կը վիժէ։ «Բայց երբեք յանդգնութեամբ մի՛ հպարտանաք յաջողութեան և երջանկութեան մէջ, և երբեք երջանկութենէ մի՛ յուսահատիք ձախորդութեան մէջ»([1])։

Սուրբ Գրոց շատ ծանօթ մէկ հատուածը կ'ըսէ մեզ. «Լայն դուռն և ընդարձակ ճանապարհն ի կորուստ կը տանին, և շատեր կան որ հոն կը մտնեն։ Բայց նեղ դուռն և նեղ ճանապարհը կեանքի կ'առաջնորդեն, և քիչեր կան որ զանոնք կը գտնեն»։

Բայց այս հատուածներէն հանուած եզրակացութիւնը շատ անգամ սխալ կը թուի ինձ։ Չըսուիր մեզ թէ ուղիղ ճանապարհն աւելի խորտուբորտ և աւելի դժուարին է, այլ թէ նեղ է և դժուարագիւտ։ Տարակոյս չկայ թէ ուղիղ ճանապարհը մէկ հատ է միայն, և ծուռ ճանապարհներն անհամար են։ Նաւ մը ծովու վրայ միակ գիծ մ'ունի հետեւելու. եթէ երբեք ուրիշ գծի մը հետեւի,

([1]) Բոյետիոս

Digitized by Google

կը հեռանայ այն նաւահանգստէն ուր պիտի հանգչի։ Բայց ադկէ չհետեւիր թէ այս ճանապարհն ուրիշ ո՛ և է ճանապարհէ մ'աւելի խութերով և փոթորիկներով լի է։

Անտարակոյս կարելի չէ ուրանալ թէ չարիքն և անմըտութիւնը շատ անգամ յոյժ հաճելի են, երբեմն նոյն իսկ հեշտալի ի վայրկենին։ Փորձութեան զօրութիւնն ուրանալ պիտի նշանակէր այն, ինչ որ անտեղի եղած կ'ըլլար։ Միայն ըսել կ'ուզեմ թէ այդ փորձութեանց տեղի տալով՝ անցաւոր հաճոյք մը կը գտնենք տեւական վշտի մը գնով. թէ քիչ բան կը շահինք շատ կորսնցընելով, և թէ՝ «մէկ ժամուան ուրախութիւնը զղջման տարիներու գնով կ'ստանանք, և նոյն իսկ կը համարձակիմ ըսել—խօսքս մեր աշխարհային կեանքին վրայ է—թէ միայն բարութեան հետամուտ ըլլալով է որ պիտի կարենանք երջանկութեան հասնիլ։ Անձնուրացութեան մէջ աւելի երջանկութիւն կայ քան թէ անձնասիրութեան մէջ։ Ներողամիտ եղէք ուրիշներու համար, բայց ձեր անձին համար ո՛չ երբեք։

Յաջողութիւնն և երջանկութիւնն երբեք իրարու յար և նման բաներ չեն։ Շատ անգամ բախտին բոլոր շնորհներով լցուած մարդիկ կը տեսնուին, որոնք սակայն և այնպէս դժբախտ են։ Բախտը շատ բան կրնայ տալ, բայց կամեցողութիւնն է որ անոր պարգեւներէն գոհ մնալու պատճառ կ'ըլլայ։

«Ամէնուն չէ տրուած, կ'ըսէ Վօվընարկ, հարստութիւն, պաշտօն և պատիւ ստանալ, բայց ամէն ոք կարող է առաքինի, վեհանձն և իմաստուն ըլլալ։»

Ճշմարիտ հարստութիւնն ինչ որ ունինք անոր մէջ կայանար, այլ ինչ որ ենք՝ անոր մէջ։ Եւ այն ամէն առաւելութիւնք զորս կը վայելենք իրենց պատասխանատուութիւններն ունին։

«Մեր ներկայ կեանքը, կ'ըսէ Ս. Յ. Ոսկեբերան,

Digitized by Google

թատերական ներկայացում մ'է, և մարդուն գործերն՝ ողբերգութիւն մը, աղքատութիւն և հարստութիւն, տիրութիւն կամ ծառայութիւն, և այն ամէն տարբերութիւնք որք մարդիկն իրարմէ կը զանազանեն, անոր արտաքին տարրերն են միայն։ Բայց այս աշխարհային կեանքէն յետոյ, թատրը պիտի գոցուի, և դիմակները վար պիտի առնուին։ Այն ատեն իւրաքանչիւր ոք իւր գործոց համեմատ պիտի դատուի, ոչ իւր հարստութեան, ոչ իւր պաշտօնին, ոչ իւր արժանապատուութեան և ոչ իւր կարողութեան համեմատ։»

Ցուսանք թէ մեր գործերն այդ դատաստանին փորձին դիմանան։

Ի՞նչ պիտի ըլլայ արդեօք այդ փորձը։ Նա ոչ թէ մեր կատարելութիւնքն՝ այլ մեր կատարելու կամքը պիտի դատէ, հաշուի պիտի չառնէ նա կեանքի մէջ մեր ունեցած յաջողութիւնքն, այլ միմիայն մեր արժանիքն։ Եւ անտարակոյս այն ատեն յայտնի պիտի ըլլայ թէ առաքինի կեանքն է միայն երջանիկն, և թէ մեղքի և անձնասիրութեան մէջ ապրողներն իրենց անձը զոհ կուտան։

«Որդեակ, կ'ըսէ Սողոմոն, իմ խրատներս մի՛ մոռնար, և իմ պատուիրանքս թող սրտիդ մէջ մնան, վասն զի անոնք երկար օրեր և կեանքի և յաջողութեան տարիներ պիտի բերեն քեզ»(1)։



(1) Գիրք Առակաց։

Digitized by Google

# ԳԼՈՒԽ Բ.

## ՓԱՓԿԱՆԿԱՏՈՒԹԻՒՆ

*Կեանքի մէջ յաջողելու համար, փափկանկատութիւնն աւելի անհրաժեշտ է քան թէ տաղանդը: Բայց անոնք որ ի բնէ չունին, շատ դժուարաւ կրնան զայն ստանալ: Այլ սակայն կարելի է գէթ մասամբ մը զայն ստանալ, զմեզ շրջապատող անձանց բաղձանքը միշտ նկատողութեան առնելով:*

*Մէկու մը հաճոյք պատճառելու առիթ մը բնաւ մի փախցնէք: Քաղաքավար եղէք ամէնուն համար: «Քաղաքավարութիւնը, կ'ըսէր տիկին Մոնթէկիւ, արժէք չունի և զամէն բան կը գնէ:» Երբեմն կը գնէ նոյն իսկ այն բանը զոր դրամը կարող պիտի չըլլար ստանալ: Հետեւաբար, ջանացէ՛ք ձեր պատահած անձերուն սիրտը շահիլ: «Մարդոց սիրտը շահեցէք, կ'ըսէր Լորտ Պըրլայ, առ Եղիսաբեթ թագուհին, և անոնց սրտին հետ քսակն ալ միևնոյն ժամանակ պիտի շահիք:»*

*Փափկանկատութիւնը շատ անգամ հոն կը յաջողի ուր խստութիւնն անկարող պիտի ըլլար:*

*Յիշեցէ՛ք միշտ թէ մարդիկն համոզմամբ վարելն աւելի դիւրին է քան թէ խստութեամբ, և թէ միշտ լաւագոյն է զանոնք շահասիրել քան թէ նուաճել:*

*Ջանացէ՛ք շահիլ և մանաւանդ թէ արժանանալ ամէն անոնց վստահութեան որոց հետ կը կենակցիք: Մէկէ աւելի մարդ իւր ազդեցութիւնը ձեռք բերած է յաւէտ իր նկարագրով քան թէ իւր տաղանդով:*

*Ուրիշներու բաղձանքը կանխաւ գուշակեցէք, որ-*



Digitized by Google

քան որ ներքին համեստութիւնն և արդարութիւնը, բայց ո՛չ ըսելէ ալ մի՛ վախնաք։

Ամէն մարդ գիտէ այո՛ ըսել, թէպէտև ամէնքն ալ զայն շնորհքով ըսել չգիտնան, բայց ո՛չ ըսելն աւելի ևս դժուարին է։ Մէկէ աւելի մարդու կործանման պատճառն այս անկարողութիւնն եղած է։ Բայց որքան որ պէտք է երբեմն մերժել գիտնալ, նոյնքան ալ պէտք է գիտնալ շնորհքով մերժել։ Պէտք էր միշտ ջանայինք որ անոնք՝ որոց հետ կարգադրելու գործ մ'ունինք, հաճոյք զգան մեզ հետ յարաբերութեան մէջ գտնուելով, և բաղձան միշտ մեզ հետ գործ ունենալ։ Գործերու մէջ առհասարակ կարծուածէն աւելի զգացում կայ· մէկը չկայ որ բարեացակամութիւն և բարեկրթութիւն տեսնելով չզգածուի։ Հաճելի և համարձակ վարմունք երբեմն կրնան գործ մ'աւելի լաւ կարգադրել քան թէ դրամը։

Գրեթէ ամէն մարդ կարող է հաճելի ըլլալ· եթէ սիրով ուզէ ատոր աշխատիլ։ «Հաճելի ըլլալու բաղձանքն ընդհանրապէս հաճելի կ'ընէ զմեզ, և միւս կողմանէ, ով որ չջանար հաճելի ըլլալ, հաճելի պիտի չըլլայ (1)։» Եթէ չյաջողիք այն թանկագին պարգևը ձեր երիտասարդութեան մէջ ստանալ, շատ դժուարին պիտի ըլլայ ձեզ յետոյ զայն ստանալ։ Մէկէ աւելի մարդու աշխարհի մէջ յաջողութեան պատճառն յաւէտ իւր լաւ վարմունքն են քան թէ իրական յատկութիւններ· և միւս կողմանէ, մէկէ աւելի պատուական մարդ, բարութեամբ և լաւ դիտաւորութեամբ լի, թշնամիներ կը շահի իւր խստութեան պատճառաւ։ Ասկէ զատ, ճշմարիտ հաճոյք մը կ'զգանք ուրիշներուն հաճելի ըլլալով։ Միայն թէ ջանացէ՛ք· յուսախաբութիւն պիտի չունենաք այդպէս ընելով։

---

(1) Լորտ Չէսթրֆիլտ։

Digitized by Google

*Միշտ խոհեմ և պաղարիւն եղէք։ Որքան որ տաք սիրտ՝ նոյնքան ալ զով գլուխ ունենալ պէտք է։ Ամէն գործի մէջ հաւատարմութիւնն և պաղարիւնութիւնն յոյժ թանկագին են. շատ անգամ վտանգի կամ դժուարութեանց ժամանակ կրնան ձեր փրկութեան պատճառ ըլլալ։ Աւելի բանաւոր չէ հպարտանալ տաղանդներու համար քան թէ ժառանգութեամբ ստացուած հարստութեանց համար։ Բուն խնդիրն՝ երկու պարագայից մէջ ալ հոն կը կայանայ թէ արդեօք կրցա՞ծ էք ադոնցմէ օգուտ քաղել։ Ասկէ զատ, մարդիկ կան որ իրենց երեւցածէն աւելի հանճարեղ են։*

*Գիրքերը կարդալն աւելի դիւրին է քան թէ հոգիներն։ Աչքերը լաւագոյն նշաններն են նկարագրի քննութեան համար։*

*«Երբ որ աչքերը մէկ տեսակ՝ և խօսքերն ուրիշ տեսակ բան մ'ըսեն, այդ պարագային ամէն փորձառու մարդ աչքերուն կը վստահանայ (¹)։»*

*Շահասիրութենէ դրդեալ չափազանց բարեացակամ արտայայտութիւններու շատ մի՛ վստահանաք։ Մարդիկ յանկարծ չեն սկսիր մարդիկը սիրել, և ոչ կիներ՝ կիներն։ Եթէ մէկը զոր քիչ կը ճանչնաք չափէն աւելի ջանայ զձեզ իւր բարեացակամութեան վրայ վստահացընել, եթէ շուտ՝ և մանաւանդ շատ բան խոստանայ, կոյր վստահութիւն մ'ունենաք իւր խոստումներուն վրայ։ Նոյն իսկ եթէ անկեղծ ըլլայ, հաւանական է որ իւր խօսքերը մտքէն աւելի յառաջ կ'անցնին. և կամ զձեզ վաստըկելու մէջ շահ ունի։ Հետեւաբար մի՛ կարծէք որ ճշմարիտ բարեկամ է ձեզ այն ամէն մարդ որ ինքզինք այդպէս կը ցուցնէ. բայց նաև մ'աճապարէք մէկն իբր եր թշնամին նկատելու։*

(¹) Էմէրսըն։

Մենք կը պարծինք թէ բանական էակներ ենք․ բայց շատ սխալած կ'ըլլայինք կարծելով թէ միշտ բանականութիւնն է որ մարդոց կ'առաջնորդէ ։ Տարօրինակ և յեղյեղուկ արարածներ ենք մենք․ և մեր գործերը շատ անգամ մեր նախապաշարումներէն և կամ կիրքերէն յառաջ կուգան ։- Հետևաբար մարդոց վրայ աւելի ազդեցութիւն կ'ունենանք իրենց զգացումներն ուսումնասիրելով, քան թէ իրենց ողջմտութեան դիմելով ։ Եւ այս աւելի ևս ստոյգ է երբ խնդիրն ոչ թէ անհատի մը այլ ամբոխի մը վրայ է ։

Հակաճառութիւնը միշտ քիչ մը վտանգաւոր բան է ։ Շատ անգամ թիւրիմացութիւններու և պաղութիւններու պատճառ կ'ըլլայ ։ Կրնայ ըլլալ որ վերջին խօսքը քուկդ ըլլայ, եւ բարեկամդ կորսնցնես, որն որ յաւէտ գէշ առեւտուր մ'եղած կ'ըլլայ ։ Եթէ հարկադրուած էք հակաճառութիւն մը բանալ, կարելի եղածին չափ զիջողութեամբ վարուեցէք, ջանալով միանգամայն յայտնել թէ խնդրոյն մէկ կէտը զանց կ'առնուի ։ Քիչ մարդիկ կրնան գտնուիլ որ հակաճառութեան մէջ յաղթուած ըլլալնին ճանչնան․ յաղթուած ըլլալու զգացումն հաճելի բան մը չէ ։ Եւ յաղթուելով հանդերձ քիչ անգամ կը համոզուին ։ Նոյն իսկ կը համարձակիմ ըսել թէ անօգուտ է հակաճառութեամբ համոզել ջանալ ։ Ձեր փաստերը կարելի եղածին չափ պարզութեամբ և համառօտի. մէջ բերէք․ թերեւս յաջողիք ձեր հակառակորդին համոզումը խախտել ։ Այդ չափն ալ արդէն շատ է, և աւելին չէք կրնար յուսալ ։

Խօսակցութիւնը արուեստ մ'է ինքնին ։ Բայց միշտ շատ բան գիտցողները չեն որ շատ լաւ կը խօսին․ երբեմն միջակ կրթութեան տէր մարդիկ մեծ գիտուններէ աւելի խօսելու դիւրութիւն ունին ։

Չեմ կրնար ըսել թէ լաւ մտիկ ընելն ալ լաւ խօսե-

Digitized by Google

լաւ չափ դժուարին է, բայց այն ալ գրեթէ նոյնքան դժուարին և նոյնքան ալ կարեւոր արուեստ մ'է։ Ամէն լսածնիդ քննադատելու սովորութիւն մ'ունենաք։ Հետաձգեցէք ձեր կարծիքն, և ջանացէք ձեր խօսակցին զգացմանց թափանցել։ Եթէ բարեացակամ և համակրալից գտնուիք, յաճախ ձեզի խորհուրդ պիտի հարցնեն, և յաճախ՝ վիշտ կամ հոգ մ'ունեցողներուն օգնած և զանոնք մխիթարած ըլլալնիդ զգալու գոհունակութիւնը պիտի ունենաք։

Շատ դիտուիլ մ'սպասէք եթէ երիտասարդ էք։ Լռութեամբ մտիկ ըրէք և դիտեցէք զամէն ինչ որ կը դառնայ։ Հանդիսականներն աւելի լաւ կը դիտեն պայքարն, և որքան որ չտեսնուիք այնքան աւելի լաւ կրնաք տեսնել։ Այս կերպը գրեթէ տիրանալ է այն առասպելական գդակին որ անտեսանելի ընելու զօրութիւնն ունէր։

Խորհելու յոգնութենէն զերծ մնալու համար, որն որ շատ տաժանելի բան է մարդոց մեծ մասին համար, մարդիկ ճիշդ այն արժէքը պիտի տան ձեզի զոր դուք ձեր անձին կուտաք։ «Այս աշխարհիս մէջ, կ'ըսէ Լա Պռիւյէռ, մարդ ինչ որ արժել ուզէ՝ զայն կ'արժէ։»

Թշնամի մի՛ վաստկիք. վաստակներու ամէնէն դէշն է այն։ «Ցիմարին իւր յիմարութեան համեմատ մի՛ պատասխաներ, որպէս զի չըլլայ թէ դու ալ անոր պէս եղած ըլլաս(1)։» Յեչեցէք թէ «հեզ պատասխան մը բարկութիւնը կ'իջեցնէ,» այլ սակայն նոյն իսկ բարկալից պատասխան մը լաւագոյն է քան թէ հեգնութիւն մը։ Տասը մարդու մէջ ինը լաւագոյն կը համարին որ իրենց դէմ չար խօսուի, և նոյն իսկ չարիք գործուի քան թէ ծաղր ըլլան։ Ասկէ զատ ամէն բան դիւրաւ կրնան մոռնալ։

---

(1) Գիրք Առակաց։

Digitized by Google

«Խաբուիլն աւելի հաճելի է քան թէ խաբուած ըլլալը գիտնալը։» Տրասիղոս, Աթենացի մը, խելքը կորսընցուց, իր յիմարութեան մէջ կը կարծէր թէ Պիրէոնի բոլոր նաւերն իրենն են։ Կրիտոնի ձեռքով բժշկուելէ յետոյ դառնապէս ողբաց թէ կողոպտուած էր։ «Յիմարութիւն է, կ'ըսէ Լորտ Չէսթրֆիլտ, կատակի մը պատճառաւ բարեկամ մը կորսնցնել. բայց ըստ իս, ոչ նուազ յիմարութիւն է նաև անտարբեր և չէզոք անձ մը թըշնամի դարձնել, երկսայրաբանութեան մը պատճառաւ։»

Միշտ պատրաստ մի՛ գտնուիք կարծելու թէ զձեզ կ'արհամարհեն, և կամ թէ կը ծաղրեն. կատակերգութեան Սգըրպին պէս որ կ'ըսէր. «Վստահ եմ որ իմ վրայ կը խօսէին, վասն զի բարձրաձայն կը ծիծաղէին։» Միւս կողմանէ, եթէ ստուգիւ ձեր վրայ ծիծաղին, բնաւ տհաճութիւն մի՛ յայտնէք։ Դուք ալ յօժարութեամբ ծիծաղեցէք ուրիշներու հետ, եթէ կրնաք։ Ամէն մարդ կը սիրէ այնպիսին որ կրնայ իւր վրայ եղած կատակներուն համար ծիծաղիլ, և իրաւամբ, վասն զի զուարթութեան և ողջմտութեան ապացոյց մ'է այն։ Ջանացէ՛ք ծաղրելի չըլլալ, բայց եթէ ձեր ծաղրաշարժ բաներուն վրայ առաջին անգամ դուք ծիծաղիք, ուրիշները քիչ պիտի ծիծաղին։

Միշտ համարձակապէս յայտնեցէք ձեր կարծիքն։ Արդարև երբեմն պիտի ծաղրեն զձեզ, բայց ատկէ բնաւ վնաս պիտի չհասնի։ Ինչ որ ենք՝ ճշմարտապէս այնպէս երեւնալու մէջ բնաւ ծաղրելի բան չկայ. ծաղրելին՝ ընդհակառակն ինչ որ չենք այնպէս ըլլալ կեղծելն է։ Կան մարդիկ որ շատ անգամ բոլորովին երեւակայական նախատինքի մը պատճառաւ կը տագնապին, կը գայրանան, և ուրիշներու հետ պաղութեամբ կը վարուին։ Այլ սակայն նախատինք մը չկրնար երբեք այնքան նուաստացնել զձեզ, որքան որ դուք կրնաք անձամբ զձեզ նուաստացնել։

Digitized by Google

Համարձակ եղէք և սակայն միշտ զգուշաւոր։ Շատ մի՛ խօսիք ձեր անձին վրայ. այսինքն ոչ ձեր անձին վրայ, ոչ ի նպաստ ձեր անձին, և ոչ ձեր անձին դէմ. բայց թողէք որ ուրիշներն որչափ որ ուզեն խօսին իրենց անձին վրայ։ Եթէ այդպէս կ՚ընեն, պատճառն այն է որ աղկէ հաճոյք կ՚զգան, և որքան աւելի յօժարութեամբ մտիկ ընէք իրենց, նոյնքան աւելի պիտի սիրեն զձեզ։ Ինչ կերպով որ ըլլայ, մի՛ ջանաք ապացուցանել այլոց թէ յիմար են և կամ ապուշ, ի բաց առեալ եթէ ձեր պարտաւորութիւնը կ՚ստիպէ զձեզ այդպէս ընել։ Այդ պարագային քիչ մ՚իրաւունք կ՚ունենան տրտնջելու։ Կրնայ ըլլալ նաև որ ձեր կարծիքը սխալ ըլլայ. այդ պարագային ալ, և իրաւամբ, այն կարծիքը պիտի ունենան ձեր վրայ զոր դուք իրենց վրայ ունեցաք։

Չկայ բան մը որ աւելի կսկծալի վէրք մը թողու քան թէ ծաղր ըլլալն։ Երբեք պիտի չկարենաք ձեր նպատակին հասնիլ ուրիշները ձեզի դէմ զայրացնելով, ոչ ալ զիրենք ծաղր ու ծանակ ընելով։

Կէօթէ Էքէրմանի հետ իւր խօսակցութեանց մէջ, Անգղիացւոց մէկ գովեստը կ՚ընէ. «Անոնց ընկերութեան մէջ ներկայանալու և վարուելու կերպն այնքան համարձակ և այնքան անխռով է որ կարծես թէ ամէն տեղ իրենք են տէր և թէ բոլոր աշխարհ իրենց կը վերաբերի։» Էքէրման կը պատասխանէ. «Այլ սակայն չեմ կարծեր որ Անգղիացի երիտասարդք Գերմանացի երիտասարդներէն աւելի խելացի, աւելի ևս օժտեալ և աւելի ևս ուսեալ ըլլան։» — Խնդիրն ադոր վրայ չէ,» կը յարէ Կէօթէ, «և ոչ ալ սերունդի կամ հարստութեան արդիւնք է այդ։ Խնդիրն անոր վրայ է թէ, բնութիւնն ինչպէս որ ըրած է զիրենք՝ այնպէս ըլլալու համարձակութիւնն ունին։ Իրենց վրայ կիսկատար բան չկայ. կատարեալ ակներ են անոնք։ Երբեմն նաև կատարեալ խենդեր

Digitized by Google

են, աղօր ալ սիրով կը հաւանին, բայց այդ ալ գոնէ բան մ՚է, և իւր կարեւորութիւնն ունի ։»

Համբերող եղէք ձեր բոլոր գործոց և ձեռնարկութեանց մէջ ։ Շատ մարդ լաւագոյն կը համարի որ ձեզի բամծն ուշադրութեամբ մտիկ ընէք, քան թէ ձեզմէ խնդրածն ստանայ ։

Մանաւանդ թէ երբեք մի՛ բարկանաք, և կամ վերջապէս ջանացէ՛ք զձեզ զսպել և լռել ։

Բարկութիւնդ զսպէ՛ և ցասկոտութիւնը մէկ կողմ Թող.
Մի՛ զայրանար, մանաւանդ չարիք գործելու համար (1).

Վասն զի, «Հեզ պատասխան մը ցասումը կ՚իջեցնէ, բայց կծու խօսքը բարկութիւնը կը գրգռէ (2) ։»

Մարդիկ կան որ կարծեն թէ միշտ չըսուելու բանն ըսելու տուրք մ՚ունին ։ Շարունակ այնպիսի բաներու ակնարկութիւն կ՚ընեն որք կամ ցաւալի յիշատակներ կ՚արթընցնեն, և կամ կարծիքի աննամաձայնութիւններ կը գոյացնեն ։

Չկայ գիտութեան ճիւղ մը որ մարդ ճանչնալէ աւելի կարեւոր ըլլայ ։ Շատ կարեւորութիւն ունի խոհեմութեամբ որոշելու կարող ըլլալը թէ պէ՞տք է արդեօք այսինչ մարդուն վրայ վստահանալ թէ չվստահանալ, և թէ մինչև ո՞ր աստիճան և ի՞նչ տեսակէտով կրնանք իւր վրայ վստահութիւն ունենալ ։ Եւ այս ալ դիւրին բան չէ ։ Պէտք է մանաւանդ գիտնանք այնպիսի կերպով ընտրել մեր աշխատակիցներն որ թէ՛ իրենք և թէ՛ իրենց գործն իրարու յարմարին ։

«Եթէ մէկու մը վրայ վստահութիւն չունիք, մի՛ գործածէք զինքն. իսկ եթէ կը գործածէք, վստահութիւն ունեցէք իւր վրայ (3) ։»

---

(1) Գիրք Սաղմոսաց ։ (2) Գիրք Առակաց ։ (3) Կոնփուկիոս ։

Digitized by Google

Աւելի յաճախ իրաւունք ունինք ուրիշի վրայ վըստահանալու քան թէ չվստահանալու։

Վստահութիւնը կատարեալ ըլլալու է, բայց ոչ թէ կոյր զկուրայն։

Միշտ խորհրդապահ եղէք։ Լաւ գիտցէք։ Եթէ դուք ինքնին շատախօս էք, պէտք չէ որ ուրիշներու շատախօսութեան վրայ զարմանաք։ «Իմաստնոյն բերանն իւր սրտին մէջն է և յիմարին սիրտն իւր բերնին մէջ. վասն զի ինչ որ գիտէ և ինչ որ կը խորհի բարձրաձայն կը յայտնէ (1)։»

Ձեր միտքը գործածեցէք. միշտ ձեր դատողութեան հետ խորհրդակցեցէք։ Թէև անսխալական չէ նա, բայց կրնայ զձեզ շատ սխալներէ զգուշացնել։

Խօսքն արծաթէ է, կ'ըսեն, իսկ լռութիւնն՝ ոսկիէ։

Շատեր յաւէտ շաղփաղփութեան սիրով կը խօսին քան թէ ըսուելու արժանի բան մ'ունենալով։ Պէտք է որ խօսքն յաւէտ մտքի գործողութիւն մ'ըլլայ քան թէ լեզուի. շաղփաղփութիւնը, պարզապէս խօսելու սէրն իսկ, վնասակար է յաջողութեան համար։ «Մարդիկ երբեմն իրենց խօսակցութեան տաքութենէն յափշտակուելով՝ իրենց մտադրածէն շատ աւելին կ'ըսեն. և յետոյ կը զղջան։ Եւ այս չափազանց շատ խօսելու սովորութիւնն, այս խօսքի անժուժկալութիւնն անհամար չարիքներու, վիշտերու պատճառ կ'ըլլայ (2)։»

«Մեծ դժբախտութիւն մ'է, կ'ըսէ Լա Պռիւյէռ, պէտք եղածին չափ խելք չունենալ լաւ խօսելու համար, և ոչ ալ պէտք եղածին չափ դատողութիւն՝ լռելու համար։»

Պլուտարքոս կը պատմէ որ, երբ ժողովի մը մէջ Տէմարատի հարցուցին թէ արդեօք յիմարութեա՞ն՝ թէ

(1) Գիրք Առակաց։ (2) Պըղըր։

Digitized by Google

խօսք չունենալուն պատճառաւ չխօսիր. «Ցիմարը լաւ չգիտեր,» պատասխանեց։ «Կը տեսնե՞ս, կ՚ըսէ Սողոմոն, իր խօսքերուն մէջ անխորհուրդ մարդ մը, աւելի յոյս կայ յիմարէ մը քան թէ իրմէ։»

Երբեք մի՛ ջանաք ձեր գերազանցութիւնն ապացուցանել։ Քիչ բան կայ որ աւելի եւս զայրացնէ զմարդիկ քան զիրենք ուրիշներէ ստորին զգալը։

Բան մը երբեք չատ վճռական կերպով մի՛ հաստատէք։ Կրնայ ըլլալ որ սխալիք, հակառակ ձեր վստահութեան. յիշողութիւնը շատ տարօրինակ խաղեր կը խաղայ մեզ, և մեր աչքերն ու ականջները շատ անգամ խաբուած են։

Մեր ամէնէն սիրելի կանխակալ կարծիքներն իսկ շատ անգամ ո՛ և է հաստատուն հիմ չունին։

Ասկէ զատ, նոյն իսկ եթէ իրաւունք ունենաք, բան մը պիտի չկորսնցնէք զայն շատ վստահաբար չյայտնելով։

Նոյնպէս նաև գործի մէջ, երբեք չափէն աւելի մի՛ վստահանաք ձեր գործերուն վրայ. և ո՛ և է առաւելութիւն մը երբեք անտես մ՚ընէք։ Ցիշեցէ՛ք այն առածն որ կ՚ըսէ. «Գաւաթին և շրթունքներուն միջև անջրպետ մը կայ։»

Սպասել գիտցողին ամէն բան յարմար ժամանակին կու գայ։ Եւ երբ որ առիթը ներկայանայ, ամուր բռնեցէք զայն։ «Ով որ բան մը կրցած ժամանակը չուզեր, ուզած ժամանակն ա՛լ պիտի չկարենայ (1)։»

Երբ առիթ մը փախցնէք պիտի չկարենաք զայն վերստին ձեռք բերել։

Մարդուն գործերուն մէջ ծովախաղացք մը կայ։
Օգտուեցէք անկէ, և անոր մակընթացութիւնն

(1) Առած անգղիական։

Զձեզ բախտին պիտի հասցնէ.
Փախցուցէք զայն, և կեանքի ճանապարհը
Ծանծաղուտ տեղերէ և դժբախտութիւններու մէջէն պիտի անցնի։
Այսպիսի ծովախաղացքի մը վրայ կը նաւարկենք մենք այժմ.
Պէտք է որ հոսանքին հետևինք մինչդեռ նպաստաւոր է.
Եւ կամ զամէն բան կորսնցնելու վտանգին ենթարկուինք։ (1)

Խոհեմութիւն ունեցէք· բայց առանց չափազանցելու։ Սխալելէ շատ մի՛ վախնաք. «Ով որ երբեք չուզեր սխալիլ, երբեք պիտի չկարենայ բան մը փորձել։»

Միշտ վայելուչ կերպով հագուեցէք. քանի որ պարտաւոր ենք հագուիլ, պատշաճ է որ մաքուր հագուինք, բայց առանց չափազանցութեան։ Ոչ չափէն աւելի ժամանակ վատնեցէք և ոչ դրամ. միայն թէ ձեր զգեստները դիմացկուն ըլլան։ Զարմանալի է որ շատ մարդիկ հագուստի և զարդարանաց համեմատ կը դատեն, և յոյժ շատ անգամ արտաքին երևոյթներէ զատ դատողութեան նշան չունին։ Ասկէ զատ, եթէ ձեր անձին համար փոյթ և խնամք չունիք, շատ իրաւունք կ՚ունենան կարծելու, թէպէտև այդ կարծիքը կրնայ շատ անգամ ալ սխալ ելնել, թէ առհասարակ ամէն բանի համար նոյնպէս անփոյթ պիտի ըլլաք։

Երբ որ ընկերութեան մէջ գտնուիք, ուսումնասիրեցէք այն անձինքն որոնց կերպերն հաճելի կը թուին ձեզ։ Վասն զի «ազնիւ կերպերը բաց յանձնարարագիրներ են։» «Կերպերը բան մըն են ամէնուն համար, և ամէն բան՝ ոմանց համար։» «Արժանիք և գիտութիւն չեն կրնար սրտերը շահիլ, թէև կրնան շահուած սրտերն հաստատել։ Ձեր կեցուածքով, ձեր շարժուձևերով ուրիշներու նայուածքը ձեր վրայ հրաւիրեցէք. սիրտն ալ ի կարգին պիտի չուշանայ գգածուելու (2)։» Ամէն մարդ

(1) Շէյգսբիր։ (2) Լորտ Չէսթրֆիլտ։

Digitized by Google

կրնայ տեսնել և լսել, բայց դատողութեան տէր եղողները քիչ են։ Աշխարհ թատրոն մ՚է միայն. ամէնքս ալ հոն դեր մ՚ունինք, և ամէն մարդ գիտէ թէ թատերախաղի մը յաջողութիւնը դերասաններուն կարողութենէն կախում ունի։

Շնորհքներն ալ Մուսաներուն չափ օգտակար են կեանքի մէջ։ Ովրատիոս կ՚ըսէ թէ նոյն իսկ Մանկութիւն և Հերմես, Պերճախօսութեան և Արուեստից չաստուածն, առանց Շնորհքներու օգնութեան անկարող էին։



## ԳԼՈՒԽ Գ.

## ԴՐԱՄ

«Որդեակ, չահածէդ աւելի ծախսածդ է որ հարուստ կամ աղքատ ըլլալուդ պատճառ պիտի ըլլայ,» կ՚ըսէր խոհական ծերունի Քուէքր մը։ Բան մը գնելէ առաջ լաւ է անգամ մ՚ինքն իրեն հարցնել թէ արդեօք կարելի չէ՞ առանց անոր ըլլալ։

Առանց հարուստ ըլլալ ուզելու, խոհեմութիւն է և վայելուչ է խնայողութիւն ընել և պաշար ունենալ անստոյգ ապագային համար։ Շատ տխուր առած մը կայ որ կ՚ըսէ. «Երբ որ աղքատութիւնը դռնէն ներս մտնէ, սէրը պատուհանէն դուրս կը թռի։» Բայց ցաւալի է իր կինն և զաւակները սնունդէ, հագուստէ և կամ բժշկէ մը դարմանէն զուրկ տեսնել, անոնց հանգիստ մը կամ կարևոր օդափոխութիւն մը վայելել տալու անկարող ըլլալ, և պատճառ ունենալ խորհելու թէ անոնք այդ տա-

Digitized by Google

ռապանքէն զերծ պիտի ըլլային, եթէ ըստ բաւականի աշխատասէր եղած՝ և կամ կարգ մը, թերևս անմեղ, բայց աւելորդ հաճոյքներու զոհողութիւն ըրած ըլլային։ Դրամ դիզելու նպատակաւ խնայողութիւն ընելն ստորին բան է. բայց իւր բարեկեցութիւնն ապահովելու նպատակաւ խնայողութիւն ընելն ուղիղ և այրական գործ է։

Ծախուց տումար մ'ունեցէք և խնամով բռնեցէք զայն։ Ձեզ ըսեր թէ հարկ է ամենաչնչին գումարներն իսկ նշանակել, բայց միշտ գիտցէք թէ ի՛նչ բանի ծախսած էք ձեր դրամն և թէ ամէն բան ի՛նչ գին ունեցած է։ Այն մարդն որ միշտ գրպանին մէջ ինչ ունենալն և գնած բանին գինը գիտէ, երբեք յիմարական ծախքեր չըներ։ Որոնք որ իրենց նիւթական միջոցները շռայլութեամբ կը վատնեն, միշտ գոց աչքով կ'ընեն զայն։ Ոչ ոք կրնայ իւր կործանումն անտարբեր աչքով դիտելու չափ յիմար ըլլալ։

Մի՛ վատնէք, մանաւանդ, ձեր ապրուստի միջոցներն։ Ամէն տարի գէթ փոքրիկ գումար մը մէկ կողմ դրէք։ Եւ մանաւանդ թէ պարտք մ'ընէք։ «Եթէ մարդ մը, կ'ըսէ Չ. Տիքընս (ու թէև կատակերգութեան մը մէջ Պ. Միգաուպէրի բերնով եղած՝ բայց շատ ճիշդ դիտողութիւն մ'է այս) տարեկան հինգ հարիւր Ֆր. եկամուտ ունի և կը ծախսէ չորս հարիւր իննսուն և ինը Ֆր. արդիւնքը կ'ըլլայ երջանկութիւն։ Իսկ եթէ տարեկան հինգ հարիւր Ֆր. եկամուտ ունենալով՝ կը ծախսէ հինգ հարիւր մէկ Ֆր. արդիւնքը կ'ըլլայ թշուառութիւն։» Եւ սակայն տարբերութիւնը միմիայն երկու Ֆր. է։

Չափազանցութիւն չըլլար ըսելը թէ պարտքերը ճշմարիտ գերութիւն մը կը պատճառեն։ «Ով որ չարունակ փոխառութիւն կ'ընէ, չարունակ կը տառապի։» Հորաս Կրիլէյ, որ մեծ փորձառութեան տէր անձ մ'էր, իրաւամբ կ'ըսէր թէ «Անօթութիւնը, ծարաւը, ցուրտը,

Digitized by Google

ցնցոտիներն, ապառիչ աշխատութիւնն, անարգանքը, կասկածն, անարժան պարսաւանքը տաժանելի են. բայց պարտքեր ունենալն ասոնց ամէնէն աւելի գէշ է: Երբեք պարտք մ'ընէք: Եթէ միմիայն յիսուն սու ունիք, գրուան մը եգիպտացորեն գնեցէք, խորովեցէք և կերէք: Բայց որու որ ըլլայ տոլար մը պարտաւոր մ'ըլլաք:»

«Մարդիկ, կ'ըսէ Գօպտըն, երկու դասակարգի կը բաժնուին. մէկ դասակարգը կը կազմեն անոնք որ խնայողութիւն ըրած են, իսկ միւսն՝ անոնք որ իրենց չահած դրամը վատնած են: Այսինքն խնայողներու և չռայլներու: Բոլոր տուները, ջաղացքները, կամուրջները, նաւերը, վերջապէս բոլոր այն մեծամեծ գործերն որք քաղաքակրթութիւնն և մարդկային ազգին երջանկութիւնը կազմակերպեցին, խնայողութիւն ընողներուն ձեռակերտներն են. իսկ իրենց նիւթականը վատնողներն անոնց գերիներն եղած են: Բնութիւնն և Նախախնամութիւնն ուզած են որ միշտ այսպէս ըլլայ: Խաբեբայ մ'եղած կ'ըլլայի եթէ մարդոց ո՛ և է դասակարգի մը՝ աննախատեսութեամբ, անփութութեամբ և ծուլութեամբ յաջողութիւն խոստանայի:»

«Արտեմիսի տաճարն յԵփեսոս, կ'ըսէր Պլուտարքոս, ապաստանարան մը և սրբավայր մ'է պարտատէրներէ հալածեալ պարտապաններուն համար. բայց խնայողութեան ապաստանարանն և սրբավայրն ամէնուրեք բա՛ց է ողջախոհ հոգիներու համար. հոն կը գտնեն պատիւ և ուրախութիւն և շատ բարիք վայելելու ազատութիւն:» Հետեւաբար, առեւտրական գործերէ դուրս, ո՛չ փոխառութիւն ըրէք և ո՛չ փոխատուութիւն: Վասն զի երբեք ո՛չ դրամնիդ պիտի հատուցանեն ձեզ և ո՛չ ալ ձեզի պարտաւոր եղած երախտագիտութիւննին պիտի յայտնեն. ձեր պարտապանը ձեզի դէմ միշտ ատելութիւն պիտի ունենայ: Ուստի, ձեր կարողութեան համեմատ,

Digitized by Google

վեհանձնութեամբ տուէք, բայց մի՛ յուսաք թէ ձեր դրամը ձեզի կը վերադարձնեն։

Եթէ դրամը դանդաղի ձեզի գալու, ընաւ մի վհատիք. ամէնէն երկայն գիշերուան ալ ցերեկը կը յաջորդէ։ Բայց եթէ դիպուածով բախտը ձեզի ժպտի, շռայլ մ'ըլլաք. խորհեցէք թէ բախտին յաջողութիւնը մշտատև չէ։ Մէկէ աւելի մարդ ի սկզբան մեծ յաջողութենէ մը գլուխը դառնալով՝ ապա ինքզինք կործանած է։

Հարստանալու համար շատ մի՛ շտապէք։ Եւ դրամի մտատանջութեամբ մի՛ հիւծիք երբեք։ Թէև քիչ մարդոց տրուած է մեծ հարստութեանց տէր ըլլալ, սակայն քիչ մը ջանքով և խնայողութեամբ, ամէն մարդ կրնայ իւր ապրուստն հոգալ։ Անպատիւ միջոցներով ստացուած հարստութիւններ լսուած են յաճախ. բայց ճշմարիտն ըսելով, աղքատութիւնն ալ երբեմն անպատուութեան արդիւնք է։ Ճշմարիտ աղքատները բան մը չունեցողները չեն, այլ անոնք են որ չափազանց շատ պէտքեր ունին։

Սըր Ճէյմս Բակէդ, իւր շահեկան բանախօսութեանց մէկուն մէջ, կարգ մը վիճակագրական տեղեկութիւններ կուտայ իւր աշակերտաց վրայ։ Հազար աշակերտի մէջ, երկու հարիւրը կամ բժշկական արուեստը լքած, կամ հարստութիւն ժառանգած, և կամ շատ կանուխ մեռած են։ Մնացորդ ութ հարիւրէն վեց հարիւրը պատուաբեր՝ ոմանք մանաւանդ մեծամեծ յաջողութիւններ գտած են։ Ամէնուն մէջէն միայն յիսուն և վեցը բոլորովին անյաջող ելած են. այսինքն տասն և հինգը բնաւ չեն կրցած իրենց քննութիւններն անցնել, տասն՝ իրենց անժուժկալութեան կամ խառնակեցութեան պատճառաւ կորսուած են. և իւր բոլոր աշակերտաց մէջ, քսան և հինգը միայն իրենց կամքէն անկախ պատճառներով անյաջող ելած են։ Վստահ եղէք, ինչ արուեստի մէջ որ ըլլայ, եթէ կամիք գործել, պիտի կարենաք զձեզ բանի մը գործածել։

Digitized by Google

Իրօք, ոչ ոք պարտի ապրելու համար չափէն կարեւոր եղող բաներու մասին մտատանջութիւն ունենալ։ Բնութիւնն յոյժ քիչ բան կը պահանջէ և փոխարէն շատ բան կուտայ մեզ։ Ձեղխութիւնն յոյժ բազմածախ է, և աւելորդ բանը միշտ սուղ է։ Ֆրանգլին իրաւամբ կ'ըսէ թէ «Միայն մէկ մոլութեան վատնածը բաւական պիտի ըլլար երկու տղայ մեծցնելու։»

Ցիշեցէ՛ք թէ, ինչպէս որ Ուէլլինկթընի դուքսն իմաստութեամբ կ'ըսէր, մեծամեծ շահերը գէշ ապահովութիւն կը նշանակեն։

«Մէկ կողովի՛ մէջ շատ հաւկիթ մի՛ դնէք.» այսինքն, ձեր բոլոր ունեցածը միևնոյն գործի մի՛ յատկացնէք։ Որքան լաւ տեղեակ որ ըլլաք, և նոյն իսկ եթէ կարծէք թէ ձեր ըրած գործին վրայ հիմնապէս ծանօթութիւն ունիք, կրնայ պատահիլ որ ձեր բոլոր հաշիւները սխալ ելնեն։ Ամէնէն խոհական վաճառականներն և սեղանաւորներն իսկ շատ անգամ կը սխալին։ Խելացի գործի մարդ մը ո՛չ թէ ամէն՝ այլ միայն շատ պարագայից մէջ կրնայ յուսալ թէ իրաւունք ունենայ։ Մեր մանկութեան ատեն կը սորվինք թէ երկու անգամ երկու չորս կ'ընէ. բայց քանի երկու ալ կ'ընէ։

Համբերութեան և յարատեւութեան վարժուեցէք։

Պէկիհօդ կ'ըսէր թէ շատ մարդիկ, աշխատութեան խուցի մը մէջ հանդարտ նստելու անկարող ըլլալնուն հետեւանքով՝ գործի մէջ կը կործանին։

Ամէն մարդ կերպով մը գործի մարդ մ'է, կամայ ակամայ։ Ամէնքս ալ մեր պարտաւորութիւններն ունինք. կառավարելու տուն մը, կարգադրելու հաշիւներ. և փոքրիկ գործերն երբեմն մեծերէն աւելի կնճռոտ կ'ըլլան։

Գործի մէջ յաջողութիւնը բարեբախտաբար կախում ունի յաւէտ ուղիղ դատողութենէ, ջանասիրութենէ և կանոնաւորութենէ քան թէ հանճարէ։ «Դուք ձեր խա-

Digitized by Google

նութեն հոգացէք,» կ'ըսէ հին առած մը, «և ձեր խանութն զձեզ պիտի հոգայ։» Գսէնոփոն կը պատմէ թէ «Պարսից թագաւորն ուզելով գեղեցիկ ձի մը կարելի եղածին չափ շուտ գիրցնել, այսպիսի բաներու վրայ իբր քաջ տեղեակ ճանչցուած մէկու մը հարցուց թէ ի՞նչ բան պէտք էր աղոր յաջողելու համար. «Իւր տիրոջ աչքը,» պատասխանեց նա։

Գործի մէջ շատ կարեւոր է գործնական լաւ սովորութիւններ ստանալ։ Ամէնէն գերազանց բարեկամներէս մին քիչ ժամանակ առաջ, կը հաւաստէր ինձ թէ միտքը բերելով այն ամէն պարագաներն ուր բարձր արժանիքի և գերագոյն նկարագրի տէր մարդոց անյաջող ելնելը տեսած էր, այդ անյաջողութիւնը միմիայն սա իրողութեան կրցած էր վերագրել, թէ անոնք առհասարակ գործելու մէջ դանդաղ, անկանոն, ուրիշներու հետ սրտանց աշխատելու անկարող, յամառ և վերջապէս, գործնական զգացումէ զուրկ մարդիկ էին։

Մեծ և փոքր, ամէն գործի մէջ, կարգն ու կանոնը շատ կարեւոր են։ Ամէն մէկ բանի իրեն յատուկ տեղ մը, ահա ճիշդ սկզբունքը։ Ջամէն բան խնամով կարգաւորեցէք։ Այս եղանակը շատ ժամանակ կորսնցնելէ պիտի ազատէ զձեզ։

«Անկարգաւորութեան վրայ, կ'ըսէ Գսէնոփոն, ինձ կը թուի թէ ճիշդ գաղափար մը կը կազմեմ, երբ աչքիս առջև բերեմ երկրագործ մը որ իւր շտեմարանին մէջ խառն ի խուռն կը լեցնէ գարին, ցորենն, ոլոռն ելն., և ապա, եթէ ուզէ կարկանդակ մը կամ հաց մը շինել, և կամ թան մը պատրաստել, կ'ստիպուի այնպիսի բաժանում մ'ընել զոր արդէն իսկ եղած գտնելու էր պէտք եղած ատեն։»

Իմաստասէրք, թէև ոչ ամէնքն, Արիստոտէլէն մինչեւ Գարլայլ, առեւտրով կամ դրամական գործերով


Digitized by Google

զբաղող մարդիկն անարգած են, առեւտուրն և դրամական գործառնութիւնքն իբր ստորին և նոյն իսկ նուաստացուցիչ զբաղումներ նկատելով ։ Պղատոն կը մերժէր վաճառականաց՝ ո՛ և է քաղաքացիական իրաւունք վայելել իւր Հանրապետութեան մէջ ։ Այդպիսի նուաստացուցիչ զբաղում մ'օտարականաց թողուած էր, եթէ սակայն անոնք ալ յանձնառու ըլլային ։ Ըստ որում անպատճառ հարկ է որ առեւտուրը չատերու զբաղմունքն ըլլայ ; չատ ցաւալի կ'ըլլար եթէ նա ըստ ինքեան աղետալի ազդեցութիւն մ'ունենար նկարագրի վրայ . և եթէ անհաչտ ըլլար մտաւորական զարգացման հետ ։ Բայց բարեբախտաբար այդպէս չէ ։

Ստոյգ է որ առեւտրական գործերով զբաղած մարդիկ քիչ ժամանակ ունին ուրիչ բաներու հետամուտ ըլլալու, սակայն օրինակներս միմիայն Գիտութեանց և Գրականութեանց քաղելով, կը բաւականանամ յիչելով զՆազմիդ՝ աստեղագէտ և արհեստագործ. զԿրօդ՝սեղանաւոր եւ պատմագիր. զՍըր Ց. Էվանս՝ թղթի գործարանատէր, Հնագիտաց Ընկերութեան նախագահ, ևն. զԲրէսթուիչ՝ նախ վաճառական ապա ուսուցիչ Երկրաբանութեան յՕգսֆորտ. զՌօճըրս՝ սեղանաւոր և բանաստեղծ. զԲրէիտ՝ նոյնպէս սեղանաւոր և բանաստեղծ. ներուի ինձ այս ցանկիս մէջ անցնել նաեւ հօրս անունը՝սեղանաւոր և չափագէտ, ևն. ։

Գարլայլ խստիւ կը բողոքէ այն սկզբունքին դէմ որ ապրանաց մէկ կողմանէ կարելի եղածին չափ աժան գնուիլն՝ իսկ միւս կողմանէ կարելի եղածին չափ սուղ ծախուիլը կը պահանջէ ։ Նա կը պնդէ թէ հարկ է որ թէ՛ գնման և թէ՛ վաճառման նուազագոյն գին մ'որոչուի, զոր օրինակ բամբակի համար, և անտարակոյս նաև միւս վաճառաց համար ։

Ըստ իրեն, սա լեզուն պարտէինք գործածել .«Ձենք

Digitized by Google

ուզեր, շատ ծախելու նպատակաւ, ուրիշ ազգերէ աւելի բամբակ շինել. անոնցմէ նուազ գնով ծախելէ պիտի դադրինք. մի և նոյն գնով ծախելու համար անոնց հետ պիտի համաձայնինք։»

Անգործադրելի և անհիմն գաղափարներ։ Եթէ նուազ բամբակ ծախենք, նուազ մուտ պիտի դնենք։ Եւ սակայն Գարլայլ ինքն իսկ կը խոստովանի թէ ապրանքի մը գինն որքան որ նուազ ըլլայ, այնքան աւելի կը ծախուի. այնպէս որ եթէ իւր դրութիւնն ընդունուելու ըլլար, մարդիկ պիտի գտնուէին որ հագուստի պէտք ունենալով հանդերձ, զայն որոշեալ գնովը գնելու համար պէտք եղած դրամը պիտի չունենային։ Դիւրաւ կրնայինք նուազ գնով մը բաւականանալ, և սակայն նա կ'արգիլէ մեզ զայն, որն որ, չափով մը, ոմանց հագուստէ՝ իսկ ոմանց սնունդէ զրկուելուն պատճառ պիտի ըլլար։ Առևտուրի հիմն իսկ աժան շինել կրցած բանը շինել չկրցած բանին հետ լաւ պայմաններով փոխանակելու մէջ կը կայանայ։ Կարելի եղածին չափ աժան դընելն և կարելի եղածին չափ սուղ ծախելն ոչ միայն առևտուրի անհրաժեշտ կանոնն է, այլ նաև շահաւորագոյնն ամէնուն համար։ Վասնզի միշտ անոնց ապրանքը կը գնեն՝ որոնք աւելի պէտք ունին իրենց ապրանքը ծախելու, իսկ անոնց կը ծախեն՝ որոնք աւելի պէտք ունին ուրիշին ապրանքը գնելու։ Գործելու ո՛ և է տարբեր ընթացք մը «ի Նիւգասլ հանքածուխ տանիլ» ըսուած առածը պիտի յիշեցնէր։

Ամէնէն նշանաւոր, ամէնէն երջանիկ և պատուական մարդերէն ոմանք աղքատութեան մէջ ապրած են։ Վորտըսվորթ տարիներով իւր քրոջ հետ ապրեցաւ շաբաթական մի միայն երեսունըհինգ ֆր. եկամուտով, և կարծեմ թէ այդ ժամանակամիջոցն իւր կեանքին ամէնէն երջանիկ ժամանակներէն մին եղած է։

Digitized by Google

*Եթէ հարուստ ըլլալու բարեբախտութիւնը չունիք, թող ընկերակցութիւնն և սէրն համեստ առանձնութեամբ մը, պարզ տնակով մը, սիրեցեալ դէմքով մը, բովանդակ աշխարհ մը կազմեն ձեզ։*

*Դրամի կարողութեան վրայ մարդոց ունեցած չափազանց հաւատքէն աւելի ընդհանրացած սխալ կարծիք չկայ։*

*Խնդիրն ապրուստի՞ վրայ է։*

*«Եթէ հարուստը կ'ուզէ քաջողջ ըլլալ, պէտք է որ աղքատի մը պէս ապրի (1)։» Լաւ պատրաստուած պարզ ընթրիք մը՝ ամէնէն փառաւոր խնճոյքէն վար չմնար։ Ամէնէն առողջարար և ամէնէն համեղ ուտելիքն համեմատաբար շատ աժան է իւր եղանակին մէջ. իսկ եղանակէն դուրս բնաւ համ չունի։ Թարմ հաւկիթ մը ճշմարիտ խնճոյք մ'է, և երբեմն լաւագոյն իսկ։*

*Խնդիրը գրքերո՞ւ վրայ է։*

*Մարդ յետին աստիճան աղքատ ըլլալու է որ չկարենայ կարդալ փափաքած բաները գնել։ Լաւագոյն գիրքերն իսկ այսօր զարմանալի կերպով աժան գին մ'ունին։*

*Միթէ դրամը կրնա՞յ գնել մեզ առողջութիւն, հանճար, բարեկամներ, գեղեցկութիւն կամ ընտանեկան երջանկութիւն։*

*Կոնփուկիոս կ'ըսէ թէ «Ցէ դուքսն անհագին հարստութեան տէր էր, բայց ոչ ոք կը սիրէր զինքը։ Բէի-Թէ անօթութենէ մեռաւ, բայց մինչեւ այսօր դեռ ժողովուրդը զինքը կ'ողբայ։»*

*Շատ մեծ հարստութեանց տէր մարդիկ, կ'ըսէ Պազօն, իրենց անձին անծանօթ են, «իրենց կնճռոտ գործերուն մէջ, ժամանակ չեն ունենար իրենց թէ մարմնական և թէ հոգեկան առողջութեամբ զբաղելու։»*

---

(1) Սըր Ռ. Թէմբլ։

Digitized by Google

«Անտարակոյս դրամը մտատանջութեանց աղբիւր մ'է։ Աղքատութեան պէս՝ շատ հոգերու ճամբայ կը բանայ, և շատ անգամ հարուստներն իրենց հարստութեան գերիներն են յաւէտ քան թէ տէրերը։

Շատ հարուստներու բարոյական կործանման պատճառն իրենց ոսկին եղած է։ Հարուստն երբեմն աւելի շատ հոգեր ունի քան թէ աղքատը. խոհեմութիւն ունեցողները միայն գիտեն հարստութեան մէջ իրենց երջանկութիւնը գտնելու եղանակն։ Եւ ով որ շատ շտապէ հարստանալու համար, միշտ աղքատ պիտի մնայ։

Որպէս զի կարենաք հարստութիւնը վայելել, անոր վրայ սիրտ մի՛ փակցնէք։ «Չափաւորը՝ կ'ըսէ Սաատի, զձեզ պիտի կրէ, չափազանցը՝ դուք կրել պիտի պարտաւորիք։»

«Փափաքելու քիչ բան՝ բայց վախնալու շատ բան ունենալէ աւելի ողորմելի վիճակ չկրնար ըլլալ» կ'ըսէ Պաքօն։

Եթէ շատ հարուստ ըլլաս, աղքատ պիտի ըլլաս,
Վասն զի կրած ոսկիի բեռին տակ ընկճուած իշու մը պէս,
Պարզապէս պիտի փոխադրես քու ծանր հարստութիւնդ մինչև ի մահ՝
Որ պիտի գայ բոլոր բեռդ վար առնելու (1)։

Հարստութիւնն ագահութեան կ'առաջնորդէ։ Դըպրոցի մէջ սորված ենք «Crescit amor nummi, quantum ipsa pecunia crescit.» (2)

«Աղքատը շատ բանի կարօտ է, կ'ըսէ Սենեկա, բայց ագահն՝ ամէն բանի։»

Հեգնօրէն ըսուած է թէ բարեսիրտ Սամարացիները բազմաթիւ կ'ըլլային, եթէ հարկ չըլլար առակին ձէթն ու դենարները ծախսել։

---

(1) Շէյքսփիր։ (2) «Դրամի սէրը կ'աճի, մինչդեռ դրամը կ'աճի։»

Digitized by Google

«Հարստութեան սաստիկ և անընդհատ հետամտութիւնը, կ'ըսէ Պագօն, շատ ժամանակի կորուստ կը պատճառէ ամէն անոնց՝ որք զբաղելու աւելի ազնիւ բաներ ունին,» վասն զի հարստութեանց արժէքը միմիայն կեանքի վրայ իրենց աւելցուցած բանին մէջ կը կայանայ, և կեանքը բան մը չարժեր եթէ հարստութեանց հետամտութեամբ գրաւուած է։ Կ'ըսեն թէ աղքատութիւնն ուսանողին նշանածն է. և «թեւաւոր կառքի մը տէր եղողը կրնայ ջորիներէ և անոնց կողովներէն հրաժարիլ» (¹)։

Դրամի վրայ խօսելու համար մեր գործածած ոճերը շատ խորհրդաւոր են։ Ամէն վայրկեան կ'ըսուի թէ մարդ մը բախտ շինած է, թէ ոսկիի մէջ կը լողայ, ելն. բայց երբեք չըսուիր թէ իւր ոսկին «կը վայելէ», և ստուդիւ դրամ շահողներն իրենք շատ օգուտ չեն քաղեր անկէ։

Խոհեմութեամբ գործածուելով՝ դրամը կրնայ շատ բարիք գործել։ Ոսկին կարողութիւն մ'է։ Դրամը մեր փափաքած բաներն ստանալու միջոցները կը հայթայթէ մեզ։ Եթէ բաց օդը, լաւ տուն մը, գիրքերը, նուագածութիւնն ելն., բարիք են, դրամը կրնայ զանոնք մեզի գնել։ Եթէ հանգիստ ժամանակն առաւելութիւն մ'է, դրամը թոյլ կուտայ մեզ զայն գտնել, եթէ աշխարհ տեսնելն հաճոյական բան է, դրամը կրնայ ճամբորդելու միջոցները մեզ ընձեռել. եթէ մեր բարեկամաց օգնելու և ուրիշին նեղութիւնը թեթեւցնելու կարող ըլլալը մեծաշնորհ մ'է, դրամը կ'ընծայէ մեզ այդ մեծ ուրախութիւնը։

«Դրամ ունեցէք, կ'ըսէ Սվիֆթ, բայց մտքերնիդ տուէք անոր և ո՛չ թէ սրտերնիդ։»

Ագահն այնպիսի մարդ մ'է որ դրամը դրամ ըլլալուն համար միայն կը սիրէ, և խնայողութիւնը չափա-

(¹) Էմէրսըն։

Digitized by Google

զանցութեան կը մղէ. այնպէս որ վերջապէս ոսկի դիզելու պարզ մեքենայ մը կը դառնայ։ Այն դասերէն մին զորս պէտք է որ կեանքը մեզի սորվեցնէ, ամէն ստորին և գձուձ հոգերու դէմ անձերնիս պաշտպանելն է, և արծաթասիրութիւնն ալ ատոնց ստորնագոյններէն մին է։

Ամէնէն կարեւոր խնդիրն իւր հարստութիւնը խոհեմութեամբ գործածելն է։ «Մարդ կայ որ իւր ստացուածքը ցրուելով կ'աւելցնէ,» կ'ըսէ Սողոմոն, «և մարդ կայ որ չափազանց կը խնայէ, բայց կարօտութեան կը հասնի [1]։»

Տիվօնշայրի կոմս Էտուարտ Գուրդընէյի հանրածանօթ տապանագիրը կ'ըսէ.

Ինչ որ տուինք, զայն միշտ ունինք։
Ինչ որ ծախսեցինք, զայն ունեցանք.
Ինչ որ Թողուցինք, զայն կորսնցուցինք։

Կամ նոյն իմաստով իբր տարբեր ընթերցուածք մը.

Ինչ որ խնայեցի, զայն կորսնցուցի.
Ինչ որ ծախսեցի, զայն ունեցայ.
Ինչ որ տուի, զայն միշտ ունիմ։

Առատաձեռն եղէք, բայց առանց չափազանցութեան։ «Կան որ զիրենք հարուստ կը ցուցնեն, և բան մը չունին. և կան որ զիրենք աղքատ կը ցուցնեն, և շատ հարստութիւն ունին։ Աղքատին ողորմութիւն ընողն Յաւիտենականին փոխ կուտայ, և նա իրեն հատուցում պիտի ընէ [2]։»

Այն պատուէրն որ Քրիստոս տուաւ հարուստ երիտասարդին, կրնայ Թերեւս իբր մի միայն անոր պատկան-

---

[1, 2] Գիրք Առակաց։

Digitized by Google

եալ նկատուիլ, վասն զի որքան որ աղքատաց, նոյնքան ալ մեր զաւակաց վրայ պէտք է որ խորհինք։ Ձեր եկամուտները ձերն են, բայց այն դրամագլուխն որ ձեր նախնիքէն ժառանգած էք մի միայն ձեզի չեն վերաբերիր։ «Խորհուրդ տուր աշխարհի հարուստներուն երբեք չհպարտանալ, իրենց յոյսն երբեք մնոտի հարստութեանց վրայ չդնել, այլ կենդանի Աստուծոյ վրայ, որ զամէն բան առատապէս կուտայ մեզ վայելելու համար։

«Բարիք գործել, բարութեան գործերով հարուստ ըլլալ, առատաձեռն և ուրիշին պիտոյից հաղորդ ըլլալ, այս կերպով բարի հիմ գանձել իրենց անձին՝ հանդերձեալին համար, որպէս զի յաւիտենական կեանքը ձեռք ձգեն([1])։»

Ըստ Ս. Գրոց, ոչ թէ դրամն՝ այլ դրամի սէրն է ամէն չարեաց արմատ։ «Եթէ ձեր հարստութիւնն աւելնայ, սիրտ մի՛ փակցնէք անոր։» Լերան քարոզին մէջ միևնոյն խօսքը կը գտնուի։

«Հարստութիւն մի՛ դիզէք երկրի վրայ ուր որդերն և ցեցերը զամէն բան կ'ապականեն, և ուր գողերը կը պեղեն և կը գողնան։ Այլ գանձեր դիզեցէք երկինքն ուր ոչ որդերն և ոչ ցեցերը կ'ապականեն և ոչ ալ գողերը կը պեղեն և կը գողնան։ Վասն զի ձեր գանձն ուր որ է, ձեր սիրտն ալ հոն պիտի ըլլայ։»



([1]) Թուղթ Պօղոսի առ Տիմոթէոս Ա.։

Digitized by Google

# ԳԼՈՒԽ Դ.

## ԶԲՕՍԱՆՔ

«Միշտ աշխատելով, բնաւ չզբօսնելով, կ'ըսէ անգղիական առածը, տղայ մը յիմար կը դառնայ։» Եւ եթէ միշտ տան մէջ աշխատի, փափկակազմ կը մնայ, և այրութեան հասակին մէջ տկար կ'ըլլայ։ Խաղերը ժամանակի կորուստ չեն համարուիր։ Շատ մեծ կարեւորութիւն մ'ունին անոնք, ըստ որում մարմինը կը մարզեն և կը զարգացնեն, թեւերն և կուրծքը մանաւանդ, որք կը յոգնին և կը վնասուին առհասարակ մեր զբաղմանց շատերուն մէջ։

Խաղերն ոչ միայն առողջութիւնը կը պահպանեն, այլ նաև կը քաջալերեն զմեզ աշխատութեան համար։ Մարդոց կը սորվեցնեն իրարու հետ համաձայնիլ. չնչին բաներու համար երբեք չյամառիլ. իրենց առաւելութիւններէն երբեք չափէն աւելի օգուտ չքաղել, և ուղղամտութեամբ վարուիլ։

Անոնք բարոյական առողջութիւն կուտան. բնական առողջութեան հետ. համարձակութիւն և տոկունութիւն կուտան ձախորդութեան դէմ. նաև մեր անձին վրայ իշխելու կարող և զուարթ բնաւորութեան տէր կ'ընեն զմեզ. բարեմասնութիւններ զորս գիրքերը չեն սորվեցներ։ Ուէլլինկթընի դուքսն իրաւամբ կ'ըսէր թէ Ուաթէրլօի ճակատամարտն Իդօնի զբօսավայրին մէջ շահուած էր։ Մեր դպրոցներուն ամենէն լաւ և ամենէն օգտակար դասերն անոնք են զորս մեր տղաք զբօսնելով կը սորվին։ Բայց պէտք է որ խաղերն իբր զբօսանք ըլլան և ոչ թէ որ զբաղմունք։

Digitized by Google

Խաղերուն առողջութեան տեսակէտով ունեցած կարեւորութեան գալով՝ առողջաբանութեան մասին մեր երկու մեծ հեղինակութեանց կարծիքը մէջ պիտի բերեմ։ «Խաղերը, կ՚ըսէ Սըր Ճէյմս Բակէտ, բարոյական յոյժ բարերար ազդեցութիւն մը կը գործեն, որոյ արդիւնքը կը տեսնուի մինչեւ իսկ մեր օրական զբաղմանց եւ գործոց մէջ։ Վասն զի, առանց ո՛ եւ է շահախնդրական պատճառ խառնուելու, իրարու աշխատակից կ՚ընեն կատարեալ մարդիկն եւ պատանիները. կը սորվեցնեն անոնց իբր ընկերակից ընդունիլ զամէն անոնք որ կուզեն ուղղութեամբ եւ եռանդով ի միասին աշխատիլ. կը սորվեցնեն անոնց իրենց ջանքերն ուրիշին ջանքերուն միացնելու թանկագին կարողութիւնն որ այնքան զօրաւոր միջոց մ՚է կեանքի մէջ յաջողելու համար։ Եւ սովորութեամբ, եթէ ոչ բուն իսկ իրենց բնութեամբ, ուղղութեան կը վարժեցնեն, վասն զի ամէնքը կ՚ընդունին թէ որքան մեծ որ ըլլան շահերը խաղի մէջ, խարդախութիւնն ամօթալի է. եւ անոնք որ ուղղութեամբ խաղալու սովորութիւնն ունին, ուղղութիւն պիտի ունենան նաեւ իրենց առեւտրական գործոց մէջ։ Անոնք որ խաղի մէջ միշտ պատուաւոր հանդիսանալու չափ ազնիւ զգացումն ստացած են, աւելի դիւրաւ պիտի սովորին արհամարհել նաեւ այն ամէն փոքր խարդախութիւններն որք սակայն օրէնքի խստութեան ներքեւ չեն իյնար։»

Բրօֆ. Միքայէլ Ֆօսթըր, իւր մէկ բանախօսութեան մէջ ըսած է թէ «Նոյն իսկ մկանային աշխատութեան մէջ, յոգնութիւնը գլխաւորաբար ուղեղէն կուգայ, եւ ամէն մարդ կը ճանչնայ ուղեղի յոգնութիւն մը որուն պատճառը դնդերները չեն։ Ամէն բան կ՚ապացուցանէ մեզ թէ ուղեղային՝ ինչպէս նաեւ մկանային աշխատութիւններու կ՚ընկերակցին քիմիական փոփոխութիւններ.

Digitized by Google

թէ այս քիմիական փոփոխութիւնք, թէև ինչ ինչ մասամբ իրարմէ տարբեր՝ բայց ուղեղին և մկաններուն մէջ միևնոյն կարգէ են։

«Եթէ մաքուր արեան անընդհատ հոսանք մը կարեւոր է ղնդերին կենդանութեան, յոգնութեամբ գոյացած թունաւոր նիւթերէն զայն մաքրելով՝ անոր ոյժը նորոգելու համար, այս հոսանքն աւելի եւս կարեւոր է ուղեղին. և այդ թունաւորութեան վրայ հակազդելու լաւագոյն միջոցն է անշուշտ յաչէտ նուաստ մասերու վերանորոգիչ գործունէութիւնը գրգռել, քան թէ ուզել նոյն իսկ ուղեղին գործունէութեան կարողութիւնը զարգացնել։»

Որսորդութիւնն և ձկնորսութիւնը վերջապէս բոլորովին խլրացուցած են «Սբորդ» բառն, որ ժամանակաւ ամէն տեսակ «Խաղ» կը նշանակէր։ Նոյն իսկ անոնք որ իրենց զբօսանքն այս մարզանքներու մէջ չեն փնտռեր, դարձեալ անոնց դիւթիչ ազդեցութիւնը կ'զգան։ Մենք այս ճաշակը ժառանգած ենք մեր նախնիքներէն, որք ոչ միայն այս աշխարհի մէջ սբօրդի համար և սբօրդով կ'ապրէին, այլ նաև այնպէս կ'ենթադրէին թէ այն է որ հանդերձեալ աշխարհի երջանկութիւնը կը կազմէ։

Մաքուր ջրոյ օգտակարութեան վրայ շատ գրուած է, բայց մաքուր օդն ալ անկէ վար չմնար։ Ինչ հրաշալիք է օդը։ Նա մեր բովանդակ մարմնոյն մէջ կը թափանցէ, մեր մորթը կը լոքացնէ այնպիսի փափուկ նիւթով մը՝ որոյ ներկայութեան անգիտակից ենք, և սակայն այնքան զօրաւոր է նա, որ մեր նաւերը ծովերու վրայէն կը փոխադրէ, և ծովերու և լեռներու մաքրութիւնը մինչև մեր քաղաքաց մէջ կը բերէ։ Նա է որ մեր ականջը կը հասցնէ հնչիւնները, մեր սիրելեաց ձայները և բնութեան բոլոր ներդաշնակութիւնները. երկիրը ջրով անձրեւին ընդարձակ աւազանն է նա. օրուան ջերմու-

Digitized by Google

թիւնն և գիշերուան ցուրտը կը մեղմացնէ, իւր կապուտակագոյն սքանչելի կամարը մեր գլխոց վրայ կը բոլորէ, և առաւօտուն և երեկոյին երկինքը բոցով կը լեցնէ։ Այնքան ազնիւ և այնքան մաքուր, այնքան փափուկ և միանգամայն այնքան կարևոր է նա, որ անտարակոյս Արիէլ բնութեան Ոգիներուն ամէնէն նուրբն, ամէնէն սիրունն և ամէնէն հրապուրիչն է։

Շատ անգամ գէշ օդի խօսք կ'ըլլայ, բայց իրապէս բնաւ գէշ օդ չկայ։ Ամէնքն ալ հաճոյալից են, բայց զանազան կերպով։ Երբեմն գէշ օդեր կ'ըլլան մշակութեան և հնձոց համար. բայց մարդուն համար ամէն օդ լաւ է։ Արեգակն հեշտալի է, անձրևը զովարար. հովը կը կազդուրէ և ձիւնն զմեզ կը զուարթացնէ։ Ինչպէս որ Րըսքին կ'ըսէ, «Գէշ օդ չկայ, միայն թէ զանազան տեսակ գեղեցիկ օդեր կան։»

Հանգիստը ծուլութիւն չհամարուիր. և ամառը ծառերուն ներքև, խոտին վրայ տարածուած ջրոյ կարկաջը մտիկ ընելն, երկինքն սպիտակ ամպերուն անցնիլը դիտելն երբեք ժամանակի կորուստ չէ։

Բաց օդն որքան որ մտքին՝ նոյնքան ալ մարմնոյն համար կարևոր է։ Կարծես թէ բնութիւնը կ'ուզէ ո՛ և է մեծ գաղտնիք մը մեզ վստահանալ։ Եւ ստուգիւ կը վստահանայ։

Երկիրն և երկինք, դաշտերն և անտառները, գետերն և լիճերը, լեռներն և ծովը, լաւագոյն ուսուցիչներ են, և այնպիսի բաներ կը սորվեցնեն մեզ զորս գիրքերն երբեք պիտի չկարենան սորվեցնել։ Ասկէ աւելի, եթէ դիւղ երթաք, գետակի մը վրայ թիավարելու, անտառներու մէջ ծաղիկ քաղելու, քարահանքերու մէջ բրածոյք՝ և ծովեզերքը խեցի կամ ջրոյ մամուռ ժողվելու, եթէ դաշտային խաղեր խաղաք, և կամ ո՛ և է եղանակաւ օդն և մարզանքը վայելէք, պիտի տեսնէք թէ ոչ միայն ձեր առողջութիւնը պիտի բարւոքի, այլ

Digitized by Google

նաև ձեր հոգերը պիտի անհետանան, կամ գէթ պիտի թեթեւնան։ Բնութիւնը կը հանդչեցնէ, կը թարմացնէ և կը կազդուրէ զմեզ։ Նա միտքն աւելի եւս կը պայծառացնէ և կը զուարթացնէ։

Այլ սակայն, բոլորովին հաճոյքի և զբօսանքի նուիրեալ կեանք մը անտարակոյս ոչ միայն անձնասէր՝ այլ նաև շատ անհամ եղած կ'ըլլար։ Ուստի պէտք չէ երբեք որ խաղերը մեր կեանքին զբաղմունքն ընենք. միայն թէ՝ չափաւորութեամբ զանոնք վայելելը բնաւ ծուլութիւն չհամարուիր։

Բայց զբօսանքի տարերքն որո՞նք են արդեօք։ Ինչպէս որ ճշմարիտ՝ նոյնպէս ալ կեղծ հաճոյքներ կան։ Պղատոն Պրոտարքոսի բերնով Սոկրատի կը հարցնէ. «Սոկրատ, ճշմարիտ հաճոյքներն որո՞նք են։ Սոկրատ. — Անոնք են որ գեղեցիկ գոյներն և սիրուն դէմքերն իբր առարկայ ունին. շատերն անոնցմէ՝ որք բուրմունքէ և հնչիւններէ յառաջ կուգան. մէկ խօսքով, ամէն անոնք՝ որոց զրկանքն ո՛չ զգալի է և ո՛չ ցաւալի, և որոց վայելումն հաճելի զգացման մ'ընկերացած է՝ առանց ո՛ և է ցաւ անոր խառնուելու։»

Թէպէտև զգայարանք կրնան ճշմարիտ հաճոյք պատճառել մեզ, բայց անոնք ամէնէն ազնիւները չեն։ «Փիլէպոս, կ'ըսէ նա, կը պնդէր թէ բարիքն իւրաքանչիւր կենդանի արարածի համար ուրախութեան, հաճոյքի, զուարճութեան և ուրիշ բոլոր այս տեսակ բաներու մէջ կը կայանայ։ Ես կը պնդեմ ընդհակառակն թէ այդպէս չէ, և թէ իմաստութիւնը, խելքն, յիշողութիւնն և իրենց պարագայք, ուղիղ գաղափարն և ճշգրիտ դատողութիւնն հաճոյքէ աւելի լաւ և աւելի պատուական ն՝ զանոնք ունեցողներու համար, և ամէնէն աւելի ահեկան բաներ են՝ անոնց մասնակցելու կարող բոլոր երկայ և ապագայ արարածոց համար։»

Ճշմարիտ հաճոյքները գրեթէ անհամար են. մեր ծնողքն և մեր բարեկամները, խօսակցութիւնը, գրքերն, երաժշտութիւնը, բանաստեղծութիւնը, գեղարուեստ, մարզանքն, հանգիստը, բնութեան զանազան գեղեցկութիւններն. ամառն և ձմեռն, առաւօտն և իրիկունը, ցերեկն և գիշերը, արեւն և փոթորիկը, դաշտերն և անտառները, գետերը, լիճերը, ծովերը, կենդանիներն և բոյսերը, ծառերն և ծաղիկները, տերեւներն և պտուղներն ասոնց մէկ փոքր մասը միայն կը կազմեն։

Յանցանքը մերն է միայն եթէ կեանքը հաճոյք չպատճառեր մեզ։ «Ամէն մարդ կարող է վայելել, կ'ըսէ Ռըսքին, թէպէտև քիչեր կրնան ձեռք ձգել։»

Ժամ մը խօսակցութիւն՝ էութեան լաւագոյն հաճոյքներէն մին կը թուի ինձ։ Սքանչելի կազդուրիչ մը, և մարմնոյն և մտքին մէկ ճշմարիտ սնունդն է այն։

Երբ որ Ճօնսըն ուզէր հաճոյական երեկոյթ մը նկարագրել. «Լաւ խօսակցեցանք» կ'ըսէր։ Եւ շատ անգամ Տարուինի կամ Լայէլի, Քինգլիի, Ռըսքինի, Հըգսլիի կամ Դինտոլի հետ ժամ մը խօսակցութիւն բաց օդի լոքանքի մը չափ օգտակար եղած է ինձ։

Քիչ ձիրք կայ որ խօսակցութեան արուեստէն աւելի անհաւասար կերպով բաժնուած ըլլայ մարդոց մէջ։ Շատ նշանաւոր՝ երբեմն իսկ յոյժ շահեկան մարդիկ ճանչցած եմ, որոց խօսքը դժուարաւ կարելի է հասկնալ։ Մտացի խօսող մը շատ անգամ սիրալիր ընդունելութիւն մը կը գտնէ։ Ամէն արուեստի պէս, խօսակցութեան արուեստն ալ մշակուելու կարօտ է։ Ոչ ոք կրնայ առանց գործնականի ասոր մէջ գերազանց ըլլալ։

«Լաւ խօսելու առաջին տարրը, կ'ըսէ Սըր Ո. Թէմբլ ճշմարտութիւնն է. երկրորդն ողջմտութիւնն, երրորդը զուարթութիւնն, և չորրորդն հանճարն։» Այս տարրերէն գէթ առաջին երեքն ամէնուն կարողութեան սահմանին մէջն են։

Digitized by Google

Շատ մարդիկ իրենց գիտցածին կէսը խօսակցութեան շնորհիւ սորված են ։ «Ով որ շատ բան կը հարցնէ, կ'ըսէ Պագօն, շատ բան կը սորվի, և առհասարակ հաճելի կ'ըլլայ. նամանաւանդ եթէ հարցմունքն իւր հարցուփորձած անձանց հմտութեան յարմարցնէ. վասն զի այն ատեն խօսելու մէջ հաճոյք գտնելու առիթը կ'ընծայէ անոնց, և իւր միտքը շարունակ կը հարստանայ ։»

Ո՛չ մեր զաւակաց և ո՛չ իսկ մեր վրայ ըստ բաւականի չենք մշակեր գեղագիտական զգացումն ։ Եւ սակայն կա՞յ արդեօք ո՛ և է հաճոյք մը որ անկէ աւելի մաքուր, աւելի դիւրագնի, աւելի դիւրամատոյց, և աւելի ընդհանրաբար ներկայ ըլլայ ։ Այս ինչ անձն ամէնէն սաստիկ ուրախութիւնը կ'զգայ գեղջկական տեսարան մը, ծառեր, պտուղներ, ծաղիկներ, կապուտակ երկինքն, սպիտակ ամպերը, պաղպաջուն ծովը, վէտ առ վէտ լիճը, փայլփլուն գետերը, բարձր խոտերուն մէջէն անցնող ստուերները, լուսինն և աստղերն և գիշերը դիտելով ։ Իսկ այն ինչ անձը բոլոր այս շլացուցիչ առարկաներէն բան մը չհասկնար ։ Լուսինն և աստղերն ի զուր կը փայլին իրեն համար. առանց բնաւ հաճոյք զգալու կրնայ դիտել թռչուններն և միջատները, ծառերն ու ծաղիկները, գետերը, լիճերն և արեւը ։ «Վասն զի ամէն մարմին հոգիէն կ'առնու իւր ձեւը, վասն զի հոգին է ձեւն, և մարմինը կը շինէ(¹) ։»

«Մեր արուեստական ներկերը կրնան լաւ համարուիլ մեր անապարծութիւնը փառաւորելու համար, բայց բաւական չեն իրիկուան դէմ նուաղուն՝ պատռած ամպի մը միայն մէկ պաւկին երանգներն յօրինելու. վայրի բաղխի մը թեւին միայն մէկ փետուրը նկարելու (²) ։»

«Լոյս մը կայ, կ'ըսէ Ըըսքին, զոր աչքը գեղեցկին

(¹) Սբէնսըր. (²) Համէրթըն։

խորագոյն զգացումով մը միշտ կը վնտռէ, — Խոնարհող կամ ծագող օրուան լոյսն, և ամպերու այն կարմիր շարքերն որք գուժկան կրակներու պէս կը վառին արեւամուտէն կանաչացող երկնքի վրայ։» Երբեմն այնպէս կը թուի թէ երկնքի գոյներն երկրի վրայ լոյս կը սփռեն։ Այնքան գեղեցիկ արեւամուտեր կան, որ կարծես թէ Երկնքի Դուներուն մեր առջև բացուիլը կը տեսնենք։

Թալմուտի մեկնիչները կ'ըսեն թէ Մանանայէն իւրաքանչիւր ոք իւր ախորժած համը կ'առնէր. Նոյնպէս ալ իւրաքանչիւր ոք առանց յոգնելու կրնայ գտնել բնութեան մէջ ինչ որ ամէնէն մեծ հաճոյքը կը պատճառէ իրեն։

Ճշմարիտ հաճոյքներու կատարեալ ցանկ մը պատրաստել ջանալու միտք չունիմ ամենեւին։ Եւ քանի որ անվնաս հաճոյքներն այնքան բազմաթիւ են, ինչո՞ւ համար վնասակար և կասկածելիները փնտռենք։ Գոնէ նախ և առաջ լաւագոյններն սպառենք։ Յետոյ դեռ բաւական ժամանակ կը մնայ մեզ միւսերուն վրայ խորհելու։

Սովորական բացատրութիւն մը գործածելով, անոնք որ «կեանքը տեսած են» և կը կարծեն թէ «զաշխարհ» կը ճանչնան, շատ անգամ կը սխալին։ Կեանքի իրողութիւնները գեղջուկի մը չափ ալ չեն ճանչնար, որ թէև բնաւ իւր գիւղէն դուրս չէ ելած, բայց կրցած է ուշի ուշով իւր շուրջը դիտել։

Անձնասէր կեանք մը, «հաճոյքի» կեանք մը, ինչպէս որ կը կոչեն զայն, անիրաւաբար, երջանկութեան ողորմելի մէկ նմանութիւնն է։ Որոնք որ անկէ կը յափշտակուին և կը տառապին «աշխարհի» դէմ կը տրտնջեն։ Բայց պարսաւելին իրենք են։ «Մինչդեռ հաճոյքներն զմեզ կ'սպառեն, մենք կը կարծենք թէ հաճոյքներն սպառած ենք (1)։» — «Երիտասարդ եմ, կ'ըսէ Միւսէ.

(1) Վովընարկ։

Digitized by Google

կեանքի դեռ կէս ճամբուն վրայ, Արդէն քալելէ յոգնած՝ կը դառնամ ետիս կը նայիմ։»

Ինչ տխուր խոստովանութիւն։ Եթէ խոհեմութեամբ ապրած ըլլար, պիտի կարենար ետին նայիլ երախտագիտութեամբ և յառաջ՝ յուսով։

Կեանքի մ'արժէքն իւր բարոյական արդիւնքին համեմատ կը գնահատուի։ «Հոգին և մարմինը կատարեալ մարդ մը կը կազմեն, երբ որ հոգին իմաստութեամբ կը վարէ, կամ սիրով կ'ուղղէ մարմինն որ թէև իւր ընկերակիցն՝ այլ սակայն իրմէ ստորադաս է։ Բայց եթէ մարմինն օրէնք դնել ուզէ, և ցանկասիրութեամբ՝ նախ չարաչար գործածէ իմացականութիւնն, և ապա կամքի և ընտրողութեան մեծագոյն մասին տիրանայ, այն ատեն այլ ևս մարմինն և հոգին իրարու յարմար ընկերներ չեն, և իրենց կազմած մարդն յիմար և ողորմելի է։ Հոգին կամ պէտք է որ կառավարէ և կամ գերի դառնայ ([1])։»

## ԳԼՈՒԽ Ե.

## ԱՌՈՂՋՈՒԹԻՒՆ

Նոյն իսկ մեր արդի կեանքի պայմաններն յատուկ կարեւորութիւն մը տուած են առողջապահական խնդրոց։ Մեր նախնիք մեզմէ աւելի բաց օդի մէջ, գիւղը, հողագործական զբաղմունքով կ'ապրէին։ Այսօր մենք աւելի խճողուած ենք քաղաքներու մէջ, շատ աւելի խատինք տուներու, խանութներու և գործարաններ-

[1]) Ճէրէմի Թէյլըր։



Digitized by Google

րու մէջ. մեր զբաղմունք նստական են և դնդերային գէշ սովորոյթներ կուտան մեզ. միանգամայն ջղային և ուղեղային շատ աւելի առատ սպառում մը մեզմէ պահանջելով ։ Դժբախտաբար կրնանք ըսել թէ ստոյգ է որ մեր մեծ քաղաքներու բնակիչք իրենց նախնեաց չափ կորովի չեն ։ Կարելի չէ մեծ քաղաքաց աղքատիկ թաղերէն անցնիլ առանց նշմարելու հոն առհասարակ բնակչաց վրայ կենդանութեան պակասութիւնը, գունատութիւնն և իրենց վատառողջ կերպարանքն ։ Ասկէ զատ, մեր առողջապահական զգուշութիւններն իսկ կերպով մը վտանգ կը համարուին, քանի որ կարգ մը հիւանդոտ կամ տկար էակներ ապրեցնելու կը ծառայեն ։ Բայց քիչ մ'զգուշութեամբ և առողջապահական օրէնքներու նախնական ծանօթութեամբ մը, շատ անգամ կարելի պիտի ըլլար հիւանդութեան պատճառած թշուառութեան և տառապանաց ազդու կերպով դիմադրել ։

Հնուց ի վեր հեռատես պետական անձինք առողջութեան խնդրով զբաղած են ։ Ամէնքն ալ հասկցած են Mens sana in corpore sano (1) առածին մեծ կարեւորութիւնը ։

Մեր առողջութեան հոգը նուիրական պարտաւորութիւն մ'է ։ Ոմանք կը կարծեն թէ Մովսիսի դրած առողջապահական կանոններն իւր կրօնագիտութեան մէկ կարեւոր մասը կը կազմեն ։ Ես չեմ կրնար անոնց հետ համակարծիք ըլլալ ։ Յիշենք թէ Ս. Գիրքը բազմակողմանի օրինագիրք մ'է, որ կրօնական օրէնքներու հետ քաղաքական և ընկերական օրէնքներ ալ միանգամայն կը պարունակէ ։

Այսու հանդերձ թէև առողջապահութեան օրէնքները ճշդիւ կրօնքի մաս չեն կազմեր, բայց դէթ անոր

(1) Առողջ միտք առողջ մարմնոյ մէջ։

Digitized by Google

մէկ կարեւոր հետեւութիւնն են ։ «Ի՞նչ, միթէ չէ՞ք գիտեր թէ ձեր մարմինը տաճար է Հոգւոյն Սրբոյ որ ձեր մէջն է, և որն որ Աստուծմէ ձեզի տրուած է, և թէ դուք ձերը չէք ամենեւին (1)։»

Եգիպտացւոյն առ մարմինն ունեցած պատկառանքն աւելի խոհական է՛ քան թէ միջին դարուն անոր նկատմամբ ցոյց տուած անարգանքն, և գուրչեր հագնիլն և աղտեղութեան մէջ ապրիլն ո՛չ միայն առաքինութիւն չէ՝ այլ մանաւանդ թէ ընդհակառակն է։

«Յոյներն այնպէս կը նկատէին թէ ֆիզիգական կըրթութիւնը ճիշդ մտաւորական կրթութեան պէս գիտութիւն մը և ուսումնասիրութիւն մ'է։ Անոնց կինները թէ հաճոյական և թէ նոյն իսկ ըմբշական խաղերու մէջ վարժութիւն կ'ստանային։ Իրենց ազատ և քաջառողջ կեանքով զարգացուցած են այն մարմինները որք դեռ այսօր իսկ մարդկային գեղեցկութեան յաւիտենական տիպարներն են (2)։»

Մաքրութիւնը սրբութեան կը հաւասարի, կ'ըսէ հին առած մը. և բժշկութեան նոր գիւտերն ալ այս հին ընտիր խօսքն ոչ միայն կը հաստատեն այլ նաև անոր ճշմարտութիւնը կը մեկնեն։

Այսօր գիտենք թէ շատ հիւանդութիւններ ի սկզբան հիւսուածոց ախտաւոր վիճակի մ'արդիւնքը չեն. այլ՝ մանր էակներու ճշմարիտ արշաւանքներ են. թէ քոլեռան, ծաղկախտն և ուրիշ շատ հիւանդութիւններ, իրենք իրենցմէ յառաջ չեն գար, այլ մեր մարմնոյն մէջ մուտք գտնող իրենց սերմերէն։ Ասկէ կը յայտնուի մաքրութեան անհուն կարեւորութիւնն, ոչ միայն մեր անձին՝ այլ նաև տուներուն, մեր զգեստներուն, մեր խմած ջուրին մեր շնչած օդին նկատմամբ։

(1) Պօղոս Առաքեալ։ (2) Քինզլի։

Digitized by Google

Մարդկային մարմինն ստուգիւ յաւերժական հրաշալիք մ'է։ Խորհեցէ՛ք վայրկեան մ'ուղեղին մէջ չեղջակուտուած ծանօթութեանց անսահման գանձին վրայ։ Խորհեցէ՛ք թէ որպիսի արագութեամբ և որպիսի ապահովութեամբ ջիղերը կամքին թելադրութիւններուն կը պատասխանեն։

Մորթն յոյժ փափուկ և միանգամայն յոյժ հոյակապ հիւսուած մ'է․ միլիոնաւոր բջիջներէ կազմուած և հազարաւոր մեծ երակներ, հերաձև անօթներ և ջիղեր պարունակող։ Նա անդադար կը նորոգուի, և իւր պաշտօնները կանոնաւորապէս կատարելու համար, պէտք է որ զգուշութեամբ խնամք տարուի իրեն, և ջուրը չխնայուի իւր մաքրութեան համար։ Խողանակի գործածութիւնն որքան որ մազերու՝ գրեթէ նոյնքան ալ մորթին համար պիտանի է։ Այս հրաշալի կազմուածքին լաւ պաշտօնավարութիւնն ապահովելու համար պէտք է անոր ամէն մասերը մարզել։

Շատ հիւանդաց համար կրնայ ըսուիլ ինչ որ Միլդըն կ'ըսէր Հօպըսնի համար․ «Ծուլութիւնն իւր գլխաւոր հիւանդութիւնն էր։»

«Գաբուի զեղխութիւնը թուլացուց Աննիբաղի սիրտը, զոր ո՛չ ձիւներն և ո՛չ Ալպեան լեռները կրցած էին յաղթանակել։ Զէնքով յաղթող էր, բայց հաճոյքէն յաղթուեցաւ (1)։»

Զգայարանք, հակառակ այն ամէն հաճոյքներու զորս վայելել կուտան մեզ, կարող են, եթէ թոյլ տրուի իրենց, զմեզ ուղղակի կեանքի բոլոր խութերուն և կործանման առաջնորդել։ Մեր հիւանդութեանց շատ սնունդի մասին մեր գործած սխալներէն յառաջ կուգան «Ըմպելիք» բառը վերջապէս ալգօլի հոմանիշ եղած

(1) Սենեկա։

Digitized by Google

որն որ հիւսիսաբնակ ազգաց չարագոյն աղէտն է։ Երբեմն Թանկագին է նա իբր դեղ, բայց անոր գործածուԹեան մէջ չափազանցելու փորձուԹիւնն այնքան անդիմադրելի է, որ Թշուառութեանց և ոճրագործութեանց կէսն անոր արդիւնքն է։ Ջուրն երբեք ոճիր չէ գործած, բայց ալգօլին համար կրնայ ըսուիլ Թէ շիշերու մէջ պահուած ոճիր է։ «Ուր որ Սատանան չկրնար անձամբ երԹալ, կ'ըսէ հրէական հին առած մը, գինին կը խրկէ։»

Անգամ մ'որ Սատանան ներս մտնէ,
Եւ դրան մէջ կենայ.
Խաղաղութիւն, յոյս և ուրախութիւն
Այլ եւս երբեք հոն չեն բնակիր (1)։

«Գինին, կ'ըսէ Պլինիոս, ձեռքերը կը դողացնէ, աչքերը կը վազցնէ, մեր գիշերուան հանգիստը կը խանգարէ, մեր շունչը կ'ապականէ, և մեր յիշողութիւնը կ'աւերէ։» Սբր Ռ. Բալայ այս հատուածն յիշելէ յետոյ, կ'աւելցնէ. «Ով որ գինին կը սիրէ, բնաւ մէկու մը վստահութիւնը պիտի չվայելէ, վասն զի այնպիսին չկրնար գաղտնապահ ըլլալ։ Գինին զմարդ անասունէ մ'աւելի գէշ կ'ընէ, կը յիմարացնէ։ ԵԹէ գինեմոլ ըլլաս, կինդ և զաւակներդ և բարեկամներդ պիտի պարսաւեն զքեզ։»

Շէյգսբիր իւր գրուածոց մէջ շատ տեղ՝ և սքանչելի խօսքերով ըմպելիքը կը դատապարտէ։

Հարկ է որ մարդիկ այսպէս իրենց բերնին մէջ դնեն
Թշնամի մը որ իրենց բոլոր դատողութիւնը կը կողոպտէ.
Ուրախութեան, հաճոյքի, զբօսանքի և ծափահարութեանց մէջ,
Հարկ էր որ անասունի կերպարանք ստանայինք (2)։

Խելացի մարդ ըլլալ նախ յիմար մը՝ ապա անաԲ'ըլլալու համար։»

---

) Տալլիա։ (2) Շէյգսբիր։

Digitized by Google

Բայց այս խօսքերով, ինծ կը թուի թէ անասուն-ները կը գրպարտեն ։

Իսկ միւս կողմանէ ի՛նչ առատ վարձատրութիւն կ'ընէ մեզ ժուժկալութիւնը ։

Թէև շատ ծեր կ'երեւիմ, այլ սակայն զօրաւոր եմ և տակաւին շատ կորովի,
Վասն զի երիտասարդութեանս մէջ երբեք արիւնիս չեմ խառնած
Բորբոքիչ և անասատ ըմպելիներ։
Այս պատճառաւ իմ ծերութիւնս խիստ և սառնային՝
Բայց առողջ ձմեռուան մը կը նմանի (1) ։

Ոմանք կը զարմանան թէ ալգօլամոլութիւնն այնքան շատ դատապարտուած չէ Ս. Գրոց մէջ ։ Պէտք է սակայն յիշել թէ այս մոլութիւնն այնքան ընդհանրացած չէ տաք երկիրներու մէջ ։ Այսուհանդերձ Սողոմոն գեկուցած է զայն. «Որո՞ւնն է վայը. որո՞ւնն է ոհը. որո՞ւնն են կռիւներն. որո՞ւնն են տրտունջներն. որո՞ւնն են առանց պատճառի վէրքերն. որո՞ւնն է աչքերու կարմրութիւնը ։ Գինիին քով մնացողներուն. խառնուած գինին փնտռելու գացողներուն ։ Մի՛ նայիր գինիին կարմրութեան, գաւաթին մէջ իւր գոյնը ցուցնելուն և շիտակ վազելուն ։ Նա յետոյ օձի պէս կը խածնէ, և քարբի պէս կը խայթէ (2) ։»

Պատճառներ կան կարծելու թէ ալգօլամոլութիւնն օր ըստ օրէ պակսելու վրայ է ։ Մտաւորական հաճոյքները վայելելու աւելի բազմաթիւ առիթներն, երաժշտութիւնն, որ այժմ աւելի եւս դիւրամատչելի եղած է, գիրքերը, նկարներն, ընտանեկան կեանքի աւելի մեծ բարւոքում մը, ահա մէկ քանին այն պատճառներէն որք արդէն բաւական զօրեղապէս խրախուսած են ժուժկալութիւնը ։

---

(1) Շէյգսբիր։ (2) Գիրք Առակաց։

Digitized by Google

Սակայն, եթէ ալգօլի վնասներն այսքան ակներեւ են, պէտք չէ երբեք մոռնալ թէ մենք նաեւ չափազանց շատակեր ենք։ Հաւանականաբար տասնէն իննն անձինք այս պակասութեան մէջ կ'իյնան, եւ անժուժկալութեամբ իրենց անձին կը վնասեն։ Խնջոյք մը, երբեմն, վնաս չպատճառեր. բայց պէտք եղածէն աւելի բան ուտելու սովորութիւնն ստամոքսի ծանրութիւն կուտայ եւ հիւանդութեան պատճառ կ'ըլլայ։ Շատակերութիւնը շատ դիւրին է, բայց սակաւակերութիւնը դժուարին։

Պէտք էր որ ժուժկալութիւնը կեանքին հիմնական կանոնն ըլլար. զօրութիւն մ'է այն եւ ոչ թէ տկարութիւն. որ անձին վրայ իշխանութիւն ունենալը կ'ապացուցանէ։

Երկար ժամանակ սեղանի վրայ մի՛ մնաք, բայց կերակուր ուտելու ատեն ալ շատ մ'աճապարէք։ Կ'ըսեն թէ սեղանէն միշտ դեռ ուտելու ախորժակ ունենալով ելնելու է։ Եթէ ստամոքսը բեռնաւորուած է, ուղեղը չկրնար աշխատիլ։ Ճաշելէ յետոյ քիչ մը հանգչեցէ՛ք, կ'ըսէ առածը. բայց մէկ ընթրիքէն մինչեւ միւսն հանգչիլ ստիպուելու համար ալ մարդ տարօրինակ կեանք մ'ունենալու է։ Ապրելու համար կերէ՛ք, բայց ուտելու համար մ'ա՛պրիք։ Կարճեցէ՛ք ձեր ընթրիքն եւ ձեր կեանքը պիտի երկարէք։ Որքան որ ձեր սնունդին քանակութիւնը պակսեցնէք, այնքան աւելի պիտի կարենաք մտաւոր աշխատութեամբ զբաղիլ։

Թեթեւ ստամոքս մը սիրտը զուարթ կը պահէ։ Եթէ շատ ուտէք միշտ տհաճ պիտի ըլլաք։ Մարդիկ աւելի յաճախ կը տառապին անմարսողութենէ քան թէ միւս որ հիւանդութիւններէն։ «Ձեր կեանքի կանոններուն նաական մասերուն մէջ, կ'ըսէ Պագոն, ո՛ եւ է յանարծական փոփոխութենէ զգուշացէ՛ք, եւ երբ որ պէտքն եզ ստիպէ, ջանացէ՛ք ձեր ապրելու եղանակին մնադ մասն անոր պատշաճեցնել։ Ճաշելու եւ քնանալու

ժամերուն անզբաղ միտք և զուարթ բնաւորութիւն ունենալը մին է այն պատուէրներէն որոց գործադրութիւնն ամէնէն աւելի կ'օգնէ կեանքի երկարութեան։»

Մեր նստական կեանքը նկատողութեան առնելով, բացօդեայ տեղեր անցուցած մեր բոլոր ժամանակը լաւ գործածուած կրնայ համարուիլ։ Այն ժամերն ոչ միայն արժանի են նշանաւոր նկատուելու կեանքի մէջ, այլ պիտի երկարեն զայն։ Հռովմայեցիք ընտիր առած մ'ունէին. "In aere salus (1)." Չէք կրնար դուրսը շատ ժամանակ անցուցած ըլլալ։

Մաքուր ջուրն ալ բաց օդի չափ կարեւոր է առողջութեան համար։ Առատապէս գործածեցէ՛ք զայն թէ՛ ներքին և թէ արտաքին պէտքերու համար։ Նոյն իսկ այնպիսի խնամքներ որոնք կրնան նուազ կարեւոր երեւիլ, զոր օրինակ բերնի խնամքը, շատ կը նպաստեն մեր հանգստութեան։

Առողջութիւնը կախում ունի յաւէտ մեր սովորութիւններէն և մեր ապրելու եղանակէն քան թէ դեղերէ։ Մեր նախնիք դեղեր կ'առնէին անձերնին հիւանդութեան դէմ պաշտպանելու համար. և ոչ միայն բժշկական կաճառն՝ այլ նաև Պագօն կը յանձնարարէր անոնց գործածութիւնն։ Այսուհանդերձ շատ մեծ սխալ մ'էր այդ։ Կ'երեւի թէ Լօք առաջինն եղած է այս սովորութեան անկարեւորութիւնն ապացուցանող։ Եթէ գիտնանք առողջապահութեան օրինաց հպատակիլ, պէտք չենք ունենար յաճախ դեղեր գնելու։

Թողէ՛ք որ Բնութիւնը գործէ անարգել։ «Կենդանական տարրը մի՛ նեղէք, կ'ըսէր Նափոլէօն, ինքզին պաշտպանելու առիթը տուէ՛ք իրեն. ամէն դեղերէ աւելի զօրաւոր պիտի ըլլայ այդ։»

---

(1) «Առողջութիւնը բաց օդի մէջ։»

Digitized by Google

*Առատ օդ, առատ ջուր, և ուտելեաց և ըմպելեաց չափաւորութիւն, ահա՛ւասիկ ճշմարիտ առողջութեան և զօրութեան յոյժ թանկագին ուրախութիւնն ստանալու ապահով միջոցներն՝ որք մինչև իսկ խոր ծերութեան մէջ պիտի պահպանեն մեր երիտասարդութեան բովանդակ աշխուժութիւնը։ Բայց առողջութիւնը միայն մարմնէն կախում չունի։ «Բարկութիւնն, ատելութիւնը, տխրութիւնն և երկիւղն ամէնէն ձախող ազդեցութիւններն են, և որք ամէնէն աւելի կ'աւերեն մեր կենդանութիւնը(1)։» Մինչդեռ ուրախութիւնը, զուարթութիւնն, և հոգւոյ խաղաղութիւնն առողջութեան հզօր տարրերն են։*

*Կ'ըսեն թէ Լիգուրկոս Ծիծաղի չաստուածին նուիրեալ փոքրիկ արձաններ դնել տուաւ Սպարտացւոց բոլոր սեղանատուններուն մէջ։*

*Երբ որ անհանգիստ ենք, ամենափոքր բան մը մեր ջղային դրութիւնը կը խանգարէ. դոյզն նեղութիւններն աղէտի երեւոյթ կ'առնեն։ Ճիշդ ապացոյց մ'է այս թէ հանգչելու և օդ առնելու պէտք ունինք։*

*Մանկանց տրուած աշխատութեանց շատ յոգնեցուցիչ ըլլալուն վրայ ստէպ կը խօսուի, կամ կ'ըսուի թէ շատ կատարեալ մարդիկ չափազանց աշխատութեամբ իրենց կեանքը կորսնցուցած են։ Ըստ իս հազուադէպ է այդ։ Բայց յոյժ շատ անգամ ոչ թէ աշխատութիւնն՝ այլ յուզմունքն, անձկութիւնն և հոգերն են որ զմեզ կը հիւծեն։ Ծուլութիւնն, հեշտամոլութիւնն և անձնասիրական հաճոյքներն աւելի շատ մարդիկ կործանած են քան թէ ծանր աշխատութիւնն։ Ինչպէս որ մկանունք՝ նոյնպէս ալ ուղեղը մարզանք կը պահանջէ։ Եթէ ամէն [illegible]ի համար որոշեալ ժամեր և ժուժկալութիւն ունենք, և ձեր ժամանակը խոհեմութեամբ գործածելու սո-*

(1) Տոքթ. Րիչարտսըն։

վորիք, նոյն իսկ երկարատեւ եւ ծանր աշխատութիւնն, առանց սակայն ձեր կարողութենէն վեր ելնելու, աւելի օգուտ պիտի ունենայ ձեզ քան թէ վնաս։

Գրեթէ ամէնքս ալ ուշ կամ կանուխ քնատութիւնը կը ճանչնանք։ Անկէ աւելի նեղացուցիչ բան չկայ. մարդ չարունակ ինքզինք դժբախտութեան մ՚ազդեցութեան ներքեւ կ՚զգայ. ամենափոքր դժուարութիւններն իսկ որոց առհասարակ հեշտիւ կարելի էր յաղթել, նոյն ժամանակ անյաղթելի կը թուին. կարծէք թէ միտքը կը ջանայ ամէն հաճելի բաներէ խուսափիլ, միմիայն տխուր եւ կեանքի մէջ մեր զուրկ եղած բաներուն վրայ խորհելու համար։ Այլ սակայն անյոյս մ՚ըլլաք։ Կարծեմ թէ քնատութիւնն երբեք մէկու մը մեռնելուն պատճառ չէ եղած։ Մանաւանդ թէ քնաբեր դեղեր առնելու մ՚ելնէք, ահա բուն վտանգն հոն է։ Նախ հաճելի մտածութիւններ պատրաստեցէք քնատութեան ժամերու համար։ Տունը կարելի եղածին չափ քիչ կեցէք, իսկ դուրսը՝ կարելի եղածին չափ շատ. բնաւ մտատանջութիւն մ՚ունենաք, եւ վստահ եղէք. որ վերջապէս դարձեալ քունը պիտի գտնէք։ Եթէ այդ քնատութիւնները շատ երկարատեւ չըլլան, կրնան նոյն իսկ օգտակար ըլլալ. ըստ որում քունին այն անգնահատելի բարիքը կը ճանչցնեն ձեզ, որուն համար շատ անգամ պէտք եղածին չափ երախտագէտ չենք։

Շատ հիւանդութիւններու պատճառը միտքն է։ Բժիշկներն հիւանդութեան մը միմիայն ֆիզիգական ախտանիշներուն զբաղելու չեն, այլ նաեւ շատ անգամ հարկ է որ Շէյգսպիրի հետեւեալ հարցման պատասխանեն.

Չես կրնար ուրեմն հիւանդ միտք մը դարմանել,
Յիշողութեան մէջ զետեղուած վիշտ մ՚արմատախիլ ընել,
Ուղեղին մէջ քանդակուած մտատանջութիւնները ջնջել,
Եւ, մոռացութեան քաղցր դեղթափի մ՚օգնութեամբ՝

Digitized by Google

Մաքրել կուրծքն որ ուռեցած է վնասակար նիւթերով,
Որոնք սրտին վրայ կը ծանրանան։

Անկէ զատ, առողջութիւնը միմիայն երջանկութեան գլխաւոր պայմաններէն մէկը չէ. նա կարեւոր է նաեւ լաւ աշխատելու համար։ Հետեւաբար, զայն անխնամ թողուլն ոչ միայն յիմարութիւն է այլ նաեւ ամբարտաւանութիւն։

Կարելի չէ լաւ աշխատիլ, կամ գէթ մեր կրցածին չափ ընել, եթէ չափազանց աշխատութեամբ բեռնաւորուած ենք։ Արդէն իւր կարողութեան չափէն դուրս ելնելը խոհեմութիւն չէ, վասն զի այդ կերպով կատարուած ամէն աշխատութիւն հուսկ յետոյ հանդարտութեան և հանգստութեան ժամանակամիջոցի մ'ալ պիտի կարօտի, կատարուած գործն երբեք լաւ բան մը պիտի չըլլայ, և ո՛ և է դիւրագրգռութեան, տկարութեան կամ անխորհրդութեան մը հետքերը պիտի կրէ։ Մանաւանդ եթէ մէկն ստիպուած է ուրիշի աշխատակցիլ, բաղխմանց և թիւրիմացութեանց առիթները միշտ անպակաս պիտի ըլլան։ Այդ վիճակի մէջ եղողը բաւական է որ փորձէ նախագիծ մ'ընել, պիտի տեսնէ թէ ձեռքը կը դողայ և իւր կամքին համեմատ չշարժիր։ Ատոր պատճառն ո՛չ միայն դնդերային յոգնութիւնն է, այլ մանաւանդ ջղային տկարութիւնը։ Պէտք է յօժարութիւն ունենալ իւր աշխատութեան. և ասոր համար կանոնաւորապէս և եռանդով աշխատելու է, բայց ոչ թէ անընդհատ։ Պէտք չէ անփոյթ ըլլալ ո՛չ սնունդի, ո՛չ հագուստի, ո՛չ մարզանքի եւ ո՛չ ալ արձակուրդի օրերու մասին։

Վատառողջութեան հետզհետէ ընկճելու և տկարացնելու ձկտումն աւելի եւս ակներեւ է երբ մէկն անձամբ ինքն եղած է ատոր պատճառն։ Այլ սակայն շատ մարդիկ ալ առանց յանցանք ունենալու, իրենց բոլոր կեանքին մէջ հիւանդութեամբ տառապելու սահմանուած են։

Digitized by Google

*Բայց շատ անգամ կը պատահի որ բնութիւնը մարմնոյն այս տկարութեան փոխարէն, մտքին աւելի եւս պայծառութիւն և զուարթութիւն կը պարգեւէ։ Ամէնքս ալ ճանչցած ենք չարունակ հիւանդոտ մարդիկ, որոնց զուարթութիւնն և հեզիկ բնաւորութիւնն ո՛չ միայն իբր դաս կրնայ ծառայել քաջողջ եղողներու, այլ մանաւանդ կարծես թէ անոնց կեանքը նոյն իսկ ցաւի մէջ գեղեցկութիւն մը և նուիրականութիւն մը կ'զգենու։*

## ԳԼՈՒԽ Զ.

## ՏՈՀՄԱՅԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Հին ժամանակներէ ի վեր բոլոր իմաստունք հաստատած են դաստիարակութեան կարեւորութիւնը։*

*«Բոլոր գանձերու մէջ, կ'ըսէ Իթօբատէսան [1], գիտութիւնն ամէնէն թանկագինն է, վասն զի ո՛չ կը գողցուի, ո՛չ կը ծախուի, ո՛չ ալ կը ջնջուի։» — Դաստիարակութիւնը, կ'ըսէ Պղատոն, լաւագոյն մարդոց ստանալիք ամէնէն գեղեցիկ բանն է։»*

*Մոնթէնեը կ'ըսէ թէ «տգիտութիւնը չարիքներու մայրն է։» — «Գիտութիւնը, կ'ըսէ Ցիւլլէր, ողորմութիւններուն ամէնէն վսեմն է։» — «Կարողութիւնն առանց գիտութեան, կ'ըսէր Գաղղիայի բարոյագէտ մը, շատ վտանգաւոր է։» Տգէտի մը կեանքն համեմատաբար միշտ ապարդիւն կ'ըլլայ։ Իրաւամբ ըսուած է թէ մարդ կարօտ է գիտութեան ոչ միայն իր ապրուստն ապահովելու այլ ապրելու համար։*

---

(1) *Սանսգրիտ լեզուով գրուած արձակ առակաց հաւաքածոյ։*

Digitized by Google

Բեդրարդա կ'ըսէր. թէ իւր ամէնէն աւելի սիրած բանն էր սորվիլ, եւ տարակոյս չկայ թէ Շէյգսբիր իւր անձնական կարծիքն յայտնած է լորտ Սէյի բերնով ըսել տուած սա խօսքերուն մէջ.

Տգիտութիւնն Աստուծոյ մէկ անէծքն է.
Իսկ գիտութիւնն՝ այն թեւն է որ զմեզ մինչեւ երկինք կը հանէ։

Սողոմոն շատ գեղեցիկ հատուածի մը մէջ կ'ըսէ.

«Երանի այն մարդուն որ իմաստութիւն կը գտնէ, ու այն մարդուն՝ որ հանճար կ'ստանայ. վասն զի անոր շահն արծաթի շահէն աղէկ է, ու անոր արդիւնքը մաքուր ոսկիէն։ Գոհարներէն պատուական է այն, և բոլոր ցանկալի բաները չեն կրնար անոր հաւասարիլ։ Անոր աջ ձեռքին մէջ օրերու երկայնութիւն կայ, և ձախ ձեռքին մէջ հարստութիւն և փառք։ Անոր ճամբաներն հաճոյական ճամբաներ են և անոր բոլոր շաւիղները խաղաղութիւն։»

Եւ դարձեալ.

«Ամէն բանին գլուխն իմաստութիւն է, ուստի իմաստութիւն ստացիր, և ամէն ստացած բաներուդ հետ խոհեմութիւն ստացիր (1)։»

Այլ սակայն ասոր հակառակ կարծիքն երկար ժամանակ իշխեց, մանաւանդ դեռատի աղջկանց նկատմամբ։ Գերմանական առած մը կ'ըսէր թէ կանանց գրադարանն իրենց զգեստի պահարանն է, և Գաղղիական առած մ'ալ կ'ըսէր թէ նորատի աղջիկները կամ չորս աւետարանաց՝ և կամ չորս պատերու մէջ պահուելու են։ Դեռ քիչ ժամանակ առաջ, այնպէս կը նկատուէր թէ ո՛չ ժողովուրդն և ո՛չ ազնուականք պարտաւոր էին գիտութեամբ պարապելու, քահանաներու և մենակեացներու

(1) Գիրք Առակաց։

գործն էր այն։ Նոյն իսկ շատ հանճարեղ եւ բարեբարոյ մարդիկ, ինչպէս Տօքթ. Ճօնսըն, իբր ստոյգ սկզբունք, հաստատած են որ, եթէ ամէն մարդ կարդալ սորվէր, քիչ ատենէն ձեռնական աշխատութիւններով զբաղելու մարդ պիտի չգտնուէր, Բայց կ'երեւի թէ Տօքթ. Ճօնսըն աշխատութեան արժանապատուութիւնը նկատողութեան չէր առներ։

Այս եղաւ առաջին կայան մը։ Իսկ երկրորդը՝ թէ դաստիարակութիւնը պատրաստութիւն մ'է գործոց համար. թէ պէտք է տղաքն իրենց վիճակին պահանջածէն աւելի վեր բարձրացնել զգուշանալ, և թէ ընթերցանութիւնը, գեղագրութիւնն և թուաբանութիւնը բաւական են աղքատիկ դասակարգի տղոց համար։

Քիչ քիչ ամէն տեսակ գործի համար այսպէս սկսան խորհիլ։ Հաքսլի յայտարարեց թէ առեւտրական ասպարէզի սահմանուած տղաք պարտին նախնական կրթութեամբ մը բաւականանալ։ «Ամէն մարդ, կ'ըսէր նա, կրնայ դրամ շահիլ, եթէ գլխուն մէջ տարբեր մտածութիւն չունենայ։»

Այսօր մենք կրթութիւնը գովութեամբ կը հռչակենք ոչ միայն մարդը լաւագոյն գործաւոր մ'ընելու այլ նաև գործաւորը լաւագոյն մարդ մ'ընելու համար։ Վիքթոր Հիւկօ իրաւամբ ըսած է թէ «Ով որ դպրոց մը կը բանայ բանտ մը կը գոցէ։»

«Մեր տղոց շատը, կ'ըսէր Զուիցերացի պետական անձ մը, աղքատութեան մէջ կը ծնանին, բայց մենք կը ջանանք որ անոնք տգիտութեան մէջ չմեռնին։»

1870 տարին՝ ուր կրթութիւնը պարտաւորիչ ընող օրէնքն հաստատուեցաւ, շատ նշանաւոր թուական մ'է Անգղիոյ պատմութեան մէջ։ Այն ատեն Անգղիոյ նախնական վարժարաններուն մէջ 1,400,000 տղաք կային. այսօր այդ թիւն 5,000,000ի հասած է։ Կ'ուզէ՞ք դիտ-

Digitized by Google

նալ թէ ի՛նչ արդիւնք ունեցած է այս։ Քննենք նախ եղեռնագործութեանց վիճակագրութիւնները։ Մինչեւ 1887 Անգղիոյ բանտերուն մէջ եղեռնագործներու թիւն աւաւելութիւն ցոյց տուած է։ Նոյն տարին, միջին հաշուով, անոնց թիւն էր 20,800։ Իսկ անկէ ի վեր պակսելու վրայ է։ Այսօր այդ թիւը 13,000ի իջած է։ Ըսել է թէ անոնց մէկ երրորդ մասը պակսած է։ Բայց պէտք է միանգամայն յիշել թէ ամբողջ այդ ժամանակամիջոցի մէջ ժողովուրդը շարունակ կ'աւելնար։ Այնպէս որ 1870էն ի վեր մէկ երրորդ մասի յաւելում մը ցոյց կուտայ։ Եթէ հին եղեռնագործաց թիւն ալ մի եւ նոյն համեմատութեամբ աւելցած ըլլար, այժմ փոխանակ 13,000ի 28,000 պիտի ըլլար, կամ կրկնապատիկէն աւելի։ Եթէ քննենք ապա Անգղիոյ աղքատաց վիճակագրութիւնները, պիտի տեսնենք թէ, 1871ին հազար բնակչի վրայ 47 տնանկ կը հաշուուէր, որոց թիւն ապա մինչեւ 53ի հասած էր։ Անկէ ի վեր, այս թիւը 22ի իջած է։ Հետեւաբար, անոնք ալ այսօր կէս առ կէս համեմատութեամբ նուազած են։

Ապացուցանելու համար թէ որքան կարճ է ոճիրը տգիտութեան կցող կապը, ձեռք անցուցած վերջին տեղեկութեանցս համեմատ, Անգղիոյ մէջ 157,000 դատապարտեալներու վրայ, 5,000ը միայն պէտք եղածին չափ կարդալ եւ գրել գիտէին, իսկ 250ը միայն ուսեալ ըսուելու արժանի մարդիկ էին։

Սակայն չեմ յուսար որ կարծուի թէ խնդիրն իբր նիւթական բան մը կը նկատեմ։ Վերոգրեալ թիւերը մէջ բերած եմ միմիայն իբր պատասխան այն անձանց որոնք կը կարծեն թէ մեր դաստիարակութիւնը շատ սուղի ըլլայ մեզ։

Անտարակոյս ես ալ կը խոստովանիմ թէ պէտք է անտազան զեղչեր ընել․ թէ հարկ է հաշուի առնուլ նաեւ շատ ուրիշ պարագաներ, եւ թէ այս թիւերը գիտական

Digitized by Google

ճշդութիւն մը չունին. այսուհանդերձ անոնք յոյժ հրահանգիչ են և յոյժ դոհացուցիչ։ Ստուգիւ, տգիտութիւնն աւելի բազմածախս է քան դաստիարակութիւնն։

Իրօք ոճիրներու յոյժ փոքր մէկ մասին պատճառը մոլութիւնն և կամ անդիմադրելի փորձութիւններն են։ Իսկ անոնց մեծագոյն աղբիւրներն են արբեցութիւնն և տգիտութիւնը։ Մինչև ցարդ ձեռք բերուած լաւ արդիւնքներուն պատճառը միմիայն այն չէ որ տղաք դպրոցի մէջ բարի վարք կ'ստանան, և մաքրասէր և կարգապահ ըլլալու կը սորվին. այլ նաև, և մանաւանդ թէ անոնք փողոցի չար դասերէն հեռու կը պահուին, և եղեռնագործի ու դատարկապորտի աղետալի օրինակներուն դէմ կը պաշտպանուին։

Հարկ է որ մենք մեզի հարցնենք թէ արդեօք դտա՞ծ ենք տոհմային դաստիարակութեան լաւագոյն եղանակն։ Երեք գլխաւոր հարցումներ կան որոնց ամէն վայրկեան պէտք է պատասխանել կեանքի մէջ։ — Այս աղէ՞կ է արդեօք թէ գէշ։ — Այս ճի՞շդ է արդեօք թէ սխալ։ — Այս գեղեցի՞կ է արդեօք թէ տգեղ։ Պէտք էր որ մեր դաստիարակութիւնը կարենար օգնել մեզ բոլոր այս հարցումներուն պատասխանելու։

Դաստիարակութեան նպատակն է ոչ թէ մարդիկը պարզապէս պատրաստել կեանքը վայելելու, այլ իրենց վայելած կեանքին մէջ լաւ գործ մը կատարելու։

Երկու դարէ աւելի է որ Պագոն արդէն կը խօսէր այնպիսեաց վրայ «որոնք խորհուրդ կուտան մարդոց երթալ ծախել իրենց գիրքերն, հալոցներ գնելու համար. զԱթենաս և զՄուսաներն ամուլ կոյսեր ըլլալնուն պատճառաւ լքանելով, և միմիայն Հեփեստոսի ապաւինելով Պէտք չէ երբեք լքանել զԱթենաս և զՄուսաները, բայց դժբախտաբար մինչև ցարդ մեր կրթութիւնն հաստատապէս չենք հիմնած Բնութեան Ս. Գրքին վրայ։

Digitized by Google

*Կարդալ, գրել և հաշուել գիտնալն այնքան միայն կրնայ իբր դաստիարակութիւն մը նկատուիլ, որքան որ դանակ մը, պատառաքաղ մը և դգալ մը՝ իբր ընթրիք մը։ Աբրահամ, Իսահակ և Յակոբ ո՛չ կարդալ գիտէին և ո՛չ գրել, և հաւանականաբար երից կանոնին ալ տեղեակ չէին։*

*Գիրքերն, հակառակ այն ամէն բանին որ խորհրդածութիւնն և մեկնութիւններն երբեմն անոնց վրայ կ'աւելցնեն, պիտի չկարենային բաւել մեր կրթութեան։ Ով որ միմիայն գիրք կարդացած է, որ բնութեան և աշխարհի վրայ բնաւ ծանօթութիւն չունի, երբեք կատարեալ մարդ մը պիտի չըլլայ. միշտ բան մը պիտի պակսի իրեն։*

*Իրաւամբ ըսուած է թէ մեր կրթութիւնը մեծաւ մասամբ այնքան արդիւնաւոր է որքան ծաղիկները բուսցնելու համար անոնց վրայ բուսաբանութեան գիրք մը կարդալու գործողութիւնը։*

*Սորվիլը բաւական չէ, պէտք է նաև կարգ մը բաներ ալ չսորվելու ջանալ։*

*Այս դիտողութիւններն ընելուս համար պէտք չէ սակայն կարծել թէ ես նուազ երախտագէտ եմ ուսուցչաց։ Անոնց արուեստն յոյժ տաժանելի և սպառիչ է, և ծանր պատասխանատուութիւն ունի։ Մանկանց հետ խաղալէ աւելի զուարճալի բան չկայ. բայց անոնց ուսուցանելն այդպէս չէ երբեք։*

*Կրթութեան բուն նպատակն ոչ թէ փաստաբաններ, եկեղեցականներ կամ ուսուցիչներ՝ այլ մարդեր պատրաստելն է։ «Կատարեալ և ազնուական Դաստիարակու-ւն կ'անուանեմ, կ'ըսէր Միլդըն, այն դաստիարակու-ւնն որ կարող կ'ընէ զմարդ բոլոր հասարակաց և -ձնական պաշտօններն արդարութեամբ, յաջողակու-թեամբ և հոգւոյ վեհութեամբ կատարելու։»*

' — Կեանքի Գործածութիւնը



Digitized by Google

Իմաստասէրք միշտ մտադիր եղած են կարծելու թէ իրական հարցերը կարելի է բառական քննութեամբ լուծել։ Պլուտարքոսի զուարճալի հարցն ամէնուն ծանօթ է. Հա՞ւն կաւկթէն եղած է թէ հաւկիթն հաւէն։ Եւ վերջին ենթադրութիւնն հաստատելու համար մէջ բերուած ապացոյցներէն մէկն այն է որ, միշտ հաւի մը հաւկիթը կ'ըսուի, և ոչ թէ հաւկթի մը հաւը։

Հաւանօրէն մեր կրթութեան մէջ վերը յիշած պակասութիւններուս հետեւանքն է որ այնքան քիչ անձինք դպրոցէն ելնելէ յետոյ կը շարունակեն հետամուտ ըլլալ իրենց դաստիարակութեան։ Տարակոյս չկայ թէ մարդ մինչև իր վերջին շունչը բան կը սորվի։ «Ապրեցէ՛ք և միշտ սորվեցէք,» կ'ըսէ հին առածը. բայց խնդիրը գիտնալն է թէ արդեօք բան կը սորվի՞նք ո՛ և իցէ կերպով, զոր օրինակ, լրագրաց կամ վիպասանութեանց մէջէն հանուած հատուածներով, կամ թէ արդեօք բանի մը հետամուտ կ'ըլլա՞նք որ գէթ հեռուանց անընդհատ և կարգաւորեալ դաստիարակութեան մը նմանի։

Ուրիշ տեղ մը շատ բարձր հեղինակութիւն ունեցող անձի մը կարծիքն յայտնած եմ այն արդիւնքներուն վրայ զորս ո՛ և է կրթութենէ պահանջելու իրաւունք ունինք. հոս ալ Բրոֆ. Հըգսլիի յար և նման կարծիքը մէջ պիտի բերեմ։

«Լաւ կրթութիւն մը պէտք է որ կարող ընէ տասն և հինգ կամ տասն և վեց տարեկան տղայ մը իւր մայրենի լեզուն և դասական հեղինակաց գործերէն քաղուած ո՛ և է հատուած մը դիւրութեամբ և ճշդութեամբ կարդալու և գրելու. իւր ծնած երկրին պատմութիւնն և ընկերային կեանքի մեծ օրէնքներն ընդհանուր կերպով մը գիտնալու. բնախօսական և հոգեբանական գիտութեանց տարրական ծանօթութիւններն և թուաբանութեան և երկրաչափութեան վրայ փոքր ի շատէ տե-

Digitized by Google

դեկութիւն ունենալու։ Նոյնպէս պարտի նա յաւէտ փորձառութեամբ քան թէ տեսականապէս ստացուած տրամաբանութեան ծանօթութիւններ ունենալ։ Գալով երաժըշտութեան և գծագրութեան, ասոնք յաւէտ իբր հաճոյք պիտի ըլլան իրեն համար քան թէ աշխատութիւն։»

Մեզմէ շատեր կրնան մեծանուն անդամազնին Ծօն Հընդըրի հետեւեալ խօսքերը նոյնութեամբ արտասանել. վասն զի գրեթէ ամէնքս ալ իրեն պէս զգացած ենք. «Երիտասարդութեանս մէջ, սաստիկ բաղձանք ունէի ամէն բան գիտնալու ամպերու վրայ, խոտի վրայ, և թէ ի՞նչ պատճառաւ տերեւները գոյն կը փոխեն աշնան։ Մրջիւնները, մեղուները, թռչունները, գորտի ձագերն, հարսնեակները կը դիտէի, և մարդիկն իրենց չգիտցած և կամ գիտնալու իսկ շատ հետաքրքիր չեղած ամէն տեսակ բաներուն վրայ հարցումներովս կը նեղէի։»

«Սա միայն կ'ուզեմ ըսել գրքերու վրայ,» կ'ըսէ Լօգ, դաստիարակութեան վրայ գրած իւր գրքին մէջ, «թէ գրքերու հետ յարաբերութիւնը, սովորաբար բոլոր ըսուածին հակառակ, ըստ իմ կարծեաց, մեր ուսումնասիրութեանց ամենակարեւոր մասը չէ։ Պէտք է անոր վրայ աւելցնել նաև ուրիշ երկու բան, որոնք մեծապէս կ'օգնեն մեզ ծանօթութիւններ ստանալու. խորհրդածութիւնն և խօսակցութիւնն։ Ընթերցումն ինձ կը թուի թէ, գլխաւորաբար կը ծառայէ ժողվելու այն նախնական նիւթերն որոնց մէկ մեծ մասը մէկդի նետել հարկ պիտի ըլլայ, իբր անօգուտ։ Խորհրդածութեան պաշտօնն է այդ նիւթերուն մէջէն ընտրութիւն մ'ընել, զանոնք իրարու յարմարցնել, և եթէ ներելի է ինձ այս փոխաբ ութիւնը, գերաններն յարդարել, որմնաքարերը քառ կուսի կոփել և զետեղել, և ամբողջ շէնքը կառուց նել. իսկ բարեկամի մը հետ եղած խօսակցութեան դ ն է, (վասն զի վիճաբանութիւնը շատ օգուտ չունի,)

Digitized by Google

այսպէս ըսենք, շինուածքը քննել, շէնքին ամէն կողմը պտտիլ, բոլոր մասերուն չափակցութեան յարմարութիւնը դիտել, և իւրաքանչիւր բանի յատկութիւններն ու թերութիւնները նշանակել։ Արդէն պակասը գտնելու և պակասութիւնները դարմանելու լաւագոյն միջոցն այն է. խօսակցութիւնը շատ անգամ մեր չգիտցած ճըշմարտութիւնները ցոյց կուտայ մեզ, և ընթերցման և խորհրդածութեան չափ մեր մտքին մէջ կը զետեղէ զանոնք։»



# ԳԼՈՒԽ Է.

## ԱՆՁՆԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

Դաստիարակութիւնը մեր բոլոր ձիրքերուն ներդաշնակ կերպով զարգացումն է։ Նա մեր մանկութենէն կ'սկսի, դպրոցի մէջ կը շարունակէ, բայց հոն չվերջանար։ Նա մեր ամբողջ կեանքին մէջ կը յարատեւէ, կամայ թէ ակամայ։ Բուն խնդիրը՝ գիտնալու վրայ կը կայանայ թէ, այն ամէն բան զոր հուսկ ապա կը սորվինք, արդեօք խոհեմութեա՞մբ ընտրուած են թէ բոլորովին դիպուածով։ «Ամէն մարդ, կ'ըսէ Կիպպըն, երկու տեսակ դաստիարակութիւն կ'ունենայ. այն որ կը տրուի իրեն և այն զոր ինքն իրեն կուտայ։ Այս երկուքէն կարեւորագոյնը վերջինն է։»

Ինչ որ մենք անձամբ կը սորվինք, աւելի օգտակար կ'ըլլայ մեզ քան ինչ որ ուրիշները մեզի կը սորվեցնեն։ «Ոչ ոք, կ'ըսէ Լօդ, ճշմարտապէս գիտուն եղած է, կամ ոչ մէկ Գիտութեան մէջ ստոյգ գերազանցութիւն մը

Digitized by Google

կրցած է ստանալ միմիայն Վարպետի մը հրահանգաց և ուղղութեան ներքև։»

Անոնք որ չեն կրցած դպրոցի մէջ նշանաւոր հանդիսանալ, պէտք չէ որ այդ պատճառաւ վհատին։ Ամէնէն մեծ միտքերը չեն որ ամէնէն շուտ կը հասուննան։ Եթէ բնաւ ջանք չէք ըրած, արդարև ամօթալի է այդ, բայց այնուհանդերձ պէտք չէ որ վհատիք։ Եթէ բոլոր ջանքերնիդ ի գործ դրած էք, պէտք է որ յարատևէք. վասն զի բազմաթիւ են այնպիսիները որ թէև իրենց դպրոցական դասերուն մէջ չեն փայլած, բայց ապա մեծամեծ յաջողութիւններ գտած են։

Կ'ըսեն թէ Ուէլլինկթըն և Նաբօլէօն բթամիտ տղաք էին, և կը հաւատեն թէ նոյնպէս եղած են նաև Նիւթըն, Սուիֆդ, Գլայվ, Սըր Ուալդըր Սգօդ, Շէրիտան և ուրիշ շատ նշանաւոր մարդիկ։ Արդ, ասկէ կը հետևի թէ դպրոցի մէջ քիչ փայլող աշակերտները միշտ իրենց դասերէն քիչ օգտուողները չեն։

Ըսուած է թէ տաղանդն «աշխատելու անսահման կարողութիւնն» է, և այս կարծիքը ճշմարտութենէ շատ հեռի չէ։ Ինչպէս Լիլի կ'ըսէ գեղեցիկ դարձուածով. «Եթէ Բնութիւնը չօգնէ, Աշխատութիւնն ընդունայն է. բայց առանց Ուսումնասիրութեան՝ Բնութիւնն ընդունայն է։»

Միւս կողմանէ, բազմաթիւ կորովամիտ և նշանաւոր տղաք, առողջութեան, ջանասիրութեան կամ նկարագրի պակասութեամբ, կեանքի մէջ բնաւ չեն յաջողած, և ինչպէս որ Կէօթէ կ'ըսէ, «այն տունկերուն ը նմանին որք թէև կրկին ծաղիկ կը բանան, բայց պտուղ չեն տար։» Այդպիսիք երբեմն թշուառութեան մէջ կը մեռնին. մինչդեռ համեմատաբար նուազ օժտեալ այց ջանասէր, և աւելի հաստատ նկարագրի տէր տղաք, անդադար բարձրացած՝ և վերջապէս յաջողած

Digitized by Google

են կարեւոր դիրքեր գրաւելու, ի պատիւ իրենց եւ յօգուտ իրենց երկրին։

Կրթութեան արժէքին վրայ ինչ ինչ կասկածներ յառաջ եկած են, ինչպէս որ շատ լաւ ըսած է Տօքթ. Արնոլտ, «տգիտութեան եւ անմեղութեան միջեւ գտնուող այն տարօրինակ շփոթութենէն, որով ոմանք կ'երեւի թէ իրենք զիրենք կը խաբեն։ Ճշմարտութիւնն այն է որ, եթէ չափահաս մարդ մը իր հմտութիւններէն մերկացնէք, զայն տղայ մ'ըրած չէք ըլլար, այլ անասուն մը, տեղերքի ամէնէն չարագործ եւ ամէնէն վնասակար անասուններէն մին։» Վասն զի, ինչպէս որ ուրիշ տեղ ալ կը յայտնէ, եթէ մարդիկ էութեան այն ամէնէն վրատահելի առաջնորդը մէկ կողմ թողուն, իրենց կիրքերուն գերին կ'ըլլան, եւ երկու հասակներու պակասութեանց միանգամայն կ'ենթարկուին. այսինքն, մանկան տգիտութեան վրայ չափահաս մարդու մոլութիւնները կ'աւելցնեն։

Այնպիսին՝ որուն դաստիարակութիւնը լաւ սկզբնաւորութիւն մ'ըրած է դպրոցի մէջ, հուսկ յետոյ չկասեցներ զայն։

Իմաստուն դաստիարակութեան մը նպատակն է, Սողոմոնի խօսքերուն համեմատ, «Իմաստութիւնն եւ խրատը գիտնալ, հանճարին խօսքերն հասկնալ, իմաստութեան կրթութիւնն ընդունիլ, այսինքն արդարութիւնը, դատաստանն եւ ուղղութիւնը. միամիտներուն սրամտութիւն տալ, եւ երիտասարդներուն գիտութիւն եւ հանճար (1)։»

Մարդ մը, կ'ըսէ Թօրոյ, «իր ճամբէն կը շեղի արծաթ տոլար մը գետնէն առնելու համար, բայց ը՛ ... կարեւորութիւն չտար հնութեան իմաստուններուն ու կե...

---

(1) Գիրք Առակաց։

Digitized by Google

*զէն խօսքերուն, զորս ամէն դարուց իմաստունները հաստատած են։»*

*Գաղղիական տխուր առած մը կ'ըսէ. «Եթէ երիտասարդութիւնը գիտնա՛ր, եթէ ծերութիւնը կարենա՛ր։» Ընտիր դաստիարակութիւն մը երիտասարդութեան մէջ հմտութեամբ՝ և ծերութեան մէջ զօրութեամբ կ'օժտէ զմեզ։ «Փորձառութիւնը, կ'ըսէ Ֆրանգլին, սուղ դպրոց մ'է, բայց յիմարները հոն միայն բան կը սորվին։»*

*Ոչինչ այնքան կարևոր է կեանքի մէջ քան հաստատ քայլով սկսիլը։*

*Լաւ սկսեցէք, և ձեր յառաջդիմութիւնը հետզհետէ աւելի դիւրին և աւելի արագ պիտի ըլլայ։ Եթէ ընդհակառակը, գէշ սկզբնաւորութիւն մ'ընէք, հուսկ յետոյ զձեզ ուղղելու համար շատ դժուարութիւն պիտի կրէք։ Սորվիլը դժուար է, բայց սորվածը մոռնալն աւելի ևս դժուարին։*

*Ջանացէ՛ք ձեր մտքին մէջ զետեղել ինչ լաւագոյն բան որ կայ գրքերու, մարդերու, գաղափարներու և կրթական հաստատութիւններու մէջ։ Երբեք ամչնալու չենք թէ ուրիշներէ նուազ գիտուն ենք. բայց ամչնալու ենք թէ սորվիլը կարելի եղած բաները սորված չենք։*

*Դաստիարակութիւնը միմիայն լեզուներ և կարգ մը իրողութիւններ սորվելու մէջ չկայանար։ Կրթութենէ աւելի բարձր և բոլորովին տարբեր բան մ'է նա։ Կրթութիւնը գանձեր կը պատրաստէ մեզ ապագային համար, բայց դաստիարակութիւնը՝ սերմեր կը ցանէ որք կրնան ապա երեսնապատիկ, վաթսնապատիկ և հարիւրապատիկ արդիւնք տալ։*

*Գիտութիւնն ստորադաս նկատուած է իմաստութեան. բայց, ճշմարիտն ըսելով, պէտք եղածին չափ չեն ճանչցած անոր բարիքները։ Կ'ըսեն թէ, զոր օրինակ,*

Digitized by Google

*Գիտութիւնը կը հպարտանայ թէ շատ բան գիտէ.*
*Իմաստութիւնը կը խոնարհի թէ աւելի շատ բան չգիտեր* (1)։

*Բայց միշտ այդպէս չէ։ Երբեմն շատ բան սորված անձինքն են որ գիտեն թէ ո՛րքան քիչ է իրենց գիտցածը։*

*Նաև շատ իրաւամբ ըսուած չէ թէ հմտութիւնք «Անտաշ և անշահ զանգուած մ'են, պարզ շինուածանիւթեր, զորս իմաստութիւնը կը գործածէ շէնքը կառուցանելու համար։»*

*Շատ ողորմելի ճարտարապետ մ'եղած կ'ըլլար ան որ շատ հոգ չընէր իր շինուածանիւթերը լաւ ընտրելու։ Այսուհանդերձ, շատ անգամ ի սկզբան անարժէք երեւցող հմտութիւններ հուսկ ապա շատ թանկագին երեւցած են։*

*Գիտութիւնը կարողութիւն է։ «Ելեկտրականութեան վրայ մեր ունեցած հմտութիւնը ժամանակի խնայողութիւն մ'է. գրինը՝ խօսքի և շարժմանց խնայողութիւն մը. տնտեսական օրէնքներունն՝ հասութի խնայողութիւն մը. առողջապահական օրէնքներունն՝ առողջութեան և կեանքի խնայողութիւն մը. իմացականութեան օրէնքներունն՝ ուղեղային յոգնութեան խնայողութիւն մը։ Գալով Հոգւոյն օրէնքներուն հմտութեան, — ի՛նչ չեն խնայեր անոնք* (2)։»

*«Իսկ անձնական պահպանութեան համար, կ'ըսէ Հ. Սբէնսըր, կեանքի և առողջութեան դարմանին համար, ստանալու կարեւոր բանը՝ — Գիտութիւնն է։ Անուղղակի կերպով այդ մի և նոյն անձնական պահպանութեան համար, զոր ապրուստը շահիլ կ'անուանենք, ստանալու կարեւոր բանը՝ — Գիտութիւնն է։ Հայրական պարտաւորութեանց կատարման համար՝ պէտք եղած ճշմարիտ առաջնորդը՝ — Գիտութիւնն է։ Նոյնպէս իրենց բոլոր*

---

(1) Գուբըր։ (2) Քինկսլէյ։

Digitized by Google

ձեւերուն ներքեւ՝ Արուեստին արտադրութեանց և արուեստական վայելքներու համար, դարձեալ պէտք եղած նախապատրաստութիւնը՝ — Գիտութիւնն է։ Նաև իմացական, բարոյական և կրօնական կրթութեան համար, ամէնէն արդիւնաւոր ուսումնասիրութիւնը՝ — Գիտութիւնն է։»

Սթանլէյ աւագերէցին կարծիքն ալ մէջ պիտի բերեմ հոս. «Ճշմարտութեան անշահախնդիր սէրն, ո՛րքան հաղուագիւտ՝ և սակայն ո՛րքան օգտակար է։ Անոր օգուտները միշտ անմիջապէս չենք տեսներ. երբեմն քանի մը սերունդ անցնելէ յետոյ կը նշմարենք այն երջանկութեան ամբողջ ծաւալը զոր կը պարտինք գիտական գիւտերու, որոնց հետամուտ եղած են գիտութեան մարդիկ, ճշմարտութեան անշահախնդիր սէրը միայն իբր չարժառիթ ունենալով։

Ուրեմն Սողոմոն չատ իրաւունք ունի ըսելով.

«Իմաստունը Թող լսէ և իւր իմաստութիւնն աւելցնէ (1)։»

Քիչ հմտութիւններ կան բոլորովին անօգուտ. քիչ բաներ կան զորս գէթ անգամ մը տեսնելը չահաւոր չըլլայ։ Իրօք փոքր բան չկայ, այլ փոքր միտքեր կան։

«Գիտութիւնը Նահապետին երազին խորհրդաւոր սանդուխին կը նմանի։ Անոր ոտքն սկզբնական գետնին վրայ կեցած է, իսկ գագաթն հրեղէն երկնքին ստուերաւոր չքեղութեան մէջ կը կորսուի. մինչդեռ մեծ հեղինակներն, որք աւանդական դարերէ ի վեր գիտութեան և իմաստասիրութեան, բանաստեղծութեան և հմտութեան շղթան հիւսած են, այդ սանդուխէն ելնող և իջնող հրեշտակներն են, որք ճիշդ նոյնպէս, երկրի և երկնքի միջև հաղորդակցութիւնն հաստատուն կը պահեն(2)։»

---

(1) Գիրք Առակաց։ (2) Լորտ Պիգոնսֆիլտ։

Digitized by Google

Տխրալի է սակայն խորհիլը թէ երբեմն շատ մեծ գիւտերու հեղինակներն անծանօթ կը մնան. ցաւալի է այս, ոչ թէ իրենց համար, այլ որովհետեւ մենք զանոնք երախտագիտութեամբ յիշել կը բաղձայինք։ Վասն զի հազուադէպ է որ մեծ հնարիչներ պարզապէս շահադիտական նպատակաւ կամ փառք ստանալու բաղձանքով աշխատած ըլլան։

Աշխատութեան ժամանակ անընդհատ ուշադրութիւն և հաստատուն ջանասիրութիւն անհրաժեշտ կարեւոր են, ամէն անձի համար որ կ'ուզէ կեանքը լիովին վայելել։ Եթէ ձեր ուշադրութեան կէսը միայն նուիրէք ձեր գործին, կրկնապատիկ ժամանակի կորուստ պիտի ունենաք։

Ցաւալի է խորհիլը թէ իմացական վայելքներն յոյժ քիչ բան աւելցուցած են մինչեւ ցարդ մարդուն երջանկութեան վրայ. սակայն և այնպէս, դպրոց (σχολή) բառին նախնական նշանակութիւնն է հանգիստ կամ զբօսանք։

Շատ կարեւոր է, կ'ըսէ Ց. Մորլէյ, «թէ՛ երջանիկ ըլլալու և թէ մեր պարտաւորութիւնը կատարելու համար, սովորիլ իմաստուն խորհրդածութիւններով և վայելուչ զգացումներով ապրելու։»

Դրական իմաստասէրներու հանգանակին մէջ շատ բան կայ որ չեմ կրնար ընդունիլ։ Այլ. սակայն անոնք ազնիւ նշանաբան մ'ունին. — «Սէրն իբր սկզբունք, կարգապահութիւնն իբր հիմ, և յառաջադիմութիւնն իբր նպատակ։»

«Շատ անմեղ մարդիկ կան, կ'ըսէ Էմէրսըն, որ զԱստուած կը պաշտեն ըստ իրենց հայրերուն աւանդութեան, բայց որոնց պարտաւորութեան զգացումն երբեք իրենց բոլոր կարողութիւնները մշակելու չափ յառաջ գացած չէ։»

Մարդ զամէն բան իւր վրայ կը չափէ։ Լեռներու բարձրութիւնն և Ովկիանոսի խորութիւնն ոտքով կը չափէ։

Digitized by Google

Մեր թուաբանական դրութիւնը մեր մատներուն թուին վրայ հիմնուած է։ Այսուհանդերձ, ինչ խեղճ արարած է մարդը։ Շա՜տ խեղճ արարած, և սակայն ո՜րքան մեծ չէ կարող ըլլալ։ Ի՞նչ է մարդ. և ի՞նչ չէ մարդ։

Բասգալ կ'ըսէ, մարդն է "Res cogitans, id est dubitans, affirmans, negans, pauca intelligens, multa ignorans, volens, nolens, imaginans, etiam et sentiens (1)."

Եւ ուրիշ տեղ մը. «Մարդն ոչ այլ ինչ է բայց եղէգ մը միայն, բնութեան մէջ թէև ամէնէն տկար տեսակէն բայց խորհող եղէգ մը։ Հարկ չկայ որ ամբողջ տիեզերք զինուի զայն ջախջախելու համար։ Շոգի մը, ջրի կաթիլ մը բաւական է զայն սպաննելու։ Բայց երբ տիեզերք զայն ջախջախէր, մարդն աւելի եւս վսեմ պիտի ըլլար քան ինչ որ կ'սպաննէ զինքը, վասն զի ինք գիտէ թէ կը մեռնի. մինչդեռ տիեզերք իւր գերակշիռ կարողութեան վրայ գաղափար չունի։»

Մարդը կատարեալ ընելու համար պէտք եղած յատկութիւններն որո՞նք են։ Հանդարտ միտք մը, գորովալից սիրտ մը, հաստատուն դատողութիւն մը և առողջ մարմին մը։ Առանց մտքի հանդարտութեան՝ իրերը գէշ կը մեկնենք. առանց գորովի՝ անձնասէր ըլլալու վտանգին կ'ենթարկուինք, առանց առողջութեան՝ քիչ բան ընելու կարող կ'ըլլանք, և նոյն իսկ լաւագոյն դիտաւորութիւններն, առանց ուղիղ դատողութեան՝ շատ աւելի չարիք կը գործեն քան թէ բարիք։

Եթէ բարեկամ մը գովել ուզենք, կ'ըսենք թէ նա կատարեալ ազնուական մ'է։ «Ի՞նչ է ազնուական անձ մը, կ'ըսէ Թէգըրէյ. — Պատուաւոր, քաղցրաբարոյ,

---

(1) Իր մը խորհող, այսինքն տարակուսող, հաստատող, ժխտող, քիչ բան հասկցող, շատ բան անգիտող, ուզող, չուզող, նաև երևակայող և զգացող։»

Digitized by Google

քաջասիրտ և խոհեմ մարդ մ'է, և որն որ իւր բոլոր այս բարեմասնութիւններն արտաքին յոյժ շնորհալի կերպով ի յայտ կը բերէ ։ Եւ կը յարէ, «ազնուական անձ մը, կարծուածէն շատ աւելի հազուագիւտ է ։»

«Այն մարդը, կ'ըսէ Ֆարրար կիսասարկաւագ, կրնայ համնիլ մարդկային կեանքի մէջ կարելի եղած կատարելութեան, որուն մարմինը քաջառողջ մնացած է ժուժկալութեամբ, զգաստութեամբ և պարկեշտութեամբ. որուն միտքը ճոխ մթերանոց մ'է թէ փորձառութեամբ և թէ՛ մեծ մարդոց ընտիր խորհրդածութիւններով ստացուած իմաստութեան. որուն երեւակայութիւնը թանգարան մ'է ամէն մաքուր և գեղեցիկ բաներու. որուն խիղճն հաշտ է իրեն հետ, Աստուծոյ հետ և բոլոր աշխարհի հետ, և որուն հոգւոյն մէջ Աստուածային Հոգին զարդարուն տաճար մը կը գտնէ բնակելու համար ։»

Ինքզինք դաստիարակելու ապահով միջոցն է, կ'ըսէ Ճօն Ստուարդ Միլ, «զամէն բան ուշադրութեամբ քըննել, ոչ մէկ դժուարութեան առջեւ չընկրկիլ, առանց անաչառ քննութեան և ժխտողական քննադատութեան չընդունիլ որ և իցէ վարդապետութիւն, ինչ հեղինակութենէ յայտնուած որ ըլլայ, այնպէս որ ոչ մէկ իմաստակութիւն, ոչ մէկ անկապակցութիւն և ոչ մէկ կարծիքի մոլորութիւն չկարենայ առանց նշմարուելու անցնիլ, և մանաւանդ, պահանջել որ ամէն գործածուած բառի նշանակութիւնն որոշ ըլլայ, և իւրաքանչիւր նախադասութեան իմաստը բացայայտ ըլլայ, ընդունելէ առաջ ։ Ահաւասիկ ասոնք են այն հիմնական դասերը զորս պէտք է սորվիլ ։» Եւ ամէն մարդ կարող է զանոնք սորվելու ։

Ամէն տեսակ դաստիարակութեան նախնական տարրերը մերձենալի են ամէնուն համար. ո՛չ աստիճանն և ո՛չ հարստութիւնը շատ մեծ առաւելութիւններ չեն ընծայեր ։ Սըր Ո. Ճօնս կ'ըսէ թէ գեղացւոյ մը նիւթա-

Digitized by Google

կամ կարողութեամբ յաջողած է իշխանավայել դաստիարակութիւն ստանալ։ Հին խօսք մը կայ որ կ՚ըսէ թէ, գիտութեան տանող արքունի ճամբայ չկայ։ Կրնայ ըսուիլ թէ՝ հոն առաջնորդող ամէն ճամբաները արքունի են։ Եւ ի՛նչ վարձատրութիւն չենք կրնար ընդունիլ անոնց հետեւելով։ Դաստիարակութիւնը կը լուսաբանէ մեզ համար աշխարհի անցեալ պատմութիւնն և կը ցուցընէ մեզ թէ ամէն բան դէպ ի լուսաւորութիւն և ի յառաջադիմութիւն կ՚ընթանայ. կարող կ՚ընէ զմեզ ընդհանուր գրականութիւնը վայելելու. Բնութեան գիրքը կը բանայ մեր առջեւ և ամէն կողմ շահու աղբիւրներ կ՚ստեղծէ մեզ։

Եւ եթէ չենք կրնար յուսալ որ օր մը մեզ համար ըսեն.

«Մարդ մ՚էր նա, որուն նմանն ամենեւին պիտի չտեսնենք(1)։»

Կրնանք գոնէ այնպէս ըլլալ որ ըսեն.

«Իր կեանքին մէջ յարատեւ գեղեցկութիւն մը կար,»

որովհետեւ ամէնքս ալ անմահական բաղձանքներ ունինք մեր մէջ։

Եթէ դաստիարակութիւնը միշտ լաւ արդիւնք չտար, յանցանքը շատ անգամ ո՛չ թէ նոյն իսկ դաստիարակութեանն՝ այլ այն սկզբունքինն է որով անոր կը մերձենան։ «Վասնզի, մարդիկ սովորած են գիտութեան բաղձալու, և զայն ստացած են երբեմն բնական հետաքրքրութեամբ և խաղարկութեան ախորժակով, երբեմն նիւթերու հեշտալի պէսպիսութեամբ մը մտքերնին զբօսցընելու համար. և երբեմն ալ մտքերնին զարդարելու և իրենց հմտութիւններուն շնորհիւ փառք ստանալու հա-

(1) Շէյգսփիր։

Digitized by Google

մար, բայց յոյժ քիչ անգամ իրենց բաժին ինկած այդիմաստութիւնը պարզապէս մարդկութեան պէտքերուն և օգտին համար ի գործ դնելու դիտաւորութեամբ: Իբր թէ հարկադրուած ըլլային գիտութեան մէջ անկողին մը փնտռելու, խուզարկու և անհանգիստ միտքն հոն հանգչեցնելու համար. կամ պատշգամ մը՝ ուր թափառական և անհաստատ հոգին կարենայ գեղեցիկ տեսարաններու առջեւ ժուռ գալ. կամ սիգապանծ աշտարակ մը՝ ուր ամբարտաւան հոգին կարենայ հաստատուիլ. կամ ամրոց մը, կամ ըմբշամարտի և կռուի սահմանուած ասպարէզ մը, և կամ խանութ մը՝ հոն շահաւոր առեւտուր մ'ընելու համար, և ո՛չ թէ ճոխ մթերանոց մը՝ Արարչին փառաւորման և մարդոց վշտաց թեթեւացման համար հաստատուած (1):

# ԳԼՈՒԽ Ը.

# ԳՐԱՏՈՒՆՆԵՐ

Մեծ անգղիացի մը, Ռիչարտ տը Պիւրի, Տիւրհամի եպիսկոպոս, հինգ հարիւր տարիէ աւելի առաջ, գրքերը գովելու առթիւ, իրաւամբ ըսած է. «Ահաւասիկ վարպետներ որոնք բան կը սորվեցնեն մեզ, առանց գաւազանի կամ խարազանի, առանց յանդիմանութեան կամ բարկութեան, և առանց պարգեւ կամ դրամ պահանջելու: Եթէ անոնց մօտենաք, չեն քնանար. եթէ խուզարկելով՝ հարցումներ ընէք անոնց, բան չեն ծածկեր ձեզ-

(1) Պազօն:

մէ․ եթէ զանոնք ուրանաք, երբեք չեն տրտնջեր, և եթէ ողջէտ էք, չեն կրնար զձեզ ծաղրել։»

Եթէ նա ասկէ այնչափ առաջ կրնար այսպէս խօսիլ, մենք այսօր ևս աւելի կրնանք նոյն բանն ըսել։ Վասն զի, մէկ կողմ թողլով տպագրութեան առաւելութիւնը, գիրքերն այժմ չափազանց աժան են, և ամէնուն համար դիւրամատչելի․ գործածելի և թեթև են․ մինչդեռ ատենօք մեծահատոր, ծանր և բռնուելու և կարդացուելու անյարմար էին։ Մեր ամէնէն խրթին գիրքերուն ընթերցումն աւելի ևս դիւրին է հիներուն հետ բաղդատելով։ Դեռ աւելի կարևորն այն է որ, մենք Տը Պիւրիի ճանչցած գիրքերէն զատ, շատ ուրիշ գիրքեր ալ ունինք։ Նոյն իսկ հին մատենագրութենէն, շատ կորսուած աշխատասիրութիւններ վերստին գտնուած են։ Կրնայ ըսուիլ թէ վիպասանական ճիւղը գրեթէ բոլորովին անծանօթ էր այն ժամանակ։ Բանաստեղծութեան մասին, ինք Շէյգսբիրէ և Միլթընէ, Սգօթէ և Պայրընէ առաջ ապրած է, առանց աւելի հին բանաստեղծներն յիշելու։ Իսկ գիտութեան գալով, տարրաբանութիւնն և երկրաբանութիւնն իր մահուընէն յետոյ գտնուած են, և դեռ բազմաթիւ գիւտեր միւս բոլոր գիտութեանց, զոր օրինակ, բնական պատմութեան, աստեղագիտութեան, աշխարհագրութեան, ևլն. օգուտն աւելցուցած են։

Տօբընհաուըր ըսած է որ, եթէ գիտութիւնը շահաբեր չէ եղած իրեն, գոնէ շատ ծախքերէ ազատած է զինքը։ Դպրոցներ, գրատուններ և թանգարաններ հաստատելու համար գործածուած դրամն յաւէտ շահագործուած կը համարուի քան թէ պարզապէս ծախսուած։ Ս ուհանդերձ, դպրոցներն և գրատունները կը պաշտպ ննք՝ ոչ թէ որովհետև խնայողութիւն մը կը համ ուին, այլ որովհետև մեր լուսաւորութեան և զուարճ թեան կ՚օգնեն։

Digitized by Google

Յաճախ ծաղրած են զիս, շատ բարեմտութեամբ սակայն, կարծիք յայտնելուս համար թէ յաջորդ սերունդի մէջ ամէնէն մեծ ընթերցողները պիտի ըլլան մեր արուեստաւորներն և գործաւորները։

Բայց միթէ հանրային գրատուններուն որ քան զօր աւելնալն իմ կարծիքս չհաստատեր։ Գիրքերն անհրաժեշտ կարեւոր են մեծ քաղաքաց աշխատաւորներուն համար։ Անոնց կեանքը չափազանց միօրինակ է։ Վայրենիին ապրելու եղանակը շատ աւելի փոփոխ է, պէտք է որ նա ճանչնայ և շատ մօտէն դիտէ իւր որսալու կենդանիներուն բնաւորութիւնները, անոնց տեղափոխութիւնն և յաճախած տեղերը. պէտք է որ նա գիտնայ թէ ո՛ւր՝ և ո՛ր ժամանակներ կրնայ ձուկ որսալ. իւրաքանչիւր ամիս նոր զբաղմունք մը կուտայ՝ և սնունդի փոփոխութիւն մը կը բերէ իրեն։ Պէտք է որ ինքն իւր գործիքները շինէ և իւր տունը կառուցանէ. կրակ մը վառելն՝ որ այնքան դիւրին բան է այսօր, իրեն համար շատ փափուկ և շատ դժուարին խնդիր մ'է։ Նոյնպէս նաև գիւղացին զանազան զբաղմունք ունի։ Կը հերկէ և կը ցանէ, կը հնձէ և կը քաղէ։ Իւր կովերով, խոզերով և ոչխարներով կ'զբաղի։ Արօր մը վարելը, ցանկապատ մը շինելը, կամ որայ մը կապելը մեր երեւակայածին չափ դիւրին բաներ չեն։ Կը պատմեն թէ օր մը օտարական մը Վորտսվորդի աշխատութեան խուցը տեսնել ուզած ըլլալով, իւր սպասուհին ըսաւ. «Ահաւասիկ տիրոջս պառկելու խուցը, իսկ իւր աշխատութեան տեղը դաշտերն են։» Գիւղացին շատ բան կը սորվի դաշտերու մէջ։ Նա մեր կարծածէն շատ աւելի բան գիտէ, թէև դաշտային գիտութիւն է այն։ Այսուհանդերձ գիրքերու գիտութենէն շատ վար չմնար։

Բայց խանութի մը կամ գործարանի մը մէջ աշխատողն աւելի եւս միօրինակ կեանք մ'ունի։ Նա տարւոյ

*սկիզբէն մինչեւ վերջը, միեւնոյն տեսակ գործի՝ և երբեմն ալ գործի մը միեւնոյն մասին վրայ աշխատելու դատապարտուած է։ Արդարեւ երբեմն ձեռքի գրեթէ հրաշալի ճարտարութիւն մը կ'ստանայ, բայց այն ալ շատ սահմանափակ է։ Եթէ նա չուզեր վերջապէս պարզ կենդանի մեքենայ մը դառնալ, պէտք է նաեւ տեսակ մը զուարճութիւն և տեսակ մը ժամանց փնտռէ գիրքերով, իւր հանգստեան ժամերուն մէջ։ Բայց պէտք չէ երբեք որ այդ հանդստեան ժամերը ծուլութեան ժամեր ըլլան։ Հանգիստն ամենամեծ բարիքներու կարգէն է. իսկ ծուլութիւնն ամենամեծ անէծքներէն մին. առաջինն աղբիւր մ'է երջանկութեան, իսկ երկրորդը՝ դժբախտութեան։*

*Այն պատճառներն որ ունինք մեր տղաքը կրթելու համար, կը պատկանին նաեւ՝ չափահասներու։ Այսօր ամէն տեղ նախակրթարաններ ունինք։ Կարելի եղածին չափ կը ջանանք մեր տղաքը կրթել։ Կարդալ և կարդալը սիրել կը սորվեցնենք իրենց։ Ինչո՞ւ համար. վասն զի համոզուած ենք թէ ուսումնասիրութիւնն օգտակար է առհասարակ ամէնուն համար, թէ ամէն մարդ կարդալու շնորհիւ կրնայ լաւագոյն գործաւոր մը՝ և ամէն գործաւոր լաւագոյն մարդ մ'ըլլալ։*

*Պէտք չէ երբեք ուսանելէ դադրիլ, ուստի գրատուններր չափահասներու դպրոցները կը համարուին։ Կը պատմուի թէ Անգղիոյ Ալֆրէտ թագաւորը մանկութեան ատեն շատ կը բաղձար գիրք մ'ունենալ, «Պիտի ունենայ, ըսաւ իւր մայրն, երբ որ կարող ըլլայ կարդալ։» Եւ Ալֆրէտ այդ պայմանաւ գիրքն ստացաւ։ Մեր տղաք կարդալ սորված են, մի՞թէ իրենք ալ իրաւունք չունի՞ն գիրքեր նուէր ընդունելու։ Ասկէ զատ, գիրքեր չեն յակսիր, և ամէնէն լաւ գիրքերն ամէնէն աւելի աժան ն։ Ընթերցումն այնպիսի հաճոյք մ'է որ հարստութենէ*



Digitized by Google

կախում չունի, գրեթէ միակ հաճոյքն է այն որուն համար կրնայ այսպէս ըսուիլ։ Մենք որ գործերու տագնապին մէջն ենք, շատ անգամ մեր ունեցածով բնաւ չյագենալու երեւոյթն ունինք։ Մինչդեռ գիրքերն այնքան շատ են որ կարդալու չենք կրնար հասնիլ։

Տակաւին նոր կ՚սկսինք հասկնալ թէ պէտք է որ դաստիարակութիւնը մեր կեանքին ամբողջ տեւողութեամբը շարունակէ. թէ մեր տղաք պարտին քերականութենէ և բառերէ տարբեր բան սորվիլ, և թէ անոնց աչքն ու ձեռքն ալ վարժութեան կը կարօտին։ Միւս կողմանէ, չափահասներու կեանքը պէտք չէր որ միմիայն ձեռնական աշխատութեանց և ոչ ալ հարստութեան հետամուտ ըլլալու նուիրուէր, այլ պէտք էր որ անոնք կարենային իրենց ժամանակին մէկ մասն ալ իմացական հմտութիւններ ստանալու և իրենց միտքը զարգացնելու նուիրել։ Պէտք էր որ իւրաքանչիւր ոք կարենար մարդկային հմտութեանց ամբողջութեան վրայ իւր կողմանէ ալ բան մ՚աւելցնել. և ո՛րքան ալ համեստ ըլլայ մէկու մը վիճակը, կրնայ ադոր կարող ըլլալու յուսալ։ Ձեռնական աշխատութեանց արժանիքը դեռ չենք կրնար գնահատել. և միւս կողմանէ կ՚երեւայ որ շատ միամտաբար կը կարծենք թէ գիտութիւնն անմատչելի բան մ՚է, միայն իմաստասիրաց և հանճարեղ մարդոց յատուկ, և կամ այնպիսեաց՝ որք կարողութիւն ունին յատուկ գործիքներ գնելու։ Բայց այս կարծիքը սխալ է։ Ուաթ մեքենագործ էր. Հընդսմէն որ ձուլուած պողպատն հնարեց՝ ժամագործ էր. Գրօմբթըն՝ ոստայնանկ. Ուէճվուտ՝ բրուտ. Պրինտլի, Թէլֆօրտ, Միւշէդ և Նէյլսըն՝ հասարակ գործաւորներ էին. Սթիֆէնսըն՝ կովարած էր և տասն և ութ տարեկան հասակին մէջ կարդալ սորվեցաւ. Տալթօն՝ ոստայնանկի որդի էր. Ֆարատէյ և Նիւգօմըն երկաթագործի որդի էին. Արդվրայդ սափրիչ էր. Սըր

Digitized by Google

Հըմֆրի Տէյվի դեղարանի մը մէջ սպասաւոր էր· և Ուաթ ատաղձագործի որդի։ Աշխարհ շատ բան կը պարտի այս մարդոց և ատոնց նմաններուն, որք յոյժ բազմաթիւ են։

Շատ անգամ քաղաքակրթեալ ազգերու խօսքը կ'ըլլայ· և տարակոյս չկայ թէ ժողովուրդներ կան որ միւսներէն աւելի արժանի են այդպէս կոչուելու։ Պէտք է որ ջանանք մեզի համար ճշմարիտ քաղաքակրթութիւն մը յօրինել, և աղոր յաջողելու համար գրատունները մեզի շատ օգտակար կրնան ըլլալ։

Շատեր կան որք կարծեն թէ ի ծնէ ցկեանս աշխատելու դատապարտուած են։ Բայց այդ պատճառաւ անոնց կեանքը դժբախտ և սին ըլլալ չպարտաւորիր։ Եւ մանաւանդ թէ քիչ զուարճութիւն ունենալնուն և իրենց կեանքը միօրինակ ըլլալուն պատճառաւ, հարկ է որ այդպիսիք լաւ գիրքեր ունենան իրենց ձեռքին տակ։

Մեծ գիտուններէն մին, Սըր Ճօն Հէրշէլ, ըսած է· «Եթէ ներելի ըլլար ինձ ընտրել այնպիսի ճաշակ մը որ կեանքիս բոլոր դէպքերուն մէջ ինձ օգնէր, որ ինձ համար երջանկութեան և ուրախութեան մշտնջենաւոր աղբիւր մ'ըլլար, և պաշտպան մը՝ կեանքի բոլոր ցաւոց և վշտաց և մարդոց թշնամութեան դէմ, ընթերցման ճաշակը կ'ընտրէի։ Թէ՛ այդ ճաշակն և թէ՛ զայն յագեցնելու միջոցը տուէ՛ք մարդու մը, և նա ապահովապէս երջանիկ կ'ըլլայ· բաւական է որ գէշ ընտրուած գիրքեր չտաք իրեն։ Վասն զի, լաւ գիրքերու միջոցաւ, ամէն ժամանակաց ընտրելագոյն ընկերութեանց մէջ մտցուցած կ'ըլլաք զինքը· մարդկային ազգը զարդարող ամէնէն իմաստուն, ամէնէն հանճարեղ, ամէնէն մարդասէր, ամէնէն արիասիրտ և ամէնէն անարատ նկարագրաց քով դրած կ'ըլլաք զինքը։ Մարդկային ամէն ազգերու հպատակ՝ և ամէն դարերու ժամանակակից ըրած կ'ըլլաք զինքն։ Աշխարհք իրեն համար ստեղծուած կ'ըլլայ։»

Digitized by Google

*Գիրքերը կենդանի իրեր են։*

*«Գիրքերը, կ'ըսէ Միլդըն, կենդանի սերունդ մը կը պարունակեն իրենց մէջ, որ ոչ նուազ գործօն է քան այն հոգին որոյ սերունդն են իրենք։» Մեծ մատենագիրները չեն մեռնիր։*

*Չէ մեռած այն որոյ վսեմ հոգին*
*Իրեն հետ կը բարձրացնէ քու հոգիդ։*
*Սրտերու մէջ յաւիտենապէս ապրիլը*
*Մահ չհամարուիր։*

*Ուրպինօ քաղաքին մեծ գրատան հիմնադիր Ուրպինօյի դուքսն, հրամայած էր որ իւրաքանչիւր գիրք ծիրանեգոյն կերպասով կազմուած և արծաթազարդ ըլլայ։ Վեմպ կ'ըսէր թէ աւելի արդար է փառք տալ նոր գիրք մը բանալէ առաջ, քան թէ ճաշելէ առաջ։*

---

## ԳԼՈՒԽ Թ.

# ԸՆԹԵՐՑՈՒՄ

*Գիրքերը միևնոյն բանն են Մարդկութեան համար ինչ որ Յիշողութիւնն է Անհատին համար։ Անոնք կը պարունակեն մարդկային ազգին պատմութիւնն, անոր գիւտերը, դարերու դէզադէզ իմաստութիւնն և փորձառութիւնն. անոնք բնութեան հրաշալեաց և գեղեցկութեանց հայելին են. մեր դժբախտութեանց մէջ մեզի կ'օգնեն, մեր տրտմութեանց և վշտաց մէջ զմեզ կը մխիթարեն. մեր ձանձրութեան ժամերն հաճոյքի ժամերու կը փոխեն, մեր միտքը գաղափարներով, հանճարեղ*

Digitized by Google

և օգտակար խորհրդածութիւններով կը լեցնեն , և զմեզ մեր անձէն վեր և մեր խեղճութենէն դուրս կը հանեն ։

Երբեմն երեւակայութիւնն աւելի կենդանի է քան թէ իրականութիւնն ։ Ինչ որ ալ ըլլայ , ընթերցումը թող կուտայ մեզ , եթէ ուզենք , ճշմարիտ մեծատուններ ըլլալ և փառաւոր ապարանքներու մէջ բնակիլ , և որ լաւագոյն եւս է , զմեզ լեռներու և ծովերու առջև՝ և աշխարհիս ամէնէն գեղեցիկ մասերուն մէջ կը փոխադրէ . առանց յոգնութեան , առանց ձանձրութեան և առանց ծախքի ։

«Տուէ՛ք ինձ ,» կ՚ըսէ Ֆրէզըր , —

«Իմ յօժարութեանս համեմատ զբօսնելու արտօնութիւն,
Այն տեղն որ իմ գիրքերս՝ այն լաւագոյն ընկերները կը պարունակէ,
Ապարանք մ՚է ինձ համար, ուր ամէն առեն կրնամ
Հին իմաստնոց և փիլիսոփայից հետ տեսակցիլ։
Միթէ կարելի՞ է ինձ այսքան ստոյգ հաճոյքներէ հրաժարիլ,
Անստոյգ ունայնութիւններ ձեռք բերելու համար։
Ո՛չ երբեք։ Թող ձեր միակ հոգն ըլլայ հարստութիւն դիզել,
Իմ հոգս պիտի ըլլայ գիտութիւնս աւելցնել։»

Շատ անգամ գիրքերը բարեկամներու հետ կը բաղդատուին ։ Բայց , մինչդեռ անողորմ մահը մեր ընկերակցաց ամէնէն լաւերն և ամէնէն օժտեալներն ըստ իւր քմաց մեզմէ կը բաժնէ , ընդհակառակն ժամանակը գէշ գիրքերը կ՚անհետացնէ , իսկ լաւերն աւելի եւս կը մաքրէ ։

Նոյն իսկ բախտին ամէն շնորհքները վայելած շատ մարդիկ խոստովանած են թէ իրենց ամէնէն մեծ երջանկութիւնն ընթերցման մէջ գտած են ։

Մագոլէյ հարստութիւն , համբաւ , դիրք և ազդեցութիւն ունէր , և սակայն իւր կենսագրութեան մէջ կ՚ըսէ թէ իր կեանքին ամէնէն երջանիկ ժամերն իւր գիրքերուն կը պարտէր ։

Փոքրիկ աղջկան մը գրած իւր սքանչելի մէկ նա-

Digitized by Google

մակին մէջ կ'ըսէ. «Շնորհակալ եմ քու շատ սիրուն նամակիդ համար։ Միշտ ուրախ եմ իմ փոքրիկ աղջիկս երջանիկ ընել կարենալուս համար, և բան մ'աւելի հաճոյք չպատճառեր ինծի քան տեսնելը թէ նա գիրքերը կը սիրէ։ Վասն զի, երբ որ նա իմ տարիքս ունենայ, պիտի տեսնէ թէ անոնք լաւագոյն են քան բոլոր կարկանդակներն և շաքարեղէնները, բոլոր խաղալիքները, թատերախաղերն և աշխարհիս բոլոր զուարճութիւնները։»

Եթէ գիրք մը չշահաքրքրեր զմեզ, յանցանքը միշտ գրքինը չէ։ Կարդալու մէջ արուեստ մը կայ։ Անցողակի կերպով կարդալն օգուտ մը չկրնար ունենալ։ Ամէն մարդ կը կարծէ թէ կարդալ և գրել գիտէ. մինչդեռ ճիշդն ըսելով, քիչ մարդիկ գիտեն գրել կամ նոյն իսկ կարդալ օգտակարապէս։ Բաւական չէ մեր աչքերն անմտադրութեամբ կամ մեքենաբար տողերու վրայէն սահեցնել և միակերպ թերթերը դարձնել, պէտք է որ ջանանք հոն նկարագրուած տեսարաններն և յիշուած անձինքն իրականացնել, և զանոնք «Երևակայութեան թանգարանին» մէջ պատկերացնել։

«Ընթերցասիրութիւնը, կ'ըսէ Աչամ, աւելի բան կը սորվեցնէ մեզ մէկ տարուան մէջ, քան թէ փորձառութիւնը քսան տարուան մէջ. նա առանց վտանգի կը սորվեցնէ մեզ, մինչդեռ փորձառութիւնն աւելի թշուառութիւն կը բերէ քան թէ հմտութիւն։ Շատ դժբախտ նաւապետ մ'է այն որ միմիայն նաւաբեկութիւններ տեսնելուն շնորհիւ վարպետ եղած է. շատ ողորմելի վաճառական մ'է այնպիսին որ միմիայն սնանկութեանց շնորհիւ հարստացած կամ առևտրական փորձառութիւն ստացած է։ Փորձառութեամբ ստացուած հմտութիւնը շատ սուղ կ'ըլլայ։»

Գիրքերու ընտրութիւնը, մեր բարեկամներուն ընտրութեան պէս, կարևոր պարտաւորութիւն մ'է։ Որքան

Digitized by Google

որ պատասխանատու ենք մեր ըրածին՝ նոյնքան ալ պատասխանատու ենք մեր կարդացածին համար։ Լաւ գիրք մը, Միլդընի պատուական խօսքերն յիշելով, «վարպետ մտքի մը թանկագին և կենսական արիւնն է, յատկապէս զմռսուած և պահպանուած, այնպիսի կեանքի մը համար որ իւր կեանքէն աւելի տեւական է։»

Գիրքերէն, չեմ ըսեր միայն կարելի եղածին չափ շատ օգուտ՝ բայց նոյն իսկ կարելի եղածին չափ աւելի զուարճութիւն եթէ կ'ուզենք քաղել, պէտք է որ յաւէտ մեր միտքը կրթելու համար կարդանք զանոնք քան թէ զբօսեցնելու համար։ Դիւրիմաց և զուարճալի գիրքերն իրենց օգուտն ունին, ճիշդ ինչպէս որ շաքարը մեր սնունդին կարեւոր մէկ մասն է, բայց չենք կրնար միմիայն անով ապրիլ։ Սքանչելի վիպասանութիւններ կան, բայց անոնց չափազանց հետամուտ ըլլալն ընթերցման պատճառած հաճոյքը շատ կը նուազեցնէ։

Գիրքեր կան որ բոլորովին անօգուտ են, զանոնք կարդալը ժամանակի կորուստ կը համարուի։ Այնպիսի գէշ գիրքեր ալ կան զորս առանց ապականուելու չենք կրնար կարդալ։ Արդարև պարագաներ կան ուր կեանքի վտանգներուն և փորձութիւններուն տեղեակ ըլլալը լաւ է, բայց այն ամէն բան որ զմեզ չարին կը ծանօթացնէ ինքնին չարիք մ'է։

Բարեբախտաբար բազմաթիւ գիրքեր կան զորս կարդացողը միշտ ինքզինք լաւագոյն կ'զգայ։ Ամէնէն ընտիր գիրքերն զմեզ մինչև անշահասէր խորհրդածութեան սահմանները կը բարձրացնեն, ուր ամէն անձնական նկատում իւր նշանակութիւնը կը կորսնցնէ, և ուր աշխարհիս բոլոր հոգերն ու տագնապները կը մոռցուին։

Այսպիսի գիրք մը կարդալու առեն ընդհատուելէ աւելի վշտալի բան չկայ։ Համէրթըն սրտաշարժ կերպով աղկէ կը գանգատի։ «Համարինք թէ մէկը կատարեալ

մտադրութեամբ զբաղած է Ժ և Է մատենագիր մը կարդալու, որն որ թերեւս ուրիշ դարու մը և տարբեր քաղաքակրթութեան մը կը պատկանի։ Զոր օրինակ, համարինք թէ դուք Պղատոնի մէջ Սոկրատի ջատագովութիւնը կարդալու զբաղած էք, և թէ ամբողջ այդ տեսարանն իբր թէ պատկերի մը մէջ՝ ձեր աչքին առջև կը ներկայանայ։ Կը տեսնէք Հինգ հարիւրներու ծերակոյտը, դուտ Յունական ճարտարապետութիւնն, Աթենացի հետաքրքիր ժողովուրդն, ատելի Մելիտոսը, նախանձոտ թշնամիները, սիրեցեալ բարեկամները տխրամած՝ որոնց անունները սիրելի և անմահ են մեզ համար. ասոնց մէջտեղ մարդ մը, աղքատի կերպարանքով, կոշտ բրդեղէն զգեստ մը հագած, զոր ամառ և ձմեռ կը կրէ. դէմքն հասարակ և դրեթէ տգեղ, բայց արիութեան և համարձակութեան այնպիսի փայլով մը պայծառացած՝ զոր և ոչ մէկ դերասան կարող է նմանցնել։ Կը լսէք այն հաստատ ձայնն որ կ'ըսէ, —

«Τιμᾶται δ'οὖν ἀνὴρ θανάτου· Εἶεν (1).»

Եթէ կարենաք մինչև վերջն Ժ և Է ընդհատումէ գերծ մնալ, այն ազնիւ հաճոյքի վայրկեաններէն մին կը վայելէք, որոնք մտաւորական աշխատութեան վարձատրութիւնն են։»

Կարելի չէ շահեկան և լաւ գիրք մը ժամ մը կարդալ առանց ինքզինք աւելի երջանիկ և աւելի լաւ զգալու։ Եւ այս հաճոյքն ոչ թէ առժամանակեայ՝ այլ տեւական է. պերճ և նպաստաւոր խորհրդածութիւններու գանձ մը կը պարգեւէ մեզ, ուրմէ երբ որ ուզենք կըրնանք օգուտ քաղել։



(1) «Վերջապէս մարդը մահուան դատապարտուած է. Թող ըլլայ։»

Digitized by Google

# ԳԼՈՒԽ Ժ.

## ԸՆԿԵՐԱՅԻՆ ԿԵԱՆՔ

Պէտք է որ մեր տունը մեր բոլոր մտածութեանց կեդրոնն ըլլայ։ Եւ կրնանք աղօր յաջողիլ, սիրոյ, համակրութեան և վստահութեան միջոցաւ։ Մեր մանկութեան յիշատակները, մեր ծնողաց գորովանքը, մեր երախտապարտութեան յոյսերն, համակրութեան և սքանչացման այն բոլոր կապերն որք զմեզ մեր եղբայրներուն և քոյրերուն կը միացնեն, այն դոյզն ծառայութիւններն որ իրենց կը մատուցանենք, մեր յոյսերը, մեր ընդհանրական չահերն, երջանկութիւններն ու վիշտերն, ահաւասիկ ինչ որ մեր տան զօրութիւնն և զօրութիւնը կը կազմէ։

Տուն մը ուր սէր չկայ, երբեք տուն ըսուելու արժանի չէ. վասն զի տունը սիրով միայն կրնայ գոյութիւն ունենալ։ «Սիրազուրկ տուն մը այնքան միայն կրնայ տուն համարուիլ, որքան որ հոգեզուրկ մարմին մը կրնայ մարդ համարուիլ։»

«Ուրախ սիրտը մշտնջենաւոր կոչունքի մէջ է։ Աւելի աղէկ է քիչ բանն Ցաւիտենականին վախով, քան թէ մեծ գանձը՝ խռովութիւնով։ Աւելի աղէկ է սէր եղած տեղը խոտեղէն կերակուրը, քան թէ գէր զուարակն՝ ատելութիւնով։»

«Աւելի աղէկ է պատառ մը չոր հաց խաղաղութիւնով, քան թէ տուն մը լեցուն զոհեր՝ կռիւով[1]։»

Պէտք է որ մեր տունը թանկագին ըլլայ մեզ հա-

(1) Գիրք Առակաց.

մար, իբր ապաստանարան կեանքի հոգերուն և նեղութիւններուն դէմ։ Ապահով նաւահանգիստ մ'է նա այն փոթորիկներուն մէջ որոնց անպատճառ կը բռնուինք մեր կեանքի ճամբորդութեան ատեն։

Վասն զի ամէնէն երջանիկ մարդիկն իսկ աղմուկէ զերծ չեն մնար, և յաջողութիւնն առանձին ո՛չ երջանկութիւն կը պարգեւէ և ո՛չ իսկ խաղաղութիւն։

Մարդն առանձին ապրելու համար ստեղծուած չէր, նոյն իսկ Եդեմական Դրախտին մէջ։ «Ի՞նչ պիտի ընէր առանձին հոգի մը, կ'ըսէ Պէռնարտէն տը Սէն-Բիէռ, նոյն իսկ երկնքի մէջ։» Բայց եթէ ամէն մարդու միտքը պարտի իւր տան նուիրուած ըլլալ, պէտք է նաև որ նա արտաքին տարրերով ալ սնանի։ Մենք ո՛չ միմիայն առանձնութեան համար եղած ենք, և ո՛չ ալ յատկապէս ընկերութեան համար։ Երկուքն ալ օգտակար՝ և կրնամ ըսել թէ կարեւոր են մեզ։

Ո՛չ բոլորովին աշխարհի ժխորին մէջ,
Եւ ո՛չ ալ անկէ բոլորովին հեռու կը ծաղկի այն պարտէզն որ ես կը սիրեմ։
Աղմկալից քաղաքին լուրերն անոր կը հասնին
Զանգակներու հնչման միջոցաւ,
Որք կամ յուղարկաւորութիւն մը և կամ ամուսնութիւն մը կը ծանուցանեն
Եւ նստած տեղէդ, խիտ առ խիտ տերեւներով շրջապատուած,
Մայր եկեղեցւոյ ժամացոյցին հնչիւններուն օդին մէջ թնդալը կը լսուի,
Թէպէտ և եկեղեցւոյն և պարտէզին միջև
Փարսախ մը մարգագետին կը տարածուի, զոր լայն և յամրընթաց առուակ մը կ'ոռոգէ(1)։

Բնութեան գեղեցկութիւնները մշտնջենական զուարթութիւն մ'են, բայց երկնքի լոյսն իսկ աննշան բան է, եթէ սիրտը տրտում է։

---

(1) Թէննիսըն։

Մեր ընտանիքին կը պարտինք մեր բոլոր գորովանքը, պատկառանքն և սէրը: Նա է ամէն քաղաքակրթութեան հիմն և ծագումն, ամէն աղէկ բաներու ճշմարիտ դպրոցն, որ մեր ամէնէն վսեմ զգացումներուն և ամէնէն ազնիւ բնաւորութեան կոչում կ'ընէ: Հրեշտակներն իսկ ուրիշներն երջանիկ ընելէ աւելի գերազանց բանի մը կարո՞ղ են արդեօք:

Ձեր տունը կրնայ համեստ, տգեղ, բանաստեղծութենէ զուրկ, և նոյն իսկ պաղ և անմխիթար ըլլալ, բայց հոն է ձեր տեղն և ձեր պարտաւորութեանց շրջանակն. հոն ո՛րքան դժուարութեանց որ հանդիպիք, ա՛յնքան արժանիք կ'ստանաք և երջանիկ կ'ըլլաք անոնց յաղթելով:

Աշխարհիս հոգերն և զրկանքներն համբերութեամբ կրելն աւելի դժուարին է քան թէ ամէնէն տաժանելի աշխատութիւնը. բուն իսկ ձեր էութեան մէկ զոհողութիւնն է այն, դրամի, ժամանակի կամ ջանքի ամէն զոհողութենէ աւելի մեծ:

Քիչ մարդ կրնայ գտնուիլ որ ուրիշներն երջանիկ ընել չբաղձայ. ասկէ զատ հաւանական չթուիր որ այդպիսիք երբեք հոս գրածս կարդան: Բայց հաւանականաբար շատ պարագայի մէջ, յաւէտ մտածութեան կամ փափկանկատութեան պակասութիւնն է, քան թէ սրտի պակասութիւնն որ ուրիշներուն դժբախտութեան պատճառ կ'ըլլայ: Զամէնքը ձեր շուրթներուն վրայ ժպիտով, սրտաբուղխ խօսքերով և սիրալիր կերպով ընդունեցէք: Բաւական չէ մեզի սիրելի եղող անձերը սիրել, պէտք է նաև որ մեր սէրն իրենց յայտնենք: Բայց շատ անգամ, անգիտակցաբար, մտածութեան կամ դատողութեան պակասութեամբ, մեր ամէնէն շատ սիրած և ամէնէն աւելի իրենց օգտակար ըլլալու փափաքած անձինքը կը վիրաւորենք:

Digitized by Google

*Ամէնքս ալ գիտենք թէ ի՛նչ օգնութիւն և ի՛նչ բարոյական զօրութիւն կը գտնէ մարդ քանի մը քաջալերական պարզ խօսքերու մէջ։*

*«Շատ անգամ ըսած եմ, կը գրէ Լորտ Չէսթրֆիլտ, և միշտ միևնոյն կարծիքն ունիմ թէ, ամէնէն աւելի չգիտցուած բաներէն մէկն ալ սիրելու և ատելու եղանակն է։ Մարդիկ իրենց սիրած անձերուն կը վնասեն չափազանց ներողամտութեամբ, անոնց թերութեանց վրայ աչք գոցելով, և երբեմն մանաւանդ ղանոնք քաջալերելով։ Իսկ երբ որ մէկը կ'ատեն, իրենք իրենց կը վնասեն, կիրքէ և չափազանց զայրոյթէ յափշտակուելով։»*

*Նոյն իսկ բարեկամաց շրջանակին մէջ մեր կեանքը գրեթէ առանձնական է. «Մենք ուրիշներու նկատմամբ իբր թէ տարբեր կղզիներու վրայ ենք. մեր մարմնոյն բանտին մէջ փակուած ենք։ [1]»*

*Որքան քիչ ծանօթութիւն ունինք մեր բարեկամաց և նոյն իսկ մեր ազգականաց վրայ։ Շատ անգամ մի և նոյն ընտանիքի անդամներն իսկ իբր թէ կատարեալ առանձնութեան մը մէջ կ'ապրին. անոնց գաղափարները կարծես թէ զուգահեռական գիծերու ուղղութեամբ կ'ընթանան և երբեք իրարու չեն հանդիպիր. անոնք իրարու հետ բնաւ ո՛ և է ճշմարիտ յարաբերութիւն չունին։*

*Ո՛չ իսկ այն գորովալի սիրտն՝ որ մեր սրտին կից է*
*Կրնայ մեր ժպիտներուն կամ հառաչանքներուն պատճառներէն կէսը*
*գուշակել [2]։*

*Մեր ժամանակը կ'անցնենք վիճաբանելով օդի, նոր հրատարակուած վիպասանութեան, քաղաքականութեան վրայ, կամ մեր դրացեաց առողջական վիճակին, բարեմասնութեանց կամ մոլութեանց վրայ, վերջապէս այն*

---

(1) Ց. Պ. Րիխդր։ (2) Քէպլ։

Digitized by Google

*ամէն բանի վրայ, որ բնաւ առնչութիւն չունի մեր ներքին կեանքին հետ, որն որ միակ ճշմարիտն է։ Եւ իրօք կարծես թէ, բան մը ո՛րքան որ ստորին է, ո՛րքան որ նուազ կարեւոր է, ա՛յնքան աւելի բախտ ունի վիճաբանութեան նիւթ ըլլալու. և շատ խօսող մարդիկը ճիշդ անոնք են որ իրապէս քիչ ըսելու բան ունին։*

*Քիչ մարդիկ կ'ըմբռնեն թէ խօսակցութիւնը մեծ արուեստ մ'է։ Ընտանիք մը ճշմարտապէս սիրակցորդ և սրտակից ըլլալու համար, սէրն և ընդհանուր բարեացակամութիւնը բաւական չեն. այլ պէտք է որ փափկանկատութիւնն՝ ինչպէս նաև կարծիք յայտնելու և ստանալու կարողութիւնն ալ հոն գոյութիւն ունենայ։*

*Մարդիկ կան որ իրենց փառք կը համարին միշտ ըսել այն ամէն բան որ իրենց խելքին կը փչէ։ Անտարակոյս լաւ է որ ամէն բան ճշմարիտ և անկեղծ ըլլայ։ Բայց խօսակցութիւնը դաղափարներու գդուշաւոր ընտրութիւն մը կը պահանջէ։ Եթէ կ'ուզենք չահեկան ըսել զայն, պէտք է որ ջանանք ադոր յաջողելու։*

*Որ և իցէ քննադատութեան միջոցին մի՛ բարկանար, և բարկութեան միջոցին մի՛ քննադատեր։*

*Բարկացող մարդն անտարակոյս յաւէտ ինքզինք կը պատժէ քան թէ ուրիշներն։*

Այսպէս միշտ ուրիշներր գրգռելով՝ ինքն իսկ ուրիշներէ գրգռուած,
Երբեք դժգոհութենէ զատ գոհացում չգտներ. (1)

*և բնաւ բանէ մը չգոհանալով՝ երբեք երջանիկ չըլլար։ Եւ անտարակոյս ուրիշներու երջանկութեան ալ կը վնասէ։*

*Մեր շուրջը գտնուողներն երջանկացնելը մեր կողմանէ շատ մեծ զոհողութեան մը չկարօտիր. բայց միայն կամենալը բաւական չէ։ Ատոր յաջողելու համար պէտք*

(1) Բօբ.

Digitized by Google

է փափկանկատութիւն, ուսումնասիրութիւն և փորձառութիւն։

Շնորհալի և համակրելի շարժուձևերն հիացում կ'ազդեն։ Հին առած մը կայ որ կ'ըսէ, «Շարժուձևերն են որ մարդը մարդ կ'ընեն,» և տարակոյս չկայ թէ շատ մարդիկ իրենց հաճելի կերպերուն շնորհիւ դիրք ստացած են, ինչպէս որ ուրիշ շատեր ալ աղտնցմէ զուրկ ըլլալնուն պատճառաւ, անյաջողութեան մատնուած են։

Կոպտութիւնը զօրութիւն չէ. ընդհակառակը շատ անգամ տկարութեան պատրուակ մ'է։ Շէյգսբիր Մարկոս Անտոնիոսի ըսել կուտայ Բրուտոսի համար.

Անոր կեանքն ազնուական էր, եւ անոր անձին մէջ
Տարրերն այնպէս մը խառնուած էին՝ որ բնութիւնը կրնար ելնել
Եւ ըսել բոլոր աշխարհի, «Մարդ մ'էր նա։»

«Շատ անգամ այնպէս կը կարծուի թէ ներդաշնակութիւն և աններդաշնակութիւն երաժշտութենէ ծագում առած բառեր են։ Բայց իրապէս անոնք աւելի խոր իմաստ մ'ունին, սրտերու միութիւն կամ անմիութիւն կը նշանակեն։» (1).

Իսկ եթէ պատճառ ունենաք յանդիմանելու, գէթ քաղցրութեամբ ըրէք զայդ, մանաւանդ երբ խնդիրը մանկանց կը վերաբերի. վասն զի մանկունք աւելի դիւրաւ կը վիրաւորուին։ Կ'ըսեն թէ Ռիւպէնս կարող էր վրձնի միակ հարուածով մանկական ժպտուն դէմք մը լալկան դէմքի մը վերածել։ Կեանքի մէջ ամէնքս ալ այդ կարողութիւնն ունինք։ Երբեմն բառ մը միայն բաւական կ'ըլլայ աղոր համար։

Լաւ դրութիւն մ'է նաեւ գաղտնապէս պարսաւել և յայտնապէս գովել։ Ինչ որ ըսէք ի ծածուկ՝ երախտա-

(1) Սըր Հ. Մազուէլ։

գիտութեամբ կ'ունկնդրուի, վասն զի լսողը կ'զգայ թէ բարեացակամութիւնն է որ զայն կը թելադրէ։ Գաղտնի յանդիմանութեանց արդիւնքն աւելի մեծ կ'ըլլայ. իսկ հրապարակային գովեստ մը աւելի եւս կը քաջալերէ եւ լաւագոյն վարձատրութիւն մը կը համարուի։

Նա մանաւանդ եթէ անպատճառ հարկ ըլլայ պարսաւել կամ յանդիմանել, խոհեմութեամբ ըրէ՛ք զայդ, և իբր թէ ցաւելով, որքան որ կարելի է, երբեք բարկութիւն կամ նեղութիւն մ'արտայայտէք։ «Զքեզ կը պատժէի, կ'ըսէ Արկիտաս իւր գերիին, թէ որ բարկացած չըլլայի։» Եթէ բարկացած էք, գոնէ վայրկեան մը համբերեցէ՛ք, և խօսելէ առաջ խորհեցէ՛ք, Մ. Արնոլտ կը վկայէ թէ, բարձր դաստիարակութեան մ'ամենաստոյգ ապացոյցն է «անսպառ ներողամտութիւն մը, որ միշտ ի նկատի կ'առնու պարագաները, և գործերը խստութեամբ դատելով հանդերձ՝ անձերը քաղցրութեամբ կը դատէ։» Ուստի ներողամիտ եղէ՛ք ամէնուն համար։ Եթէ ամէն պարագաները ճանչնաք, շատ անգամ փոխանակ պարսաւելու՝ կը կարեկցիք։

Մահն հուսկ ապա զամէնքս իրարու պիտի հաւասարեցնէ, զայս յիշեցէ՛ք, և ամէնուն հետ ազնուութեամբ վարուեցէ՛ք. ինչպէս որ ամէն բարեկիրթ մարդու կը վայլէ։

Եթէ կարելի ըլլայ երբեք բարկութեամբ և ո՛չ իսկ պաղութեամբ մի՛ բաժնուիք բարեկամէ մը։ Յիշեցէ՛ք որ ամէն բաժանում կրնայ վերջնական ըլլալ։

Խօսքեր կան որ կարծէք թէ արեգական ճառագայթներ են, խօսքեր ալ կան որ նետերու պէս մարմնոյն մէջ կը մխուին և օձի խայթուածքի պէս կը թունաւորեն։ Եւ եթէ վիրաւորիչ խօսքեր կարող են այնչափ ցաւ պատճառել մեզ, քաղցր խօսքերն ո՛րքան երջանկութիւն կը պարգեւեն արդեօք։

Digitized by Google

*Լաւ խօսքերը, կ'ըսէ Գ. Հերպերդ, ծախքով չեն ըլլար, և սակայն յոյժ թանկագին են, վասն զի,*

«Յախուռն կերպով արձակուած մէկէ աւելի նետ
Նպատակի մը կը մխուի զոր արձակողը չէր նախատեսած,
Եւ յախուռն կերպով արտասանուած մէկէ աւելի խօսք
Կրնայ վշտաբեկ սիրտ մ'սփոփել և կամ վիրաւորել։»

*Նոյն իսկ հարկ չկայ միշտ խօսք գործածելու։ Երբոր Պետրոս ուրացաւ զՔրիստոս, «Տէրը Պետրոսին երեսը նայեցաւ։» Այդ յանդիմանական տրտում նայուածքը բաւական եղաւ, և Պետրոս մեկուսացաւ և դառնապէս լացաւ։*

*Ինչպէս որ ակնարկ մը կրնայ ցաւ պատճառել, նոյնպէս ալ նայուածք մը երբեմն բաւական կ'ըլլայ սիրտն ուրախութեամբ լեցնելու։ Երկարատև բացակայութենէ մը վերջն ինչպիսի՜ անձկանօք չենք փափաքիր սիրալիր ընդունելութեան մը, զոր գտնելու վստահ ենք. մտերմական ժպիտ մը բաւական է մեր ամէնէն տխրամած օրը պայծառացնելու։*

«Սիրելի անձերու քով գտնուիլ, այդ միայն բաւական է(1)։»

*Զափազանց քաշուող մ'ըլլաք։ Ձեր սէրն յայտնելէ մի՛ վախնաք։ Ինչի՞ կը ծառայէ սիրելն, եթէ պաղութեամբ վարուիք։ Գորովալից եղէք, և միշտ տաքսիրտ, հոգած և սիրալիր։ Կարեկցութիւնն աւելի մեծ ծառայութիւններ կը մատուցանէ քան թէ ողորմութիւնը. սէրն աւելի մեծ արժէք ունի քան թէ դրամն, և անուշ խօսք մ'աւելի ևս հաճոյք կը պատճառէ քան թէ պարգև մը։*

---

(1) Լա Պռիւյէռ։

Digitized by Google

Շատ զգուշութեամբ ընտրեցէք ձեր բարեկամները. «կեանքի ամէնէն գեղեցիկ և ամէնէն թանկագին զարդերն են անոնք (1)։» Ձեր ընկերակցութիւնը պատուաւոր անձերէ կազմուած ըլլայ, կ'ըսէ Գ. Հերպէրդ, «և դուք ալ անոնց պիտի նմանիք.» — «Ըսէ՛ք ինձ թէ ինչպիսի մարդոց քով կը յաճախէք, և ես ըսեմ ձեզ թէ ինչպիսի մարդ էք դուք,» կ'ըսէ սպանիական առած մը։ Ով որ իւր անձին բարեկամը չէ, չկրնար ուրիշի մը լաւ բարեկամն ըլլալ։

Մեր բարեկամուհեաց ընտրութիւնն ալ ոչ նուազ կարեւոր է։ Որքան իմաստուն մարդիկ Ցուշկապարիկներու (հրապուրող կիներու) ձեռքով կործանած են, Սողոմոնի ժամանակէն սկսեալ,

«Որուն սիրտը Թէպէտև մեծ՝
Կռապաշտ գեղուհիներէ մոլորած,
Գիղծ կուռքեր պաշտելու չափ ստորնացաւ (2)։»

«Բարեկամութիւնը մեր կեանքին գոհարն է,» կ'ըսէ Լիլի, և ով որ բարեկամ չունի յոյժ արգահատելի է, մանաւանդ եթէ ինքն եղած է աղոր պատճառ։

«Ոչ ոք այնքան անիծեալ է ճակատագրէն,
Ոչ ոք այնքան անոք է բոլորովին,
Քան զայն՝ որուն սրտին գէթ ի ծածուկ համակիր
Եւ ոչ մէկ սիրտ կը բաբախէ (3)։»

Հարկ չէ ուրեմն անպատճառ, որ Գէպլի դառն խօսքին համեմատ, ամէնքս ալ առանձնացեալ և միայնակ ըլլանք։

«Իւրաքանչիւրն ուրախութեան կամ վշտի իւր ծածուկ սահմանին մէջ,
Մեր մենակեաց հոգիները փակուած կը կենան.

(1) Կիկերոն. (2) Միլդըն. (3) Լոնկֆէլլօ.



Digitized by Google

*Եւ մեր աչքերը կը տեսնեն ինչ որ զանոնք կը շրջապատէ երջանկու-*
*թեան կամ վշտի երեւոյթին ներքեւ,*
*Իւրաքանչիւր սրտէ բղխող ներքին լոյսին համեմատ (1 .»*

Այսուհանդերձ առանձնութիւնը շատ անգամ բաղձալի է. վասն զի դժուարին է իւր դրացին սիրել եթէ մէկը դատապարտուած է բնաւ անկէ չբաժնուելու։

Ի հարկէ պիտի պատահի որ երբեմն տրտնջելու պատճառ ունենալ պիտի կարծէք։ Բայց այդ պարագային, համբերող եղէք և ողջամիտ. ջանացէ՛ք ձեր բարեկամին տեսակէտով դիտել զայդ։ Մանաւանդ թէ երբեք մի՛ չտապէք։ Բնութիւնը չշտապեր։ «Շատ շուտ հասնիլ ուզողն երբեք չհասնիր,» կ'ըսէ հին առած մը։ Եթէ երկբայութիւն մ'ունիք, թողէ՛ք որ գիշեր մ'անցնի։ Բայց, նա մանաւանդ, մարդոց հետ գժտելու մի՛ շտապէք։ Նախ լաւ խորհեցէք, և քիչ մը համբերեցէ՛ք։ Բարեմամի մը վարմունքն ո՛րքան ալ վշտացուցած ըլլայ զձեզ, հետեւեալ օրն իրերը բոլորովին տարբեր գոյներով պիտի ներկայանան ձեր մտքին։

Եթէ կծու և վճռական՝ բայց վիրաւորիչ նամակ մը գրած էք, մինչև հետեւեալ օրը վար դրէք, և շատ հաւանական է որ այլ եւս իւր հասցէին չէք խրկեր զայն։

Ջանացէ՛ք որ լաւագոյն բարեկամներ ունենաք։ Լաւ եւս է բնաւ բարեկամ չունենալ, քան թէ անվստահելի բարեկամի մը տէր ըլլալ։

«Ամբարիշտներուն ճամբան մ'երթար, և չարերուն ճամբուն մէջ մի՛ քալեր։ Անկէ զգուշացիր. անոր քովէն մ'անցնիր. անկէ խոտորէ և անցիր։ Վասն զի անոնք մինչև որ չարութիւն չընեն՝ չեն քնանար. և թէ որ մէկը չկործանեն՝ քուներնին կը փախչի. վասն զի անոնք ամբարշտութեան հացը կ'ուտեն, և անիրաւութեան գինի

(1) Գէպլ։

կը խմեն ։ Բայց արդարներուն ճամբան ծագող լոյսին պէս է․ որ երթալով կը լուսաւորուի, մինչև կատարեալ օր կ'ըլլայ [1] ։»

Բայց թէպէտև մեծ սխալ մ'է մեր բարեկամութիւնը չարերու և յիմարներու նուիրել, զանոնք մեզի թշնամի ընելն ալ շատ խոհեմութիւն չէ, վասն զի անոնք բազմաթիւ են ։

Լեմպ սրամտութեամբ կ'ըսէ թէ «նուէրները սիրելի կ'ընեն բացակայները,» բայց բարերարութիւնն, համբերութիւնն և համակրութիւնը պարգևներէ շատ աւելի կարողութիւն ունին ։

Ձեր բարեկամներն իրաւունք ունին ձեզմէ պահանջելու այն ամէն բան որ իրենց տալու կարող էք, բայց ձեզմէ փոխառութիւն ընելու իրաւունք չունին ։

Ո՛չ փոխառու եղէք և ո՛չ փոխատու

կ'ըսէ Շէյքսփիր,

Վասն զի մարդ շատ անգամ թէ դրամն և թէ բարեկամը կը կորսնցնէ,
Եւ փոխառութիւն ընողը չկրնար խնայող ըլլալ ։

Եւ Սողոմոն կը ծանուցանէ մեզ թէ «ստորականին երաշխաւոր եղողն անշուշտ չարիքի կը հանդիպի․ բայց երաշխաւորութիւնն ատողն ապահով է [2] ։»

Ձեր բարեկամները շատ վտանգներու և շատ վշտերու դէմ պիտի պաշտպանեն զձեզ ։ Երբ որ Օգոստոս իւր աղջկան Յուլեայ չար վարքին պատճառաւ ամօթահար եղաւ․ «Ասոնց և ո՛չ մին կը պատահէր ինձ, կ'ըսէր, եթէ կամ Ագրիպպա և կամ Մեկենաս դեռ ողջ ըլլար ։»

---

(1,2) Գիրք Առակաց

Digitized by Google

Եւ երբ որ լաւ բարեկամներ ունենաք, զանոնք պահ-պանել գիտցէք։

«Այն բարեկամներն որ ունիս և որոնց հաւատարմութիւնը փորձուած է, Պողպատէ շրջանակներով պինդ կապէ սրտիդ (1)։»

Երբեք ձեզ դէմ տրտնջելու նոյն իսկ ամենափոքր պատճառ մը մի՛ տաք անոնց։

Եւ եթէ մահը գայ զմեզ մեր բարեկամներէն բաժնելու, լաւագոյն կեանքի մը մէջ զիրենք վերստին տեսնելու քաղցր յոյսն ունինք։ Տարակոյս չկայ՝ թէ այդ յոյսը չկրնար անոնց կորուստին վրայ զմեզ մխիթարել, բայց գոնէ կ՚օգնէ մեզ համբերութեամբ ատոր հանդուրժելու։

Կեանքի մէջ ամենէն կարեւոր քայլափոխն ամուսնութիւնն է անտարակոյս։ Կը թուի թէ սէրը բովանդակ բնութիւնը կը գեղեցկացնէ և անոր կը ներշնչէ։ Հողային թրթուրն օդային թիթեռի կը փոխակերպէ, գարնան մէջ ամենէն կենդանի գոյները կը փայլեցնէ թռչնոց փետուրներուն վրայ, կայծոռիկին լապտերը կը վառէ, թռչնոց երգերը կ՚արթնցնէ, և բանաստեղծներուն կը ներշնչէ։ Անկենդան բնութիւնն իսկ կարծես թէ իր գեղեցիկ ազդեցութիւնը կը կրէ և ծաղիկներն ամենէն չքեղ երանգներով կը զարդարուին։

«Մարդը, կ՚ըսէ Սիմոնիտ, չկրնար լաւ ամուսինէ մ՚աւելի մեծ օրհնութիւն մը ճանչնալ, ոչ ալ չար ամուսինէ մ՚աւելի վատթար անէծք մը։» — «Անձրեւոտ օրուան չարունակ կաթիլն և կռուասէր կինն իրարու կը նմանին։ Լաւագոյն է տանիքի մ՚անկիւնը բնակիլ՝ քան թէ կռուասէր կնոջ հետ մեծ տան մը մէջ (2)։»

Գալով կնոջ ընտրութեան, այդ մասին օգտակար խրատ մը տալը բաւական փափուկ խնդիր մ՚է։ Այլ սա-

---

(1) Շէյքսփիր։ (2) Դիրք Առակաց։

Digitized by Google

կայն ինչ ինչ խորհրդածութիւնք անհրաժեշտ են։ Շատ կանուխ ամուսնանալն աղէկ չէ։ Ո՛չ դրամի համար ամուսնացէք և ո՛չ ալ առանց դրամի։ «Դրամի համար ամուսնացողները ցոյց կու տան թէ դրամն աւելի նախամեծար կը համարին քան թէ իրենց կեանքին ճշմարիտ երջանկութիւնը. բայց եթէ իրենց դրամն և վիշտերն համեմատութեան դնեն, շատ անգամ սիրով պիտի յօժարին բոլոր այդ դրամը վրայ տալու, անոր տենջովն իրենց կորսնցուցած կեանքը վերստին ձեռք բերելու համար[1]։»

Հոմերոս, կ'ըսէ Ճէրէմի Թէյլըր, «ամուսնի մը պարտաւորութեան հանգամանքին շատ գողտր անուններ կը կցէ։ — Դու իբր Հայր և Մայր՝ և իբր Եղբայր պիտի ըլլաս կնոջդ համար, ապա թէ ոչ, ամուսնական կեանքն որբի մը վիճակէն տարբերութիւն չունենար իրեն համար։ Վասն զի, նա որ իւր հայրն ու մայրն և եղբայրը թողած է քեզ համար, կամ դժբախտ է անհայր տղու մը պէս, և կամ պէտք է որ անոնց ամէնքն, և աւելին իսկ քու վրայ գտնայ։

Եթէ տղոր վրայ փոքր կասկած մ'ունիք, մ'ամուսնանաք. վասն զի ամուսնացեալ մարդիկ կամ շատ երջանիկ են և կամ շատ դժբախտ։

Ամուսնանալն ինքզինք շատ մեծ պատասխանատուութեան ենթարկել է։ Արտաքին երեւոյթներու մի՛ վստահանաք, և անոնցմէ մի՛ խաբուիք. վասն զի ամուսնութիւնը պարզապէս իրարու երես նայելու և ձեռք ձեռքի տալու գործ չէ, այլ ողջմտութեան և սրտի [2]։»

Բարի կին մը նեցուկ մ'է ոչ միայն մեր նիւթական՝ այլ նաև մեր բարոյական կեանքին մէջ։ «Ստորին կիներն իսկ, կ'ըսէ Շէյգսբիր, երբ որ սիրեն, այնպիսի ազնուութիւն մը կ'ստանան զոր չունին ի բնէ։» Եւ

---

(1, 2) Ճէրէմի Թէյլըր։

Digitized by Google

եթէ ամէնէն ստորիններն իսկ այս լաւ ներգործութեան ենթակայ են, որքան աւելի հզօր պիտի ըլլայ արդեօք այդ ներգործութիւնն այնպիսեաց համար որք ի բնէ ազնիւ սիրտ ունին։

«Ամուսնութիւնը, կ՚ըսէ Ճ. Թէյլըր, աստուածային է իր հաստատութեան մէջ, նուիրական է իր միութեան մէջ, սուրբ է իր խորհրդին մէջ, խորհրդական է իր նշանակութեան մէջ, պատուաւոր է իր կոչումին մէջ, կրօնական է իր պաշտօններուն մէջ. օգուտ մ՚է նա մարդոց ընկերութեանց համար, և սրբութիւն մը՝ Աստուծոյ համար։»

«Եթէ ամուսնութիւն մը երջանիկ եղած է, կ՚ըսէ Տերտուլիանոս, այդ երջանկութիւնը գովաբանելու արժանի խօսքեր ո՞ւր կարելի է գտնել։ Ամուսինք միասին կ՚աղօթեն, միասին կ՚ուրախանան, միասին կը տրտմին. իրարմէ անբաժան են թէ՛ յաջողութեանց և թէ՛ ձախորդութեանց մէջ։ Իրարմէ բան չեն ծածկեր, և երբեք իրարմէ չեն ձանձրանար։»

Ձեր կինը կ՚ընդունիք, մեր ծիսին հանդիսաւոր և սքանչելի խօսքերուն համեմատ, «յաջողութեան և ձախորդութեան համար, հարստութեան և աղքատութեան համար, հիւանդութեան և առողջութեան համար, և զայն սիրելու համար, մինչև որ մահն զձեզ իրարմէ բաժնէ»։

«Երջանիկ ամուսնութիւն մը, կ՚ըսէ Սթէնլի, նոր չուկէտ մ՚է կեանքի մէջ, աղբիւր մ՚է նորանոր բարեբախտութեանց և օգտակարութեանց. միակ առիթն է այն որ կը ներկայանայ մեզ ընդ միշտ հրաժեշտ տալու մեր անցեալին, անոր բոլոր սխալանաց և բոլոր յիմարութեանց, յուսալից, եռանդնալից և կորովալից՝ վերըստին ճամբայ ելնելու, ապագային համար որ մեր առջև կը բացուի։ Կրնանք անով մեր տունն երկնային երանութեան տիպար մը հանդիսացնել։ Ամուսինն

Digitized by Google

կինն, հայրն և մայրն, եղբայրներն և քոյրերը, ծնողքն և զաւակունք, իւրաքանչիւրը մէկ մէկ կերպով կրնայ այնպէս լաւ օգնել և նեցուկ ըլլալ իրեններուն, որպէս չկրնար ըլլալ օտար մը, ո՛վ որ ալ ըլլայ. վասն զի բարեգործութեան առիթներն անսպառ են ընտանիքի մը մէջ, ուր իւրաքանչիւր անդամ այնքան լաւ կը ճանչնայ միւս ամէն մէկ անդամին բնաւորութիւնն որպէս չկրնար ճանչնալ օտարի մը բնաւորութիւնն։ Ուրիշ ոչ ոք պիտի կարենար նոյնքան չահաքրքրիլ անոնց անձին, անոնց երջանկութեան, անոնց փառքին, անոնց բարոյական գեղեցկութեան և անոնց բարութեան համար, վասն զի արենակից և մարմնակից են անոնք, և անոնցմէ իւրաքանչիւրին երջանկութիւնը կամ փառքն երջանկութիւն և փառք է միւս ամէնուն համար. իւր վիշտերն, իւր վհատութիւնները կամ տկարութիւններն հաւասարապէս ամէնուն կը պատկանին, և զամէնքն հաւասարապէս կը տառապեցնեն։ Եւ իրենցմէ մէկուն անբծութեան, ազնուութեան և արիութեան շնորհիւ, միւս ամէնքը, նոյն իսկ յակամայս, մինչև ի պարտականութիւն, մինչև յերկինք, մինչև յԱստուած կը բարձրանան։»

Վերջապէս, տղաք մեծ՝ բայց միանգամայն բերկրալի պատասխանատուութիւն մըն են։ «Ծրագլուխ մայր մը, կ՚ըսէ Գ. Հերպէրդ, հարիւր ուսուցիչ կ՚արժէ։» Շատ անգամ ըսուած է թէ տղաք «տրուած» են մեզ, և աննախատես ծնողք իրենց անփութութեան համար զիրենք արդարացնել կը ջանան, ըսելով թէ, «Ըստ որում Աստուած բերան մը տուած է անոնց, կերակուր ալ կուտայ։» Բայց Մ. Արնօլտ իրաւամբ դիտել կուտայ թէ, արդարանալի չէ ծնունդ տալն այն խեղճ փոքրիկ էակաց եթէ չէք կարող զանոնք պէտք եղածին պէս սնուցանել, և պատշաճ և ըստ բաւականի ապահով դիւրակեցութեան մը մէջ մեծցնել։

Digitized by Google

Թող անոնք սիրոյ ճառագայթով մը տաքնալով մեծնան, վասն զի տղայ մը որքան որ ծնողական սէրը վայելելու բարեբախտութիւնն ունենայ, այնքան աւելի լաւ պատրաստուած կ'ըլլայ կեանքի փոթորիկներուն դիմադրելու համար ։

« Իւր զաւակները սիրողը միայն գիտէ թէ ինչպիսի հաճելի չեչտերով կը տրոփէ մարդուն սիրտն այս սիրեցեալ էակներու հետ խօսակցելով. անոնց միամտութիւնն, անոնց թոթովութիւնն, անոնց փոքր բարկութիւններն, անոնց անմեղութիւնն, անոնց անկատարելութիւնք, անոնք պահանջողութիւնք, ցնծութեան և մխիթարութեան նոյնքան փոքրիկ հոսանքներ են այն անձին համար որ անոնց տէր ըլլալուն կ'ուրախանայ, և անոնց կենակցութիւնը կը սիրէ ։ Բայց ով որ իւր կինն ու զաւակները չսիրեր, իւր տան մէջ մատակ առիւծ մը կը սնուցանէ. և վիշտերու բոյն մը կազմած է, և երկնային օրհնութիւնն իսկ չկրնար զինքն երջանկացնել. այնպէս որ մեր կինը սիրելու համար Աստուծոյ մեզի տուած բոլոր պատուէրներն ուրախութեան նոյնքան պէտքեր և կարողութիւններ են միայն (¹) ։»

(¹) Ճէրէմի Թէյլըր ։

# ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹԻՒՆ

*Բան մը մի՛ վատնէք, բայց մանաւանդ ժամանակն երբեք մի՛ վատնէք։ Իւրաքանչիւր օր անգամ մը միայն կուգայ և այլ ևս չվերադառնար։ Ժամանակն երկնաւոր պարգևներուն ամէնէն թանկագիններէն մէկն է. անգամ մը կորսնցնելէ յետոյ չենք կրնար զայն վերստին գտնել։*

*Ինքն իսկ Երկինք անկարող է անցեալին վրայ.*
*Վասն զի եղածն եղած է, և անցեալ ժամն երբեք չվերադառնար(1)։*

*Ձեր ժամանակն այնպէս մի՛ գործածէք որ հուսկ ապա անոր գործածութեան համար զձեզ մեղադրել պարտաւորիք։ «Այլ ևս շատ ուշ է» կամ «Այդ պիտի կարենար ըլլալ» խորհրդածութիւններէն աւելի տխրալին չկայ։ Ժամանակը մեզի վստահացուած աւանդ մ'է, և իւրաքանչիւր վայրկենի գործածութեան համար հաշիւ տալու պարտաւոր պիտի ըլլանք։ «Խնայող եղէք քունի համար, ինչպէս նաև սնունդի համար, բայց խնայող՝ մանաւանդ ժամանակի համար։»*

*Նելսըն ըսած է որ կեանքին մէջ իւր գտած յաջողութիւնքը կը վերագրէ սա իրողութեան թէ ամէն տեղ իւր սպասուած ժամանակէն մէկ քառորդ ժամ առաջ կը հասնէր։*

*Լորտ Մէլպըրն կ'ըսէր թէ «հարկ չկար բնաւ սա խօսքերէն ուրիշ բան ըսելու մանկանց». «կեանքի մէջ ձեր բախտը շինելը ձեզմէ կախում ունի և ձեր ջանքերուն*

---

(1) Տրայտըն։

Digitized by Google

*և ճիգերուն համեմատ, կամ անօթի պիտի մնաք և կամ յաջողութիւն պիտի գտնաք։»*

*Անկէ զատ, աշխատասիրութիւնն ոչ միայն անհրաժեշտ կարեւոր է յաջողութիւն գտնելու համար, այլ նաև օգտակար ազդեցութիւն մ'ունի մեր նկարագրին վրայ։*

*«Ծոյլ մ'ըլլար երբեք, կ'ըսէ Ճ. Թէյլըր, այլ ժամանակիդ ամէն մէկ մասը լուրջ և օգտակար զբաղումով մը լեցուր։ Վասն զի մեղքը դիւրաւ կը սողոսկի այն ամէն մասերուն մէջ զորս դատարկ կը թողու հոգւոյն անգործութիւնն և մարմնոյն ծուլութիւնը. վասն զի ամէն քաջողջ և անզբաղ մարդ որ ծոյլ է բղջախոհութեան մէջ կ'իյնայ, եթէ փորձութիւնն իւր վրայ յարձակի։ Բայց զբաղմանց մէջ մարմնական աշխատութիւնն ամէնէն կարեւորն՝ և սատանային փորձութեանց դէմ ամէնէն զօրաւորն է։»*

*«Ժամանակն և Աշխարհ փորձի դեղեր են, կ'ըսէ Քէպլ, ուր կը պատրաստուինք Երկնքի և Յաւիտենականութեան համար. և այս աշխարհի մէջ ինչպէս որ ընենք մեր վայրկեանները, հանդերձեալին մէջ դարերը նոյնպէս պիտի ընէ մեզ Աստուած։»*

*Ուրիշներու երջանկութեան և բարւոյն համար փոքր ի շատէ բան մ'ընելը, անտարակոյս ամենաբարձր փառասիրութիւնն և լաւագոյն ակնկալութիւնն է մարդու համար։*

*Կ'ըսեն թէ Պ. Մէտիչի՝ Միքայէլ Անճէլօն գործածեց ձիւնի մէջ արձան մը քանդակելու։ Թանկագին վայրկեաններ յիմարաբար վատնել էր այդ։ Բայց եթէ Միքայէլ Անճէլօյի ժամանակը թանկագին էր աշխարհի համար, մեր ժամանակն ալ ոչ նուազ թանկագին է մեզ համար. բայց մենք շատ անգամ աւելի եւս յիմարաբար կը վատնենք մեր ժամանակն ո՛չ միայն ձիւնէ արձաններ՝ այլ աւելի գէշ, տիղմէ կուռքեր շինելու։*

Digitized by Google

«Ամէնքս ալ մեր կեանքին կարճութենէն կը տրտնջենք, կ'ըսէ Սենեկա, և սակայն ամէնքս ալ շատ աւելի ժամանակ ունինք զոր գործածելու եղանակը չենք գիտեր: Մեր կեանքը կ'անցնի կամ անգործութեամբ, կամ անխորհրդաբար գործելով, և կամ մեր պարտաւոր եղածէն բոլորովին տարբեր բան գործելով: Միշտ կը գանգատինք թէ մեր օրերը սակաւաթիւ են. և սակայն այնպէս կը գործենք իբրև թէ անոնք անվերջ ըլլային:

Այսուհանդերձ, որքան ալ խոհեմութեամբ գործածենք մեր ժամանակը, դարձեալ մեզմէ ամէնէն բարեբախտներն իսկ յոյժ քիչ բան ընելու, քիչ բան կարդալու և քիչ բան տեսնելու կը յաջողին:

Կեանքի մէջ յաջողութեան և երջանկութեան ամենակարեւոր տարրերէն մին՝ անշուշտ պատուաւորապէս և հաստատամտութեամբ աշխատելու կարողութիւնն է: Կիկերոն կ'ըսէր թէ առ այդ պէտք եղած առաջին բանն համարձակութիւնն է, երկրորդը՝ համարձակութիւնն, և երրորդը՝ դարձեալ համարձակութիւնն է: Ցանձնապաստանութիւնն օգտակար է անտարակոյս, բայց աւելի ճիշդ կ'ըլլար ըսել թէ, կարեւորն է յարատեւութիւն, յարատեւութիւն և դարձեալ յարատեւութիւն:

Աշխատութիւնը նուազ կարեւոր չէ մտքին հանդարտութեան՝ քան մարմնոյն առողջութեան համար: Տագնապի օր մը ևս աւելի հիւծիչ է քան թէ շաբաթ մը աշխատութիւն: Տագնապը բովանդակ մարդկային կազմուածքը կը խանգարէ, իսկ աշխատութիւնն անոր առողջութիւնն ու բարւոք պաշտօնավարութիւնը կ'ապահովէ: Դնդերային մարզանքը մարմնական զօրութիւն կը պարգեւէ, և ուղեղային մարզանքը մտային խաղաղութիւն: «Մտաւոր աշխատութիւնը սրտի խաղաղութիւն կը պարգեւէ(1):»

(1) Ժանգու:

«Ցարմար աշխատութիւն մը տուէք դեռատի աղջըկան մը, այնպիսի աշխատութիւն մը՝ որ արշալուսէն սկսեալ զինքն զբաղեցնէ և իրիկունն յոգնած թողու, բայց իւր նմաններուն օգտին համար աշխատած ըլլալու գոհունակութեամբ, և իւր եռանդին անկարող տրտմութիւնը պայծառ և բարերար խաղաղութեան վեհութեան մը պիտի փոխակերպի(1)։»

Խնդիրն ինչ ընելնուդ վրայ չկայանար, բաւական է որ լաւ բան մ'ընէք։ Նոյն իսկ փիլիսոփայական քարն և բոլորակին քառակուսութիւնը գտնելու փորձերն անօգուտ չեն մնացած։

Խօսքերն, ըսած է Տօգթ. Ճօնսըն, Երկրին դուստրերն են, իսկ գործերն՝ Երկնքին ուստրերն։ Ինչ որ ալ ընէք, անթերի ըրէք։ Ուղղի մտօք ըրէք։ Ձեր բոլոր ձիրքերը մշակեցէք. պէտք է որ գործածէք զանոնք, ապա թէ ոչ կը կորսնցնէք։

«Հանճարին՝ և մինչև իսկ ո՛ և է կերպով հանճար ըսուած բանին պատմութիւնն այնպիսի յարատև ջանքի մը պատմութիւնն է զոր և ո՛չ մէկ արգելք կրցած է վհատեցնել. և շատ մեծամեծ մարդոց կարծիքն այն եղած է թէ, հանճարը մեծաւ մասամբ աշխատասիրութեան պտուղ է։ Հանճարեղ կին մը, Ճօրճ Էլիըթ, կը ծաղրէ այն կարծիքը թէ իւր վիպասանութիւնք կրցած ըլլան ներշնչումով գրուիլ։ Հանճարը, կ'ըսէր Նախագահ Տուայթ, Եէլի ուսանողներուն, ջանք ընելու կարողութիւնն է (2)։»

Մուրալը վերջապէս աւելի ևս յոգնեցուցիչ է քան թէ աշխատիլն, և բաղդատմամբ՝ առաջինը նուազ շահաբեր է։ Ասկէ զատ, իւրաքանչիւր ոք իւր ոտքերուն վրայ պարտի կենալ։ «Ոտքի վրայ հողագործ մը, կ'ըսէ Ֆրանգլին, ծունկի վրայ ազնուականէ մը բարձր է։»

---

(1) Ռըսքին։ (2) Կարնէգ։

Digitized by Google

Գօպպէդ իւր հռչակաւոր Անգղիերէն Քերականութեան վրայ խօսելով, կ'ըսէ, «Քերականութիւնը վեց բէնս օրականով զինուոր եղած ատենս սորվեցայ։ Անկողնիս եզերքը նստած՝ կը սերտէի. զինուորի՝ պայուսակս իմ գրադարանս էր. ծունկերուս վրայ դըրուած տախտակի կտոր մը իմ գրասեղանս էր. և այս աշխատութիւնս կեանքիս գրեթէ մէկ տարին միայն ինձմէ կորզեց։ Մոմ կամ ձէթ գնելու դրամ չունէի. ձմեռը քիչ անգամ կը պատահէր որ գիշերը կրակին լոյսէն զատ լոյս կ'ունենայի. և կրակին մօտ նստելու կարգս ալ շատ յաճախ չէր գար։ Մի՛ կարծէք թէ քիչ բան եղած ըլլայ այն փարդինկը զոր երբեմն մելան, գրիչ կամ թուղթ գնելու համար կը ծախսէի։ Այդ փարդինկն, աւա՜ղ, մեծ գումար մ'էր ինձ համար։ Այն ժամանակ ալ ճիշդ հիմակուան պէս բարձրահասակ և քաջառողջ էի, նաև զինուորական կրթութիւն կ'ընէի։ Բոլոր ծախքերս յոյժ խնայողաբար ընելէ յետոյ, շաբաթն հազիւ երկու բէնս կը մնար ինձ։ Դեռ կը յիշեմ, և երբեք պիտի չմոռնամ, թէ անգամ մը, ուրբաթ օր մը, բոլոր անհրաժեշտ ծախքերս վճարելէ յետոյ, ճիշդ կէս բէննինգ մը մնացած էր քովս, որով երկրորդ օրուան ճաշիս համար աղած հարինգ մը գնել մտադրած էի. բայց նոյն իրիկունն, անօթութենէ մեռնելու վիճակի մէջ, երբ որ կը հանուէի, տեսայ թէ այդ դրամս կորսնցուցա՛ծ էի։ Գլուխս իմ ողորմելի վերմակիս ներքև խօթելով՝ տղու մը պէս լացի։ Եւ դարձեալ կը կրկնեմ, եթէ ես կրցայ այսպիսի դժուարութեանց մէջ իմ աշխատութիւնս շարունակել և զայն յաջողեցնել, կա՞յ արդեօք, կրնա՞յ արդեօք բոլոր աշխարհիս մէջ գտնուիլ երիտասարդ մը որ կարող ըլլայ արդարացում մը գտնել իւր աշխատութիւնն աւարտել չկարենալուն համար։»

Գօպպէդ դրամ չունէր, բայց հաստատամտութիւն

Digitized by Google

տունէր։ «Շատ մարդիկ, կ՚ըսէ Պագօն, կարծեն թէ բնաւ չեն ըմբռներ այն հարստութիւններն և այն կարողութիւնը զորս կը վայելեն. առաջիններուն վրայ չափէն աւելի կը վստահանան, իսկ վերջիններին վրայ՝ յոյժ քիչ։ Անձնավստահութիւնն և անձնանուիրութիւնը պիտի սորվեցնեն մարդուն իւր սեփական ջրամբարէն ջուր խմել, և իւր սեփական համեղ հացն ուտել, խղճի մտօք բան սորվիլ և աշխատիլ իւր ապրուստն հոգալու համար, և իրեն շնորհուած բնատուր բարիքներէն կարելի եղածին չափ օգուտ քաղել։»

«Աշխատէ՛, կ՚ըսէ Բնութիւնը մարդուն, ամէն ժամ, վարձքով կամ անվարձ, միայն թէ աշխատէ՛, և վարձատրութիւնն ինքնին կուգայ. փոյթ չէ թէ աշխատութիւնդ նուրբ ըլլայ կամ ոչ, թէ նա ցորեն սերմանելու՝ կամ դիւցազներգութիւններ գրելու մէջ կայանայ, բաւական է որ պատուաւորապէս կատարես զայն, և կարենաս անկէ գոհ մնալ. վստահ եղիր թէ նա նիւթական և բարոյական վարձատրութիւն մը պիտի բերէ քեզ։ Որ և իցէ լաւ աշխատութեան վարձատրութիւնը՝ զայն կատարած ըլլալն է (1)։»

Սըր Ուալթըր Սգօթ կը պատմէ թէ, մեծ կախարդը Միքայէլ Սգօթ, տեսաւ որ իւր չար Ոգւոյն դէմ չէր կրնար ուրիշ կերպով ինքզինք պաշտպանել բայց միայն անընդհատ գործ տալով անոր։ Առհասարակ ամէնուս համար ալ այսպէս է։ Պիղծ ոգին մարդու մը սրտէն վռնտուած՝ վերստին հոն կը դառնայ, և զայն պարապ գտնելով՝ հետն առած իրմէ աւելի չար եօթն ոգիներ դարձեալ հոն կը մտնէ (2)։

Ծուլութիւնն հանգստութիւն չկրնար համարուիլ։ Նա՛ և է աշխատութենէ աւելի յոգնեցուցիչ է։ Հռովմայ

---

(1) Էմէրսըն։ (2) Աւակ Քրիստոսի

ցիք առած մ'ունէին «Difficilis in otio quies (1)։»

Մի՛ շտապէք երբեք։ Բնութիւնը չշտապեր։ Առաջին պատուէրն որ Զուիցերիացի առաջնորդ մը կու տայ երիտասարդ վերելողներու immer langsam (2) երթալն է․ յամրաքայլ և հաստատաքայլ, կամ «ո՛րքան կամաց ելնուի, նո՛յնքան շուտ գագաթը կը հասնուի։» Առանց շատ արագ երթալու․ բայց նաև առանց սլքտալու, անշուշտ երբեմն կանգ առնելով։ Կեանքի մէջ ամէն տեսակ յառաջադիմութեան գաղտնիքն է երբեք չշտապել, բայց նաև երբեք չդանդաղիլ։ «Շտապը, կ'ըսէ արեւելեան առած մը, սատանային կողմանէ կու գայ, բայց համբերութիւնն երջանկութեան դուռը կը բանայ։»

Շատ մարդիկ կ'երեւի թէ կը կարծեն որ շտապելով ժամանակ կը վաստկուի։ Շատ մեծ սխալ մ'է այդ։ Լաւ է անտարակոյս աշխուժով շարժիլ․ բայց շատ աւելի կարեւոր է բան մը լաւ կատարել, քան թէ զայն հապճեպով լրացնել։

Ասկէ զատ, ինչ որ անկանոն կերպով և շտապով կը կատարուի, աւելի եւս ուժասպառ կ'ընէ և շատ աւելի մեծ ջանքի մը կը կարօտի, քան թէ մարդ յամրընթաց, հաստատաքայլ, կանոնաւորապէս, առանց շտապելու և անխռով գործէ։ Շտապն ոչ միայն գործը կ'աւրէ, այլ նաև կեանքը կ'աւերէ։

«Աշխատէ՛ առանց շտապելու և առանց հանգչելու,» Կէօթէի առածն այս էր․ թէպէտ և այս հանգչիլ բառը ճշդիւ իւր միտքը չբացատրեր։

Մ'շտապեր, չըլլայ թէ ո՛ եւ է յախուռն գործ մը գայ մտքիդ յառաջադիմութիւնն ընդ միշտ վտանգի ենթարկելու։
Լաւ խորհէ՛, և ուղիղը ճանչցիր․

---

(1) Դատարկութեան մէջ հանգչիլը դժուարին է։» (2) «Միշտ յամբաքայլ։»

Digitized by Google

*Այն ատեն անոր հետեւէ, և քու կարողութիւնդ հասկցիր․*
*Մ՚շտապեր, տարիներ չեն կրնար երբեք*
*Անխորհրդաբար կատարուած գործ մը փոխարինել ։*

*Մի՛ կասիր, կեանքն արագ կը սահի, կ՚երթայ․*
*Աշխատէ՛ և համարձակ եղիր, մինչ դեռ կ՚ապրիս․*
*Ետեւդ հզօր և վսեմ բան մը թող*
*Որ կարենայ ժամանակին յաղթել ։*
*Փառաւոր բան է մեր արտաքին ձեւերուն անհետանալէն յետոյ դարձեալ ապրիլ(1) ։*

*Հետեւաբար, ձեր բոլոր զօրութեամբ աշխատեցէք, մ՚աճապարէք․ մի՛ չփոթիք և մի՛ տագնապիք ։*

*Առտուն կանուխ արթնցէք․ ձեր ընդերներուն և ուղեղին պահանջած մարզանքն և հանգիստը տուէք․ ժուժկալ եղէք ձեր ճաշերուն մէջ, միշտ բաւականաչափ քնացէք, վայրապար մի՛ տագնապիք, և վստահ եղէք որ ձեր աշխատութիւնը պիտի չմնասէ ձեզ ։ Հոգեր և յուզմունք, անհամբերութիւն և նեղութիւն ձեր գործն յառաջ չեն մղեր, և կրնան վերջապէս ձեր մահուան պատճառ ըլլալ, կամ գոնէ ծանր հիւանդութեան մ՚ենթարկել զձեզ ։ Բայց եթէ հանդարտ և խաղաղ կեանք վարէք, իմացական աշխատութիւնն և խորհրդածութիւնը ճիշդ նոյն բանը պիտի ըլլան ձեր մտքին համար՝ ինչ որ են մարզանքն և թարմ օդը մարմնոյն համար ։*

*Ինչ որ ալ ըլլան ձեր պարտաւորութիւնք կամ զբաղմունք, ջանացէ՛ք կարելի եղածին չափ լաւ կատարել զանոնք ։*

*Ուէլլինկթընի դքսին յաղթութեանց պատճառն որքան որ իւր զօրավարի տաղանդը՝ նո՛յնքան ալ իւր գործի մարդ իւր ունեցած յատկութիւններն եղած են ։ Նա վերջին աստիճան ուշադիր էր սնունդի և ապրուստի բոլոր մանրամասնութիւններուն․ իւր ձիերուն ուտելիքն*

(1) Կէօթէ ։

Digitized by Google

առատ էր, իւր զօրքերը միշտ լաւ զգեստներ, ընտիր կօշիկներ և պատուական կերակուր ունէին։

«Իւր գործին մէջ ժիր մարդ մը կը տեսնե՞ս, նա թագաւորներու առջև պիտի կենայ,» կ'ըսէ Սողոմոն, և Պօղոս առաքեալ կ'ըսէ. «Ջանքի մէջ թուլասիրտ չըլլաք, հոգւով բորբոքեցէ՛ք, Տիրոջը ծառայեցէ՛ք։»

Աշխատասիրութիւնը միշտ հետը կը բերէ իւր վարձատրութիւնը։ Գոլոմբոս Հնդկաստան երթալու արեւմտեան անցքը փնտռելու ատեն Ամերիկան գտաւ։

«Ձեր պարտաւորութիւնը կատարելու առաջնորդութիւն ունեցէ՛ք, կ'ըսէ Ֆրանգլին, և ինչ որ կատարել առաջադրէք՝ անվրէպ կատարեցէ՛ք։»

Ոմանք կը կարծեն թէ հանճարը կրնայ աշխատութեան պակասը լրացնել։ Շատ սխալ կարծիք մ'է այդ։ Նոյն իսկ ամէնէն աւելի ի բնէ օժտուած մարդիկ աշխատութեամբ միայն բանի մը կը յաջողին. մեծամեծ հանճարներ յաւէտ ջանասիրութեամբ յաջողած են կեանքի մէջ քան թէ իրենց բնատուր ձիրքերուն շնորհիւ։

Տարակոյս չկայ թէ ոմանք ուրիշներէ շատ աւելի օժտուած են։ Բայց եթէ երկու տարեկից մարդիկ միեւնոյն ասպարէզին հետեւին, այն որ՝ ամենափայլուն կարողութեանց տէր ըլլալովն հանդերձ չկարենայ զանոնք աշխոյժ և կանոնաւոր կերպով գործածել, անպատճառ պիտի տեսնէ թէ շատ ետ կը մնայ իւր մրցակցէն, որ թէև նուազ օժտուած՝ բայց ջանասէր և սկզբունքի տէր է։ Աշխատութիւնն առանց հանճարի աւելի ապահով կրնայ գործ մ'ի գլուխ հանել, քան թէ հանճարն առանց աշխատութեան։ Կեանքի մէջ ո՛չ ո՛ և է առաւելութիւն, ո՛չ տաղանդ, ո՛չ հարուստ բարեկամներ կամ հզօր յարաբերութիւններ կրնան աշխատասիրութեան պակասը լրացնել, և նկարագրի թերութիւնները փոխարինել։

Լինգոլնի եպիսկոպոս և մեծ պետական մարդ Կրօ-



Digitized by Google

ըլթէսմ ծոյլ եղբայր մ'ունէր, որ եկաւ օր մ'իրմէ խնդրելու որ նշանաւոր մարդ մ'ընէ զինքն։ «Եղբայր, ըսաւ եպիսկոպոսն, եթէ արօրդ կոտրած է, նորոգել տամ, եթէ եզդ սատկի՝ ուրիշ մը գնեմ քեզ, բայց չեմ կրնար զքեզ նշանաւոր անձ մ'ընել. ես երկրագործ գտայ զքեզ, և կը վախնամ որ մինչև վերջն երկրագործ պիտի մնաս։»

Միլդըն ո՛չ միայն հանճարեղ մարդ մ'էր, այլ նաև անխոնջ աշխատող մը։ Նա իւր սովորութիւններն հետևեալ կերպով կը յայտնէ. «Ձմեռն յաճախ ղանգակի հնչիւնն զմարդ աշխատութեան կամ աղօթքի համար արթնցնելէն շատ առաջ, իսկ ամառն առաջին երգեցիկ թռչունին հետ, կամ քիչ յետոյ, կ'սկսիմ լաւագոյն մատենագիրներու գործերը կարդալ, և կամ զանոնք բարձրաձայն կարդալ կուտամ, մտադրութիւնս պատրաստելու կամ յիշողութիւնս զարգարելու համար. յետոյ խըղճամիտ և վեհանձն աշխատութեամբ մը՝ որ առողջութիւն և տոկունութիւն կուտայ մարմնոյն, աշխոյժ, հաւատարիմ և յօժարակամ հնազանդութիւն մը կ'ընծայեմ մտքիս, Աստուծոյ ծառայելու և ծննդավայրիս օգտակար ըլլալու համար։»

Ձեր աշխատութիւնն իբր ձանձրալի պարտաւորութիւն մը մի՛ նկատէք։ Զայն չահեկան ընելը ձեզմէ միայն կախում ունի։ Յօժար սրտով կատարեցէ՛ք զայն. ձեր զբաղումի նիւթին բոլոր դժուարութեանց յաղթեցէ՛ք. քննեցէ՛ք անոր բոլոր պատճառներն և ամբողջ պատմութիւնն, և անոր ամէն կողմերն ուսումնասիրեցէ՛ք. մտքերնիդ բերէք այն ամէն բարիքներն որ կրնան նոյն իսկ ամէնէն համեստ աշխատութենէ մը յառաջ գալ, և այն ատեն պիտի տեսնէք թէ ո՛ և է պարտաւորութիւն արժանի է ձեր եռանդը չարժելու։ Եւ վերջապէս պիտի սիրէք ձեր աշխատութիւնն, և եթէ հաճութեամբ

Digitized by Google

կատարէք, դիւրաւ ի գլուխ պիտի հանէք զայն։ Նոյն իսկ եթէ այս ի սկզբան անկարելի թուի, և եթէ ձեր աշխատութիւնը տաժանելի երեւի ձեզ, կրնայ ըլլալ սակայն որ աղէկ մեծ օգուտ մը քաղէք. լեռնային առողջարար հովի մը պէս, աշխատութիւնն ալ ձեր նկարագիրը պիտի զօրացնէ։

Կարեւոր խնդիր մ՚է որոշելը թէ մ՚րքան ժամանակ հարկ է քունի յատկացնել։ Պէտք է որ բնութիւնն որոշէ զայդ։ Կազմուածքներ կան որ շատ քնանալու պէտք ունին։ Բնութեան պահանջած քունի քանակութիւնը նուաղեցնելն անխոհեմութիւն է։ Հանգիստ քնով անցած ժամանակն երբեք կորսուած չհամարուիր։ Սքանչելի կազդուրիչ մ՚է նա ջղային զօրութեան, զոր քաղաքներու մէջ ապրողներն երբէք պէտք եղածին չափ չեն վայելեր։

Սըր Ե. Գօգի որոշած օրական ժամանակացոյցն հետեւեալն էր.

Վեց ժամ քունի համար, վեց ժամ ալ իրաւաբանութեան ուսման համար.
Չորս ժամ աղօթքի համար. իսկ միւս ժամերը Բնութիւնը դիտելու համար։

Սըր Ո. Ճօնս այդ ժամանակացոյցը սապէս ձեւափոխեց.

Վեց ժամ իրաւաբանութեան համար, եօթը ժամ ամոքիչ քունի համար,
Տասը ժամ աշխարհային գործերու՝ և բոլորն Երկնքի համար։

Վեց կամ եօթը ժամը բաւական չթուիր ինձ։ Կատարելապէս կայտառ արթննալու համար, պէտք է բաւականաչափ քնանալ։

Մեր տրտմութեան օրերուն, այն ամէն զբաղում որ մեր մտածութիւնը մեր անձէն հեռու կը դարձնէ, մեծ սփոփանք մը կը համարուի։

Digitized by Google

«Կեանքի երջանկութիւնը՝ միշտ կատարելու գործ մը, սիրելու առարկայ մը և յուսալու բան մ'ունենալու վրայ կը կայանայ(1)։» Ճշմարիտն ըսելով, շատ անգամ մեր անզբաղ ժամերուն մէջ մենք չնչին երկիւղներով և անօգուտ հոգերով զմեզ կը նեղենք։ Ուստի միշտ բանով մ'զբաղեցէ՛ք։

Այսպէս պիտի գտնես աշխատութեան և խորհրդածութեան մէջ
Խաղաղութիւն՝ զոր տրտմութիւնը չկրնար քեզի ընծայել(2)։

«Ամէն տեղ, կ'ըսէ ծերունին Լիլի, ծննդավայր մ'է իմաստունին համար, և ամէն բնակարան ապարանք մ'է հանդարտ միտք ունեցողին համար։»

Այլ սակայն Բնութեան օգնութեամբ աշխատեցէք, և ո՛չ թէ անոր հակառակ։ Հոսանքին ի վեր ելնել մի՛ ջանաք, առանց սոխպուած ըլլալու, ինչ որ երբեմն կը պատահի։ Եւ այդ պարագային, հաստատամտութեամբ ելէք. բայց ընդհանրապէս Բնութիւնն օգնութեան կը հասնի մեզ, եթէ իրեն չհակառակինք։

«Վասն զի ինչպէս որ է Բնութենէ վեր եղող ամէն բանի մէջ, նոյնպէս է նաև Բնութեան մէջ. ով որ Բնութեան օրէնքներէն մին կ'անարգէ, զամէնքը մէկէն անարգած կ'ըլլայ։ Այն ատեն բոլոր տիեզերք անոր դէմ կը զինուի, և ամբողջ Բնութիւնն իւր անհամար և անչմարելի զօրութիւններով կը պատրաստուի, անկէ և անոր բոլոր սերունդէն վրէժ լուծելու համար, առանց զգացնելու թէ ե՛րբ և թէ ո՛ւր։ Իսկ ով որ իւր բոլոր սրտով և բոլոր մտքով Բնութեան ամէն օրէնքներուն կը հնազանդի, աղոնց ամէնքն ալ իւր օգտին համար իրեն աշխատակից պիտի ունենայ։ Նիւթական տիեզերք հետ հաշտ պիտի ըլլայ։ Արեւն իւր գլխուն վերև՝

(1) Տր. Շէլմըրս։ (2) Սթիրլինկ։

հողն իւր ոտքերուն ներքև իրեն օգնութեան պիտի համնին․ վասն զի նա կը հնազանդի այն Գերագոյն էակին կամքին որ արեւն և հողն և զամէն բան ստեղծեց․ և որ օրէնք մը դրաւ անոնց զոր ոչ ոք կրնայ դրժել([1])։»

## ԳԼՈՒԽ ԺԲ․

## ՀԱՒԱՏՔ

«Այն հրաշալի աշխարհն որուն մէջ այժմ կ'ապրինք, կ'ըսէ Կանոնիկոս Լիտտօն, անհամար և վսեմ գաղտնիքներու տաճար մ'է, հաւատքի բարձրագոյն աշխարհը մեզի բաց ըլլայ կամ ոչ։ Թերեւս վաղը, կէս օրէ յետոյ, գիւղը չրջագայութեան պիտի ելնէք, ամէն կողմ ծիլերն որ հիւթով կ'ուռին, կամ նոր բացուող տերեւներու անուշ կանաչ գոյնը պիտի յիչեցնեն ձեզի թէ գարունը կը պատրաստուի իւր տարեկան յաղթանակին հրաշալի տեսարանը ձեր աչքերուն առջեւ պարզելու։ Ձեր չուրջ ամէն կողմ այնպիսի խորհրդաւոր կարողութեան մը գոյութեան և գործունէութեան ապացոյցներ կան, զոր ո՛չ կրնաք տեսնել, ո՛չ չօչափել, ո՛չ մեկնել, ո՛չ չափել և ո՛չ ըմբռնել։ Այն կարողութիւնը գոյութիւն ունի անձայն, աննչմուկ, անտեսանելի, բայց գործունեայ, ամէն մէկ ճիւղի մէջ՝ ձեր գլխուն վերեւ, և ամէն մէկ խոտի չիւղի մէջ՝ ձեր ոտքերուն ներքեւ։»

---

([1]) Թինկըլի։

Digitized by Google

*Տարակոյսն արդարեւ իմաստասիրութեան հիմն իսկ է։ Խորհրդաւոր աշխարհի մը մէջ կ'ապրինք, եւ եթէ անկարող ենք ամենապարզ ծաղկին կամ փոքրիկ միջատին էութիւնը մեկնելու, ի՞նչպէս կրնանք յուսալ թէ անհունը պիտի կրնանք ըմբռնել։ «Գիտենք, կ'ըսէ Տր. Մարդինօ, թէ անջրպետն եւ լռութիւնն Յաւիտենականին ստորոգելիններն են, եւ երբ որ իրիկուան ցօղն օրուան հոգերուն բարձրացուցած փոշին կ'իջեցնէ, եւ ՝թէ տեսութիւնն օրուան մանրադիտական անձկութիւններէն յոգնած՝ դէպ ի խորհրդածութեան ընդարձակ անջրպետները կ'ուղղուի, երբ որ երկիրն անապատի մը պէս կը նիջէ աստեղազարդ անհունին ներքեւ, անմեկնելի ներկայութիւնը դեռ զմեզ կը պարփակէ, եւ զմեզ կը դողացնէ իրիկուան խիստ հովին ներքեւ, եւ երկնքի վաղեմի լոյսերով իւր նայուածքը մեր աչքերուն մէջ կ'արձակէ։»*

*«Մարդկային էութիւնը, կ'ըսէ Ց. Ստուարդ Միլ. նախ գաղտնիքներով շրջապատուած կը ներկայանայ, մեր փորձառութեան նեղ շրջանակը կղզեկի մը պէս է անհուն ծովի մը մէջ, որ մեր զգացմունքը կ'ահաբեկէ, եւ միանգամայն մեր երեւակայութիւնը կը դրդէ իւր անհունութեամբ եւ իւր մթութեամբ։ Ինչ որ աւելի եւս անթափանցելի կ'ընէ գաղտնիքն, այն է որ մեր աշխարհային էութեան ստացուածը կղզեակ մը չէ միայն անհուն անջրպետին մէջ, այլ նաեւ անհուն ժամանակին մէջ։»*

*Բայց թէեւ միակերպ բռնադատուած ըլլայ մարդ տգիտութեան մէջ մնալու եւ իւր կարծիքն առկախ թողլու, պէտք չէ սակայն որ վհատի։*

*Ներքնապէս շատ բանի կը համոզուինք զոր չենք կրնար բացատրել։ «Եթէ հարցնէք ինձ, կ'ըսէ Ս. Օգոստինոս, թէ ի՞նչ է ժամանակը, չեմ կրնար ձեզ պատասխանել. բայց կատարելապէս գիտեմ զայն, եթէ չհարցնէք ինձ։»*

Digitized by Google

«Որոնք որ չափազանց շատ բան կ'ըսեն ինծ Աստուծոյ բնութեան վրայ, որ ամէն բանի մէջ Անոր պատճառն ու Անոր խորհուրդները ճանչցողի պէս կը խօսին ինծ, որ երբեք դժուարութիւն չեն կրեր իւրաքանչիւր կազմութեան պատճառը մեկնելու, և իւրաքանչիւր դիպուածի քաղցր ողորմութիւնն յայտնելու, որ կը գովեն Ամենակարողին իմաստուն մատակարարութիւնը, զոր կը ջատագովեն, իբր արտաքոյ կարգի հանճարի գլուխ գործոց մը, որ իբր մտերիմ ազատ համարձակ և հաստատաքայլ կը շրջին Նախախնամութեան մեծաշուք բացատաններուն մէջ, անոնք նոյն իսկ իրենց մեկնութեանց վճռականութեամբ՝ տարակուսի անհուն տագնապի մը մէջ կը թողուն զիս, և կ'ստիպեն զիս գոչելու. «Քիչ բան հարցուցէք ինծ և ամէն բան կուտամ ձեզ[1]։»

Գաղտնիքներու մէջտեղը, կ'ըսէ Հէրպէրտ Սբէնսըր, որոնք ա՛յնքան աւելի խորհրդաւոր կը դառնան ո՛րքան որ անոնց վրայ խորհինք, պիտի գտնուի միշտ սա բացարձակ ստուգութիւնը թէ, մարդ Անհուն և Յաւիտենական Զօրութեան մ'առջեւ է, որմէ կը բղխի ամէն բան։»

Ուստի պէտք է որ զգալով բաւականանանք. երբեք պիտի չկարենանք զամէն բան մեկնել։

«Աստուծոյ Թագաւորութիւնը, կ'ըսէ Ճէքէմի Թէյլըր, խօսքերու մէջ չկայանար, այլ զօրութեան մէջ, Բարեպաշտութեան զօրութեան մէջ։»

Հանգանակն և Հաւատքն իրարմէ տարբեր բաներ են։

Ըսէ ինծ հոգիս, ո՞րն է քեզի կարեւորն,
Հաւատքը՝ թէ Հանգանակը միայն։

Շատ անգամ գիտութեան մարդիկը կը պարտուին իբր թերահաւատ. այլ սակայն, ինչպէս որ Թօրոյ կ'ըսէ.

---

(1) Տր. Մարդինօ։

«Ստուգիւ աւելի հաւատք կայ գիտութեան մէջ, քան թէ գիտութիւն հաւատքի մէջ։»

Բայց գիտութեան մարդն որ կը տարակուսի, հեգնելու դիտաւորութիւն չունի երբէք. իւր տարակոյսն ոչ թէ արհամարհութեան՝ այլ յարգութեան արտայայտութիւնն է։ Ինչպէս որ Թէննիսըն շատ լաւ ըսած է.

Իւր հաւատքին մէջ երկբայող, բայց իւր գործերուն մէջ ողջախոհ,
Վերջապէս իրերու խորը ներդաշնակութիւն մը կը գտնէ,
Հաւատացէք ինծ, աւելի հաւատք կայ պատուաւոր տարակուսի մէջ,
Քան թէ հանգանակներու մեծագոյն մասին մէջ։

Ներուի ինծ իբր օրինակ մէջ բերել այնպիսի անձի մը կարծիքն, որ արժանապէս կը ներկայացնէ իւր դասակարգն։ «Երբ որ կը ջանամ, կ'ըսէ Բրօֆ. Դինտօլ, նիւթական անձնաւոր կամ անանձնաւոր ձեւ մը տալու այն կարողութեան որ տիեզերքի մէջ ինքզինք կը յայտնէ, նա միշտ ո՛ և է իմացական բացատրութենէ խոյս կուտայ։ Անոր վրայ խօսելու ատեն, չեմ համարձակիր Նա անձնական դերանունը գործածել. չեմ համարձակիր զինքն Հոգի մ'անուանել, նաեւ չեմ ուզեր զինքը պատճառ մը կոչել։ Իւր էութեան խորհուրդը կ'ընկճէ զիս։»

Աստուածաբանք կը ջանան ի հարկէ ամէնուն հասկընալի լեզուաւ մ'իրենց միտքն յայտնել։ Զայն բառական իմաստով հասկնալն անոնց դէմ անիրաւութիւն մը պիտի համարուէր։ Երբ որ բանաստեղծք «արեւուն ծագման» վրայ կը խօսին, չենք մեղադրեր զիրենք թէ աստեղագիտութիւն չեն գիտեր, և չենք կրնար երբեք իբր «հերետիկոս» դատապարտել զՇէքսբիր կամ զԹէննիսըն, թէ կը հաստատէ որ արեւը չէ՝ այլ երկիրն է որ կը դառնայ։ Գիտութեան գուշակութիւնք յատուկ լեզու մը կը պահանջեն, և ըստ որում առանց նոր բառեր հնարելու չենք կրնար ծաղիկ մը կամ քար մը նկարագրել, պէտք

Digitized by Google

ներքնապէս համոզուինք թէ անկարելի է մարդկային լեզուով Անհունը մեկնել։ Ուստի զարմանալու չենք թէ կարգ մը երեւոյթներ որք այսօր գիտենք թէ ջղային հիւանդութիւններէ յառաջ կու գան, ժամանակաւ չար ոգիներու ներկայութեան կը վերագրուէին։

Բացատրելը կամ հասկնալը ձեզ համար անկարելի եղած բանին հաւատալու մէջ արժանիք չկրնար ըլլալ։ Առանց բացայայտ ստուգութեան, իրողութեան մը հաւատալու՝ կամ զմեզ համոզելու մէջ թէ այնպիսի բանի մը կը հաւատանք զոր չենք հասկնար, բնաւ արժանիք չկրնար ըլլալ։ Կարելի չէ նաեւ հաւատալ բանի մը՝ որն որ գիտենք թէ ո՛ և է կատարեալ ճշմարտութեան մը վրայ չէ հիմնուած։ Ընդհակառակը, մեր պարտաւորութիւնն է հաւատալ միմիայն այն բանին որ վստահ ենք թէ ճշմարիտ է, և անկէ զատ ամէն բանի համար մեր կարծիքն անկախ թողուլ։ Շատ մարդիկ թուի թէ կ'ենթադրեն որ ստիպուած են ամէն բանի կամ հաւատալու և կամ չհաւատալու։ Այլ սակայն շատ անգամ բանաւոր պատճառներ չունինք ոչ հաւատալու և ոչ չհաւատալու համար։

Ճշմարիտ հաւատքն երբեք իմացական բան չէ։ Մեզի հրամայուած հաւատքը կենդանի հաւատք մ'է, և հաւատքն առանց գործերու՝ մեռած է։ Ճշմարիտ հաւատքն ստուգիւ հրաշալիք կը գործէ։ «Հաւատք երկնային, կ'ըսէ Շաթօպրիան, հաւատք մխիթարիչ, դու լեռները տեղափոխելէ աւելին իսկ կ'ընես, դու կը վերցնես այն ընկճող բեռներն որք մարդուն սրտին վրայ կը ծանրանան։» Սէլտըն հաւատքն և գործերը ջերմութեան և լոյսի հետ կը բաղդատէ. «Կրնամ մտքովս զանոնք իրարմէ բաժնել, ճիշդ ինչպէս որ գիտեմ թէ ճրագի մը բոցին մէջ լոյս և ջերմութիւն իրարու միացած են. փչեցէ՛ք սանոյն ճրագին վրայ և ադոնց երկուքն ի միասին կ'ան-

Digitized by Google

հետամնան։» Երբայեցւոց ուղղուած Թուղթին սքանչելի տասն և մէկերորդ գլխուն հաւատքի ակնարկութիւնները գործերու համար են։ Հաւատքով՝ Աբէլ իւր զոհը մատոյց, հաւատքով՝ Նոյ տապանը շինեց, հաւատքով՝ Աբրահամ իւր ծննդավայրէն ելաւ։ Կ'ենթադրուի թէ ամէնքն ալ բաւական պատճառ ունեցած են թէ՛ հաւատալու և թէ՛ գործելու։ Սակայն մեր պարտաւորութիւններէն մին, բայց՛ ո՛չ թէ ամէնէն դիւրինը, մեր կարծիքն առկախ թողուլն է, ամէն անգամ որ ստուգութիւնն անբաւական թուի մեզ։ Շատ պարագաներ կան որոց մէջ երկբայութիւնն, եթէ առաքինութիւն մը չէ, ստուգիւ պարտաւորութիւն մ'է։

Մեր փոքրիկ կազմութիւններն իրենց օրն ունին.
Իրենց կարճատեւ օրն ունին և գոյութենէ կը դադրին,
Անոնք քու աղօտ նշոյլներդ են միայն,
Իսկ դու, ո՛վ Տէր, անոնց ամէնէն աւելի մեծն ես[1]։

Ճշմարտութիւնը մեզմէ ծածկող քօղը տակաւ առ տակաւ կը վերնայ, բայց դեռ անհամար խնդիրներու մասին պէտք է որ առ այժմ տգէտ մնալով բաւականանանք։

«Իբրեւ մարդ մեր երջանկութիւնը պէտք է որ մեր անկատար ծանօթութիւն ունենալով գոհանալէն կախումն ունենայ, նոյն իսկ այն նիւթերու վրայ որք ուղղակի մեզի հետ վերաբերութիւն ունին։» Կեանքի մէջ մեր բոլոր հաճոյքն և ազդու կերպով գործելու յաջողութիւնը թանձր ամպի մը մէջ մեր ապրելու և շնչելու կարող ըլլալէն կախումն ունի. անոր տեղ տեղ բացուիլը տեսնելով բաւականանանք, և ուրախանանք անոր պատառուածներուն մէջէն երբեմն հաստատուն և իրական բաներ նշմարելով։ Եւ հասկնանք թէ զմեզ շրջապատող այդ

(1) Թէնիսըն։

Digitized by Google

միութեան մէջ իսկ վսեմութիւն մը կայ, և երախտագէտ ըլլանք այն բարերար քօղին համար, առանց որոյ չափազանց լոյսը կրնար զմեզ այրել, կամ անհուն պայծառութիւնը կրնար զմեզ յոգնեցնել (1)։

Վասն զի ինչպէս որ Բրօֆ. Հըգսլի կ'ըսէ. «Ով որ միտքը բերէ այն բանը զոր Քրիստոնէութեան լուսափայլ կողմն անուանել պիտի համարձակիմ — այն արիութեան մտատիպարը, իւր զօրութեամբ և իւր համբերութեամբ, մարդկային տկարութեան համար իւր արդարութեամբ և իւր գթութեամբ, անձնազոհութեան աստիճան իւր օգնութեամբ, իւր բարոյական անբծութեամբ և ազնուութեամբ, զոր առաքեալք նկարագրած են մեզ, և որուն մէջ իրենց անյողդողդ հաւատքը դրած են այնքան նահատակներ—երբէք իւր արժանիքէն նուազ պիտի չգնահատէ Քրիստոնէական հաւատքին կարեւորութիւնն իբրև սատար մը մարդկային ազգին պատմութեան մէջ։»

Ս. Մարկոս կ'ըսէ թէ, դպիրներէն մին Քրիստոսի մօտենալով հարցուց թէ ո՞րն է առաջին պատուիրանն։ Եւ Յիսուս պատասխան տուաւ անոր. «Ամէնէն առաջինը, լսէ՛ Իսրայէլ, մեր Տէր Աստուածը՝ մէկ Տէր մըն է. Եւ պիտի սիրես քու Տէր Աստուածդ քու բոլոր սրտովդ, քու բոլոր անձովդ, քու բոլոր մտքովդ և քու բոլոր զօրութեամբդ. առաջին պատուիրանն այս է։ Եւ երկրորդն ասոր նման է. պիտի սիրես քու ընկերդ՝ քու անձիդ պէս. ասոնցմէ մեծ ուրիշ պատուիրան չկայ։» Եւ դպիրը կ'ըսէ անոր. շատ աղէկ, վարդապե՛տ, ճիշդ ըսիր թէ Աստուած մէկ է, և իրմէ ուրիշ չկայ, և զայն բոլոր սրտով, բոլոր զօրութեամբ և բոլոր մտքով սիրելն, և ընկերն իւր անձին պէս սիրելն ողջակէզներէ և զոհերէ

---

(1) Րըսքին։

Digitized by Google

աւելի է։ Եւ Ցիսուս տեսնելով որ իմաստութեամբ պատասխանեց՝ կ'ըսէ անոր. «Դու Աստուծոյ արքայութենէն հեռու չես։»



## ԳԼՈՒԽ ԺԳ.

# ՅՈՅՍ

Շատ անգամ լսած եմ ոմանց զարմանք յայտնելը թէ Ցոյսն ալ առաքինութեանց կարգը դասուած է Հաւատքի և Սիրոյ հաւասար։ Կ'ենթադրուի թէ Հաւատքն առաքինութիւն մ'ըլլայ, և Սէրն արդէն յայտնապէս առաքինութիւն մ'է, բայց Ցոյսն, ինչո՞ւ արդեօք առաքինութիւն համարուի։ Վասն զի, քանի որ յուսահատիլը գէշ բան է, ուրեմն յոյսն ալ առաքինութիւն մ'է։ Համբերութիւնն և յամառութիւնն յոյսը կ'ենթադրեն, և համբերութիւնը դերազանց ապացոյց մ'է նկարագրի, քան ո՛ և է դիւցազնական առանձին գործ, ո՛րքան ալ ազնիւ որ ըլլայ։ Մէկէ աւելի անձնանուէր և տարաբաղդ կին մը ճշմարիտ նահատակ մ'է։

Իրերը շատ հոգ մ'ընէք։ Ոչ ոք իրապէս անյաջող կ'ըլլայ կեանքի մէջ եթէ չվհատի։

Սիտնէյ Սմիդ զինքն յատկանշող զուարճալի ողջմտութեամբ, շատ լաւ ըսած է թէ, աշխարհի մէջ եթէ լաւ գործ մը կատարել կ'ուզենք, «պէտք չէ որ սարսռալով ափունքին վրայ կենանք, ցուրտն և վտանգը մտաբերելով, այլ պէտք է համարձակ ջուրին մէջ նետուինք և աղէկ կամ գէշ անոր մէջէն անցնինք։» Զարմանալի է թէ մարդիկ քիչ անգամ իրական վտանգներէ կը վախ

Digitized by Google

նան ; երեւակայական վտանգները շատ աւելի երկիւղ կը պատճառեն իրենց ։ Զոր օրինակ, անտեղի երկիւղ մ'ունին ծաղրելի ըլլալէ ։

Երբեք սնոտի երկիւղի մը տեղի մի՛ տաք ։

Պետրոս առաքեալ անվեհեր ընդդիմացաւ Փարիսեցիներուն, բայց Քահանայապետին սպասաւորաց հեգնութիւններուն չկրցաւ դիմանալ ։

Իր վիճակէն գոհ չեղող մարդը պարտի ինքնիրեն հարցնել թէ որ՛ հետ յանձնառու պիտի ըլլար իր ճակատագիրը փոխանակել ։ Այնպիսին չկրնար յուսալ ա՛յս ինչ անձին առողջութիւնն, ա՛յն ինչ անձին հարստութիւնն և կամ երրորդի մ'ընտանեկան երջանկութիւնը ձեռք անցընել ։ Եթէ նա իր կեանքէն դժգոհ է, հարկ կ'ըլլայ որ ադոր ամէն բանը փոխէ և կամ զայն եղածին պէս թողու ։

Գօլէրիճ, դժբախտութենէ ընկճած կը գրէր առ Սըր Հըմֆրի Տէյվի, «բոլոր այս փոփոխութեանց, այս նուաստութեանց և այս երկիւղներու մէջ, Յաւիտենականին զգացումն անեղծ կը մնայ իմ ներսի դիս, և աննուաճ կը պահէ իմ այն հաստատ հաւատքս թէ ի՛նչ տառապանք որ կը կրեմ բարիք կը պարունակէ ինձ համար ։»

Ուստի երբեք յուսահատութեան մի՛ մատնուիք ։ Հին առած մը կ'ըսէ, «եթէ սիրտը յուսալու համար եղած չըլլար կը պայթէր» ։ Ամէն բան կրնայ փոխարինուիլ, բաց ի յուսահատութենէ ։ «Վա՜յ անոր որ յուսահատ է», կ'ըսէ Յեսու, որդի Սիրաքայ ։

«Մեր ճակատագրին հանդուրժելն անոր յաղթել է[1]։»

Ամէն մարդ կը սխալի ։ Ով որ երբեք չսխալիր, երբեք չկրնար բան մ'ընել, ըսուած է իրաւամբ ։ Բայց պէտք չէ կրկին անգամ միեւնոյն սխալը գործել ։ Ձեր սխալները դասեր ըլլան ձեզ․ և այդ կերպով սանդուխ

(1) Գամբպէլ։

Digitized by Google

*մը պիտի կազմեն անոնք զձեզ լաւագոյն կեանքի մ'առաջնորդելու համար։*

*Յովսէփ Հըմ կ'ըսէր թէ լաւագոյն կը համարէր զուարթ բնաւորութիւն մ'ունենալ, քան թէ տարեկան* 250,000 *ֆրանքի եկամուտ։*

*Գործի համար, ներկայն յոյժ կարեւոր է։ Բայց կերպով մը լաւագոյն՝ և աւելի խոհեմութիւն է անցեալին և ապագային մէջ ապրիլ։ Կեանքի մէջ շատ դժբախտութեանց պատճառն այն եղած է որ ապագայն ներկային՝ այսինքն ապագայ տարիներու երջանկութիւնը մէկ վայրկեանի գոհացումին զոհ ըրած ենք։ Անտարակոյս լաւագոյն է մէկ թռչուն ունենալ ձեռքին մէջ, քան թէ երկու՝ անտառին մէջ. վասն զի կրնայ ըլլալ որ անտառին մէջի թռչունը վանդակիդ մէջ չգայ. բայց ապագան, ընդհանրապէս, ապահովաբար պիտի գայ. և ամէնէն երջանիկ մարդիկն անոնք են «որոց հաճոյքն յիշատակի մէջ է, և փառասիրութիւնն՝ երկինքի մէջ* (1)։»

*Երբեք շատ սխալած չենք կրնար ըլլալ միշտ ապագային վրայ խորհելով, վասն զի «մարդ պիտի լքանէ Անցաւորն և Կորնչելին, որոց չկրնար երբեք կցորդել Ճշմարիտ Կեանքն, և Յաւիտենականն, իւր բոլոր Բարիքներովն, իւր վրայ պիտի իջնէ և իւր մէջ պիտի բնակի։»*

*Պէտք էր որ մարդ, ամէն բանէ աւելի, կը համարձակիմ ըսել, առնական ըլլար, և*

*Գործելու կամք և համարձակելու հոգի* (2)

*ունենար։*

*Արիութիւնն առաքինութիւն մը չէ միայն, առնական նկարագրի կենսական մէկ մասն է։ Ճշմարիտ այր մը*

---

(1) *Րըսքին։* (2) *Սգօդ։*

*պարտի արիասիրտ ըլլալ, ինչպէս որ ճշմարիտ կին մը պարտի հեզահամբոյր ըլլալ. բայց աւելորդ է ըսել թէ այրը պարտի ա՛յնքան հեզահամբոյր ըլլալ որքան որ արիասիրտ, և կինն ա՛յնքան արիասիրտ՝ որքան որ հեզահամբոյր։*

*Յանդգնութիւնն արիութիւն չէ։ Արիութիւնը վտանգն արհամարհելու մէջ չկայանար. այլ հաստատամտութեամբ անոր յաղթելու մէջ։ Պէտք չեղած ատեն ինքզինք վտանգի ենթարկելն արիութիւն չհամարուիր. բայց վտանգի մէջ՝ երկչոտութիւնը կրնայ զայն աւելի եւս ծանրացնել. անխռով և աներկիւղ անոր դիմադրելն աւելի ապահով միջոց մ'է անկէ ազատելու համար։*

*«Իրերն յոյժ զարհուրելի երեւցնելու համար, կ'ըսէ Պըրք, կարծես թէ ընդհանրապէս մթութիւնն անհրաժեշտ կը դառնայ։ Երբ որ վտանգի մը ճիշդ ծաւալը կը նշմարենք, երբ որ մեր աչքերն անոր կը վարժուին, մեր երկիւղին մեծագոյն մասը կը փարատի։»*

*Ուստի հանդարտ և արիասիրտ ըլլանք։*

*Չափէն աւելի բան մի՛ յուսաք։ «Քիչ բան յուսալ և շատ բան վայելել գիտնալը, կ'ըսէ Կէօթէ, կեանքի մէջ յաջողութեան գաղտնիքն է։»*

*Ուստի, չափէն աւելի բան մի՛ յուսաք, և համբերող եղէք։ «Համբերել գիտցողին ամէն բան ժամանակին կուգայ»։ Կեանքի մէջ ամէնէն մութ ստուերներն անոնք են զորս մարդ ինքն իւր լոյսին մէջ կենալով կը յօրինէ։ Ինչ որ ալ ըլլայ, արդէն պէտք է որ մաքերնիս դնենք թէ շատ վիշտեր պիտի ճանչնանք, և պէտք է վարժուինք արիութեամբ անոնց հանդուրժելու։*

*«Ձեր տրտմութեան վայրկեաններուն մէջ, կ'ըսէ Րիխդըր, երջանկութեան զուարթ ժամերն յիշեցէք։»*

Գիտցէք թէ որքան վսեմ բան է
Տառապիլ և տոկալ։

Digitized by Google

Մեր կեանքն ո՛րքան տխուր որ երեւի, պէտք է յիշենք թէ ժամանակն յուեգոյն տրտմութիւններն իսկ կը մեղմացնէ։ «Տրտմութիւնը կրնայ գիշեր մը տեւել, բայց ուրախութիւնն առաւօտուան հետ կուգայ։»

«Լռէ, տրտում սիրտ, և տրտնջելէ դադրէ.
Ամպերուն ետին արեւը դեռ կը շողայ.
Քու բախտդ ալ ամէնուն բախտն է,
Իւրաքանչիւր կեանքի մէջ պէտք է որ անձրեւոտ ժամեր գտնուին,
Եւ քանի մ'օրեր ալ տխուր և մթագին ըլլան (1)։»

Եթէ այնպիսի դիպուած մը պատահի որ դժբախտութեան պէս երեւի ձեզ, ճիշդ այնպէս կարծելէ առաջ ստուգեցէ՛ք զայդ։ Արտաքին երեւոյթները շատ անգամ խաբէական են. չնչին պատճառներով վհատիլը ներելի եղող աշխարհի մը մէջ չենք ապրիր։ Բան մը չփորձած՝ չենք գիտեր թէ ի՛նչ բանի մէջ կրնանք յաջողիլ։ Տագնապն և տրտմութիւնն երբեմն ծպտեալ բարեկամներ են։

Ասկէ զատ, մինչդեռ կրնանք երախտագէտ ըլլալով կեանքին անհամար բարիքները կատարելապէս վայելել, պէտք չէ որ մեր տրտմութիւններն և վիշտերն իբր բացարձակ չարիքներ նկատենք։ Հաստատ և անփոփոխ յաջողութեամբ ոչ ոք կրնայ ինքզինք լաւագոյն եղած համարիլ. եթէ նոյն իսկ այդ յաջողութիւնը մեծ փորձութիւն մը չդառնայ, կրնայ վերջապէս ձլատել և տկարացնել։ Ամէն դժուարութեանց յաղթելով, ամէն փորձութեան դիմադրելով, ամէն վիշտ արիութեամբ կրելով է որ նկարագիրը կը զօրանայ և կ'ազնուանայ։

«Քանի որ դէմ առ դէմ ենք Յաւիտենականութեան հետ, պէտք է որ վեհօրէն դէպ ի նա յառաջանանք(2)

Ո՛րքան որ հաճոյք զգանք ամառուան անուշ գ

---

(1) Լոնկֆէլլօ։ (2) Կայքի։

փիւռն և պայծառ արևը լիովին վայելելով, մոռնալու չենք նաև թէ բնութիւնն իւր գեղեցկութեան և վսեմութեան մէկ մեծ մասն ալ ձմեռուան ձիւներուն և փոթորիկներուն կը պարտի։

Դժբախտութիւնք բարոյական խստաշունչ հովեր են, որոնք զմեզ կը քաջալերեն և կը զօրացնեն։

«Ի՞նչ կարծես թէ եղած պիտի ըլլար Հերակլէս, կ'ըսէ Եպիկտետոս, եթէ չգտնուէին այն հռչակաւոր առիւծն, և վիշապն և եղջերուն, և վարազն, և այն կարգ մ'անասնական մարդիկը, զորս նա հալածեց և սպաննեց։ Ի՞նչ գործ տեսած պիտի ըլլար նա եթէ բնաւ այդպիսիներ չըլլային։ Անտարակոյս պիտի ծածկուէր և պիտի քնանար։ Նախ և առաջ, նա Հերակլէս մը պիտի չըլլար, եթէ իւր բոլոր կեանքն այսպէս թուլութեան և անգործութեան մէջ քնանալով անցընէր. և եթէ ըլլար իսկ, ի՞նչ բանի պիտի ծառայէր, և ի՞նչ բանի պիտի գործածէր իւր բազկին և բոլոր մարմնոյն զօրութիւնն, իւր համբերութիւնն և քաջութիւնն, եթէ այդպիսի պարագաներ և առիթներ զինքն ոգևորած և աշխատցուցած չըլլային։»

Երբ որ Սոկրատ դատապարտուեցաւ, Ապողոդորոս կը տրտնջէր թէ յանիրաւի դատապարտուած էր։ «Ուրեմն, ըսաւ փիլիսոփան, լաւագո՞յն կը համարէիք որ յանցաւոր ըլլայի։»

«Քանզի, կ'ըսէ, Ս. Պետրոս առաքեալ, այս շնորհք մըն է, թէ որ մէկն առ Աստուած ունեցած խղճմտանքովը յանիրաւի կրած վիշտերուն համբերելու ըլլայ։ Վասնզի ի՞նչ գովութիւն կ'ըլլայ ձեզ, թէ որ մեղք գործելով ծեծուիք և համբերէք, հապա թէ որ բարիք գործելով չարչարուիք և համբերէք, Աստուծոյ քով շնորհք մըն է այս։»



Digitized by Google

## ԳԼՈՒԽ ԺԳ

# ՍԷՐ

Ոչ միայն պէտք է այնպէս վարուինք ուրիշներու հետ ինչպէս որ կ'ուզենք որ ուրիշները մեզ հետ վարուին, այլ նաեւ պէտք է որ լաւ կարծիք ունենանք ուրիշներու վրայ, եթէ կ'ուզենք որ անոնք ալ լաւ կարծիք ունենան մեր վրայ։ Եթէ մենք բնաւ անմեղադիր չենք ըլլար իրենց, ի՞նչպէս կրնանք յուսալ որ անոնք անմեղադիր ըլլան մեզ։ Ասկէ զատ, ընդհանրապէս, մարդասիրական կարծիք մը աւելի հաւանութեան կ'արժանանայ քան ուրիշ ո՛եւէ կարծիք։

Մարդիկ կան որ կը կարծեն թէ կրնան կեանքի դժուարութիւններուն մէջէն անցնիլ, ինչպէս որ կ'ըսեն թէ Աննիբաղ Ալպեան լեռներէն անցաւ, զանոնք քացախով ողողելով։

Կան նաեւ այնպիսիք որ թէեւ զոհողութիւններ ընելու պատրաստ են, բայց անփոյթ կը վարուին բարեսրտութեան և սիրոյ այն փոքրիկ ցոյցերուն մասին, որք սակայն այնքան կ'օգնեն կեանքը քաղցրացնելու և երջանկացնելու։

Նոյն իսկ եթէ տրտնջելու պատճառներ ունենանք, եղած գրկանքը շատ անգամ մեր ենթադրածին չափ ծանր չէ. և նախատինքներէ զգածուելով՝ զանոնք աւելի եւս կը ծանրացնենք։ Վրէժխնդրութիւնն աւելի վնաս կը պատճառէ մեզ քան նոյն իսկ նախատինքը, ով որ ուզած է ուրիշի մը վնասել, շատ աւելի իր անձին վնասած է, ինչպէս որ մեղուն կը կորնչի շատ խիստ խայթելով։

Digitized by Google

Կ'ըսեն թէ անգղը միմիայն սատակի համար հոտոտելիք ունի, և լճի կրիան կը կարծուի թէ հաւկիթէ ելնելէն առաջ և սատկելէն յետոյ կը խածնէ։

Նոյնպէս ալ մարդիկ կան որ իրենց բոլոր կեանքն ամէն տեղ պակասութիւններ փնտռելով կ'անցնեն։ Այլ սակայն, հաւնիլն աւելի խոհեմութիւն է քան թէ քննադատելն, և չարամիտ քննադատութիւն մը կարեւորութիւն չունենար։ Քննադատութիւն մը կրնայ ճշմարիտ ըլլալ, բայց արդեօք կատարեալ ճշմարտութի՞ւնն է այն։ Թատերաբեմին ետին կենալն յոյժ չահեկան է, բայց թատերախաղը դիտելու լաւագոյն տեղը չէ այն։ Ջանացէ՛ք տեսնել յաւէտ ինչ որ աղէկ է քան թէ ինչ որ գէշ է մարդոց և իրաց վրայ, և գրեթէ միշտ պիտի կարենաք զայն տեսնել։

Միշտ համբերատար եղէք։ Գիտենք թէ երբ մանկունք կուլան, տասնէն իննին պատճառն այն է որ ցաւ կ'զգան, և մարգիկ, այր թէ կին, այս՝ և դեռ ուրիշ շատ նկատումներով մեծ մանուկներ կը համարուին։ Շատ պարագաներու մէջ, եթէ ամէն բանի տեղեակ ըլլայինք, եթէ դժկամակ երևցող մարդոց ամէն զգացածն զգայինք, փոխանակ անոնց դէմ բարկանալու, պիտի ցաւէինք անոնց վրայ։

Երբ որ կ'իմանանք թէ մէկն հիւանդ է, անմիջապէս ներողամիտ կ'ըլլանք իրեն նկատմամբ։ Բան մը չենք մերժեր իրեն։ Ամէն ջանք ի գործ կը դնենք զինքը մխիթարելու համար։ Իրեն ո՛ և է նեղութիւն կամ գրգռութիւն պատճառելէ կ'զգուշանանք։ Բայց ինչո՞ւ համար այն ժամանակ միայն այդպէս կը վարուինք։ Ո՛րքան լաւագոյն կ'ըլլար եթէ միշտ բարեացակամ և ներողամիտ ըլլայինք։

Չենք կրնար երբեք ուրիշներու տրամութեանց բոլոր ծանրութիւնը, բոլոր հոգերն և բոլոր ծածուկ վիշտերը

Digitized by Google

ճանչնալ։ Հետեւաբար, եթէ նոյն իսկ տրտնջելու իրաւունք ունենալ կարծէք, ներողամիտ եղէք։ Որքան ներողամիտ ըլլանք դարձեալ քիչ է։ Մարդիկն և իրերն իրենց լաւ կողմէն նկատեցէք։

“De mortuis nil nisi bonum„ (1) լաւ առած մ'է, բայց ինչո՞ւ համար մեռելոց սահմանենք զայն։ Ինչպէս կ'ըլլայ որ միմիայն քաղցր խօսքի մը, բարեգործութեան մը համար, այնքան գէշ պատմութիւններ կամ ձախող մեկնութիւններ կը լսենք։ Որքան լաւագոյն պիտի ըլլար եթէ մարդիկ այնպէս խօսէին կենդանեաց վրայ՝ ինչպէս որ առհասարակ մեռելոց վրայ կը խօսին։

Արդ, երբեք հապճեպով մի՛ պարսաւէք ուրիշներն, և ջանացէ՛ք կարելի եղածին չափ քիչ պարսաւել։

«Մի՛ դատեր եղբայրդ. չես կրնար երբեք
Անոր ուղեղին և սրտին գաղտնիքներուն թափանցել։
Ինչ որ աղտ կը թուի քու մթագնած աչքերուդ,
Աստուծոյ պայծառ լոյսին մէջ կրնայ պարզ սպի մ'ըլլալ
Իր ճակտին վրայ՝ յաղթական պայքարէ մը մնացած,
Ուր եթէ դու ըլլայիր, թերեւս վհատելով տեղի կուտայիր (2)։»

Պիտի պատահին, և միշտ կը պատահին այնպիսի վայրկեաններ՝ ուր հարկ կ'ըլլայ անհաւանութիւն յայտնել. բայց իբր կանոն, եթէ չէք կրնար բարեսիրական և մարդասիրական խօսք մ'ըսել, լաւագոյն է որ բան մը չըսէք։ Կ'ըսեն թէ Սիտնէյ Սմիթ լուր խրկեց իւր ծանօթներէն մէկուն որ ի բացակայութեան չարախօսած էր իւր վրայ, թէ կ'արտօնէր զինքը նաեւ աքացել իրեն երբ որ ինք ներկայ չըլլայ։ Սակայն, մենք ընդհանրապէս չենք ուզեր որ մեր թերութիւնները մեր երեսին ըսեն, և մանաւանդ թէ շատ կ'զգածուինք մեր ետեւէն խօս-

(1) «Մեռելոց վրայ բարին միայն խօսելու է։»
(2) Ա.—Ա. Բրօքթըր։

Digitized by Google

ուածին վրայ, որովհետեւ հոն ներկայ չենք գտնուած զմեզ ջատագովելու համար։ Մարդիկ կրնան ուրիշներու վրայ բամբասանք լսելով խնդալ և զուարճանալ, բայց վստահ եղէք որ բնականաբար արդէն պիտի հետեւցնեն թէ իրենց նկատմամբ ալ մի և նոյն բանը կ՚ընէք, և այն վայրկենին ձեզ հետ խնդալով հանդերձ՝ շատ պիտի չախորժին ձեզմէ և այլ եւս պիտի զգուշանան։

Արդ ներողամիտ ոգւով դատեցէք ձեր եղբայրն զմարդ,
Եւ աւելի եւս ներողամտութեամբ ձեր քոյրն զկին,
Թէպէտ և գիտակցութեամբ անոնք ուղիղ ճամբէն շեղած ըլլան.
Վանզի մոլորիլը մարդկային է։

Ուստի մունջ կենանք կշռին առջեւ
Զենք կրնար երբեք զայն ուղղել.
Կ՚նանք մինչեւ մէկ աստիճան կշռել ինչ որ կատարուած է
Բայց չենք գիտեր երբեք ինչ որ ընդդիմացուած է (1)։

Պէտք է որ անասնոց համար ալ խօսք մ՚ընեմ։ Սենեկա իրաւամբ կ՚ըսէ թէ, «կարթերով, դակարդներով, ուրկաններով, շուներով (այսօր կրնանք յաւելուլ նաեւ հրացաններով), պատերազմի մէջ ենք բոլոր կենդանի արարածոց հետ»։ Կը թուի թէ մեր կեանքին մէկ անհրաժեշտ պէտքն ըլլալով ի վնաս միւս կենդանեաց կ՚ապրինք։ Բայց ըստ որում այնքան շնորհապարտ ենք անոնց, գոնէ պէտք էր որ անոնց աւելորդ չարչարանք տալէ զգուշանայինք։

«Եւ երբեք մեր հաճոյքը կամ հպարտութիւնն
Ամենախոնարհ զգայուն արարածին ցաւին չխառնէինք (2)։

Եւ «եթէ սիրտդ ուղիղ է, այն ատեն ամէն արարած կեանքի հայելի մը՝ և սրբազան վարդապետութեանց գիրք մը կը հանդիսանայ քեզ(3)»։

---

(1) Պըրնս։ (2) Վորդսվորդ։ (3) Թովմաս Գեմբացի։

Digitized by Google

Կենդանեաց հոգի ունենալուն վրայ այս օր այլեւս չենք հաւատար, և սակայն մարդկութեան մեծագոյն մասը Պուտտայէն սկսեալ մինչեւ Ուէզլի և Քինկսլի ադոր հաւատաց։

Թռչուններն մանաւանդ երկնային բան մ'ունին, Ս. Ֆրանչիսկոս, «իւր հոգի ունենալուն վրայ վստահ՝ կը կարծէր թէ գէթ կարելի է որ Թռչուններն ալ հոգի մ'ունենան, իրենին նման մահկանացու մարմնոյ մը մէջ ամփոփուած, և ամենեւին նուաստութիւն չէր համարեր մարդկային արժանապատուութեան համար՝ օդրային խոնարհութիւն ունենալն այնքան գեղեցիկ, այնքան հրաշալի էակներու հետ որք (իւր հին միամտութեամբ այնպէս կը հաւատար) կը փառաբանեն զԱստուած անտառին մէջ, ինչպէս որ հրեշտակներն երկնքի մէջ(1)։»

Բայց ինչ որ ալ ըլլայ, պէտք է անասնոց հետ գըթութեամբ և քաղցրութեամբ վարուինք, անոնց աւելորդ չարչարանք տալն ոճրագործութիւն է։

Վորտսվորդ կ'ըսէ թէ —

Բարի մարդու մը կեանքին լաւագոյն մասը կը կազմեն,
Բարութեան և սիրոյ իւր ամենափոքր, անանուն և անյիշատակ գործերն։

Եւ Գօլէրիճ իրաւամբ կ'ըսէ.—

Լաւագոյն աղօթողն այն է որ, մեծ և փոքր
Բոլոր արարածները լաւագոյն կը սիրէ.
Վասնզի բարին Աստուած որ կը սիրէ զմեզ.
Ստեղծած է զանոնք և անոնց ամէնքը կը սիրէ։

Շէյքսբիրի բոլոր գեղեցիկ հատուածներուն մէջ չկայ աւելի փառաւորը քան զայն ուր նա կ'ըսէ.—

Ողորմութեան բուն յատկութիւնն է բռնադատուած չըլլալ։
Երկնքի քաղցր ցօղին պէս կ'իջնէ նա, և երկիցս օրհնեալ է.
Երջանիկ կ'ընէ նա թէ տուողն և թէ ընդունողը։

---

(1) Քինկսլի։

Digitized by Google

*Մարդասիրութիւնն յաճախ հոմանիշ նկատուած է ողորմութեան, և անտարակոյս սույգ է, ինչպէս սա Յունական հռչակաւոր տողերուն մէջ, թէ*

*Օտարականք և աղքատք ամէնքն ալ Արամազդէ խրկուած են,*
*Եւ ողորմութիւնն, որքան ալ աննշան որ ըլլայ, միշտ քաղցր է։*

*Բայց և այնպէս ողորմութիւնը մարդասիրութեան մէկ ձեւն է միայն, և ո՛չ իսկ անոր գերագոյն ձեւն, և սա այն է որ, եթէ առանց խոհեմութեան գործուի, կրնայ յաւէտ չարիք պատճառել քան թէ բարիք։*

*Իսկ սիրոյ և համակրութեան արտայայտութիւնը շատ աւելի կարեւորութիւն ունի։*

*Ուսուցէք ինձ ուրիշներուն վշտակցիլ,*
*Նշմարած Թերութիւններս ծածկել,*
*Եւ այն գութը զոր ես ուրիշներու կը ցուցընեմ.*
*Դուք ալ իմ Թերութիւններուս ցուցուցէք(1)։*

*Չարիքը մոռցէ՛ք, բայց բարիքն երբեք մի՛ մոռնաք։*

*Օձին խայթինէն որքան աւելի սուր է*
*Մանկան մ՚ապերախտութիւնն(2)։*

*«Որքան բազմաթիւ են անոնք որ արժանի չեն օրուան լոյսը տեսնելու։ Եւ սակայն արեւն ամէն օր կը ծագի(3)։*

*Անոնք որ ուրիշներուն չեն ներեր, չեն կրնար ուրիշներէն ներում յուսալ։*

*«Ենթադրեցէ՛ք թէ մերձաւոր մահուան երկիւղին մէջն էք, թէ քիչ յետոյ, ձեր նմանեաց հանդէպ ձեր ունեցած վարմունքին հաշիւը տալու համար, մերկ եւ*

---

(1) Բօբ։ (2) Շէյգսփիր։ (3) Սենեկա։

Digitized by Google

անծածուկ, բոլոր աշխարհի Դատաւորին պիտի ներկայանանք. կա՞յ բան մը որ կարենայ դատաստանի ատեն աւելի եւս սաստկացնել ձեր արհաւիրքը, քան այն խորհրդածութիւնը թէ անհաշտ և անողորմ գտնուած էք ձեզի մեղաւորներուն դէմ. ցոյց չէք տուած ուրիշներուն այն թողութեան ոգին որ ձեր միակ յոյսը պիտի կարենար ըլլալ նոյն պահուն։ Եւ այս բնական արհաւիրք վաւերացուած են մեր Փրկչին ոսակով, "Եթէ դուք չներէք սրտանց ձեր ընկերաց յանցանքը, իմ երկնաւոր հայրս ալ ձերինները պիտի չներէ"(1)։»

Այն Աստուածային պատուիրանը թէ պէտք է մեզի դէմ գործուած յանցանքը ներենք, և մեր թշնամիները սիրենք, թէպէտև ուրիշ բարոյական վարդապետութեանց մէջ ալ կայ, բայց մանաւանդ քրիստոնէական պատուիրան մ'է։ Ս. Գիրքը կրկին և կրկին անոր կարեւորութիւնը կը հաստատէ. «Վասնզի, եթէ դուք ներէք մարդոց իրենց յանցանքը, ձեր երկնաւոր Հայրն ալ ձերինները կը ներէ ձեզ, բայց նա պիտի չներէ ձեզ, եթէ դուք չէք ներեր մարդոց իրենց յանցանքը(2)։»

Ասկէ զատ, միայն ներելն ալ բաւական չէ։ Պէտք է աւելի յառաջ երթալ։ «Կ'ըսեմ ձեզ, սիրեցէք ձեր թշնամիներն, օրհնեցէ՛ք զձեզ անիծողները, բարիք ըրէք անոնց որ զձեզ կ'ատեն, և աղօթեցէ՛ք անոնց համար որ զձեզ կը թշնամանեն և կը հալածեն, որպէսզի որդիներն ըլլաք դուք ձեր Հօր որ երկինքն է, վասնզի նա իւր արեւը կը ծագեցնէ չարերուն և բարիներուն վրայ, և անձրեւը կը տեղացնէ արդարներուն և մեղաւորներուն վրայ(3)։»

«Սէրը, կ'ըսէ Պօղոս առաքեալ, երկայնամիտ է, քաղցր է, սէրը չնախանձիր, սէրը չգոռոզանար, չհպար-

---

(1) Տօքթ. Պըթլըր։ (2, 3) Ս. Մատթէոս։

տանար, անվայել վարմունք չունենար, իրենը չփընտռեր, բարկութեան չգրգռուիր, չարութիւն չխորհիր, անիրաւութեան վրայ չխնդար, հապա ճշմարտութեան խնդակից կ'ըլլայ. ամէն բանի կը դիմանի, ամէն բանի կը հաւատայ, ամէն բանի կը յուսայ, ամէն բանի կը համբերէ։ Սէրը բնաւ չիյնար. բայց թէ որ մարգարէութիւններ ըլլան՝ պիտի խափանին, թէ որ լեզուներ՝ պիտի դադարին, թէ որ գիտութիւն՝ պիտի խափանի...։ Ուստի հիմա կը մնայ հաւատք, յոյս, սէր՝ այս երեքը, բայց ասոնց մեծագոյնը սէրն է։»

# ԳԼՈՒԽ ԺԵ.

## ՆԿԱՐԱԳԻՐ

Կեանքի մէջ յաջողելու համար, նկարագիրն և կանոնաւորութիւնն աւելի եւս կարեւոր են քան թէ կենցաղագիտութիւնն։ Ըսել չեմ ուզեր անտարակոյս, թէ պէտք է նկարագիր ունենալ որովհետեւ աղով միայն կարելի է գործոց մէջ յաջողութիւն գտնել. բայց և այնպէս այդ դիտողութիւնը շատ ճիշդ է։ Արդարութիւնը գործելն աւելի կարեւոր է քան թէ զայն ճանչնալն, և, թէ՛ առաքինանալ ուզենք, թէ՛ յաջողիլ և երջանիկ ըլլալ բաղձանք, պարտինք ճշդիւ մի և նոյն ընթացքին հետեւիլ։ Ոսկի գործերն ոսկեղէն օրեր կը շինեն։

Կեանքի մ'արժէքն իւր բարոյական արժէքին վրայէն չափուելու է։ «Անգամ մը հաստատապէս մտքերնիդ դրէք երբեք չուարած չկենալ, երբ ձեր խիղճը կ'ըսէ ձեզ թէ ի՛նչ պարտիք ընել, և մեղաւորի մը համար բա-

Digitized by Google

*նաւորապէս յուսալի ամէն երջանկութեան բանալին գտած կը համարուիք[1] ։»*

*Ձեր պարտաւորութեան մէջ թերանալով կամ անկէ խոյս տալով՝ չէք կրնար երբեք ձեր երջանկութիւնն աւելցնել ։ Ցելացի՝ ինչպէս նաև առաքինի մարդու մը յատկանիշն այն է որ*

*Նուաստ և անարժան երկիւղներէ չըռնուիր.*
*Հո՛ն ուր պարտաւորութիւնը զինքը կը կոչէ, վստահաբար կը դիմէ,*
*Հազարաւոր վտանգաց կը դիմագրաւէ, եթէ իւր պարտաւորութիւնը կը պահանջէ,*
*Եւ, իւր Աստուծոյն ապաւինելով՝ ադոնց ամէնուն ալ կը յաղթէ[2]։*

*Ի՞նչ բան պէտք է կեանքի մէջ ճշմարիտ յաջողութիւն գտնելու համար ։ «Բան մը միայն պիտանի է . դրամն այնքան կարեւորութիւն չունի, կարողութիւնն, հանճարն, համբաւը պիտանի չեն . ազատութիւնը պիտանի չէ . առողջութիւնն իսկ միակ պիտանի բանը չէ . այլ պիտանին՝ նկարագիրն է,—լիովին մշակեալ կամք մը—այն է միայն որ կրնայ զմեզ բարոյապէս փրկել . և եթէ անով չկարենանք փրկուիլ, անտարակոյս դատապարտուած պիտի ըլլանք[3] ։»*

*Ձեր նկարագիրն այնպէս պիտի ըլլայ՝ ինչպէս որ ուզէք զայն ընել ։ Չենք կրնար ամէնքս ալ բանաստեղծ կամ երաժիշտ, մեծամեծ արուեստաւորներ կամ գիտուններ ըլլալ . «բայց ուրիշ շատ բաներ կան որոց համար չես կրնար ըսել . Ես ի բնէ ատոր յարմարութիւն չունիմ ։ Ուստի, ըրէ՛ ինչ որ կատարելապէս քու կարողութեանդ սահմանին մէջն է . անկեղծ, ծանրաբարոյ և աշխատասէր եղիր, հաճոյքներու թշնամի, ճակատագրին համակամ, քիչով գոհացող, բարեսէր, համարձակ, և գեղխութիւն, ու-*

(1) Քէպլ։ (2) Վօրտսվորդ։ (3) Պլէյրի։

Digitized by Google

նայնութիւն և պերճութիւն չսիրող։ Ձե՞ս տեսներ թէ ո՛րքան բարեմասնութիւններ կրնաս անմիջապէս ցոյց տալ, որոց համար ի բնէ անյարմարութեան և անբաւականութեան արդարացումը չունիս. այլ սակայն կամովին պարտաւորութիւններէդ վար կը մնաս։ Արդեօք բնական պակասամտութի՞ւն մ'է որ կ'ստիպէ զքեզ տրտնջել, ծուլութիւնդ ցոյց տալ, չողոքորթել, խեղճ մարմինդ մեղադրել, և մարդոց հաճոյ ըլլալու ջանալ, ունայնամտութեան անձնատուր ըլլալ, և մտայոյզ տանջուիլ։ Ո՛չ, ո՛չ, շատոնց ի վեր կրցած ես այդ թերութիւններէն զերծանիլ։ Միայն թէ եթէ իրօք ծանծաղամիտ՝ կամ նուազ խորաթափանց մտքով ծնած ես, պէտք է որ ճիշդ այդ թերութեան ուշադիր ըլլաս, երբեք անխնամ չթողուս այդ մտային դանդաղութիւնն, և ադոր չյօժարիս[1]։»

Մ'ընէք երբեք այնպիսի բան մը՝ որուն համար ամչնալ պարտաւորիք։ Լաւ կարծիք մը կայ որ ամենամեծ կարեւորութիւն ունի ձեզ համար, ձեր անձնական կարծիքն է այն։ «Հանդարտ խիղճ մը, կ'ըսէ Սենեկա, մշտնջենաւոր հանդէս մ'է։»

Ֆրանքլին, որուն շատ օգտակար խրատներ կը պարտինք, այնպիսի ծրագրի մը հետեւած է զոր այնքան չեմ կրնար յանձնարարել։ Առաքինութիւնները պարզ և ճիշդ կերպով մի առ մի թուելէ յետոյ, կ'ըսէ. «Ըստ որում կ'առաջադրէի ադոնց ամէնքն ալ ստանալ, խորհեցայ թէ լաւագոյն է մտադրութիւնս չցրուեցնել, ադոնց ամէնուն հետ միանգամայն զբաղելով։ Առաջինին տիրանալէ յետոյ, երկրորդին պիտի անցնէի, և այսպէս ալ շարունակէի, մինչեւ որ ադոնց ամբողջ տասներեքն ստանայի» (այսինքն Ողջախոհութիւն, Լռութիւն,

---

(1) Մարկոս Աւրելիոս

Digitized by Google

Կարգապահութիւն, Հաստատամտութիւն, Ժուժկալութիւն, Աշխատասիրութիւն, Անկեղծութիւն, Արդարասիրութիւն, Համեստութիւն, Մաքրասիրութիւն, Հոգւոյ խաղաղութիւն, Պարկեշտութիւն, և Խոնարհութիւն)։

Դժուարին կը թուի ինձ հաւատալ թէ ինք կրցած ըլլայ այդ ուղղութեան հետեւիլ, վասն զի. «Եթէ սատանային ազգականներէն մէկուն միայն օթեւան տաք, բոլոր ընտանիքն անոր կը հետեւի։»

«Որքան պիտի զարմանայինք, կ'ըսէ Ուիլսըն եպիսկոպոս, եթէ լսէինք որ մէկն աղքատի մը ողորմութիւն տուած ատեն կ'ըսէ. Գինետուն գնա՛ քեզի տուածս ծախսելու. գնա՛ ադով խաղա՛, կամ գնա՛ ադով ծաղրական խաղալիք մը գնէ։ Ուրեմն ի՜նչ պատճառաւ մարդ ինք ընէ այն բանը զոր ուրիշի մը յանձնարարելն անտեղի պիտի ըլլար։»

Աչքերնիդ վե՛ր առէք և, ո՛չ թէ վար։ «Ով որ աչքերը վեր չառնէր, կ'ըսէ Լորտ Պիգընսֆիլտ, աշխարհային իրերը միայն պիտի տեսնէ. և այն միտքն որ դէպ երկինք սլանալ չհամարձակիր, թերեւս գետնաքարշ սողալու սահմանուած է։

Անտարակոյս, եթէ իրաց խորը դիտենք, մնոտի փառասիրութիւնն արհամարհելի է։

Մնոտի փառասիրութեան մեծամեծ վնասներէն մին այն է որ նա երբեք չկրնար յագենալ։ Ինչպէս որ լեռնէ մը վեր ելնելու ատեն, երբ որ գագաթի մը վրայ հասնինք, մեր դէմն ուրիշ գագաթ մ'ալ կը տեսնենք։ Ամենամեծ աշխարհակալները, զոր օրինակ Աղեքսանդր և Նաբոլէոն, երբեք չէին յագեցած։ Ծայրահեղ փառասիրութեան զոհ եղած՝ չէին կրնար «հանգչիլ և գոհանալ. «Ով որ միակերպ յաջողութիւն գտնելու վարժած կ'ըսէ Պագօն, երբ որ արգելք մը տեսնէ, ինքն իրմէ դժգոհանայ, և ինչ որ էր՝ այլեւս նոյնը չմնար։»

Digitized by Google

Այսուհանդերձ շատ յառաջ գացած կ'ըլլանք Բանաստեղծին հետ ըսելով թէ

Փառաւոր կեանքի աղմկալից ժամ մը
Լաւագոյն է քան դար մը առանց համբաւի։

Եսամոլ փառասիրութիւնը չրջմոլիկ հուրի պէս է, փայլուն պատրանք մը։

Տարակոյս չկայ թէ յառաջադիմութեամբ, թէև յամրընթաց, կեանքը շահեկան է, առանց անոր՝ գրեթէ անհանդուրժելի։

Մարդը կեցած տեղը մնալու համար չէ ստեղծուած, այլ յառաջ երթալու համար։ Եւ սակայն, մեր տենչանքներուն մէջ պէտք է խղճի մտօք ընտրենք մեր միջոցներն ինչպէս նաև մեր նպատակն։ Առերեւոյթ բարձրացում մը կործանումէ ուրիշ բան չէ, եթէ չար միջոցներով ձեռք բերուած է։

Ինչ կերպով ուրեմն կրնայինք իրարու հետ հաշտեցնել մեր բնութեան այս երկու իրարու ներհակ պիտոյքը։ Մեր բոլոր փառասիրութիւնն ըլլալու էր կառավարել մեր հոգին որ մեր ճշմարիտ հարստութիւնն է։ Ճշմարիտ յառաջադիմութիւնը՝ միշտ աւելի բան սորվիլը, միշտ աւելի եւս կատարեալ և միշտ աւելի եւս կարող ըլլալն է։ Այս յառաջադիմութիւնն անհրաժեշտ դադար չճանչնար. իւրաքանչիւր քայլափոխին աւելի եւս ապահով կ'ըլլայ, և ոչ թէ աւելի եւս վտանգալի։ Մարդուն համար առաջին և ամենաբարձր մեծութիւնն և փառքն իւր պարտաւորութիւնը կատարելն է։

Կ'ըսեն թէ փառք բառը մէկ անգամ իսկ չէ գտնուած Ուէլլինկթընի դուքսին հեռագրոց մէջ։ Պարտաւորութիւն, այս էր միայն իւր բոլոր կեանքին նշանաբանն։

Ուստի առանց անարգելու ամէն փառք կամ մեծութիւն, թող ձեր փառքն և կամ մեծութիւնը Սուրբին և Իմաստունին ըլլայ։

Ասկէ հարիւր տարի վերջն ի՞նչ կարեւորութիւն կըրնայ ունենալ ձեր հարուստ կամ աղքատ, ազնուական կամ գեղջուկ եղած ըլլալը. բայց թերեւս շատ կարեւորութիւն ունենայ ձեր բարի կամ չար գործած ըլլալն։

«Ինչ որ կը խորհինք, ինչ որ գիտենք, կամ ինչ որ կը հաւատանք, կ'ըսէ Ռըսքին, հուսկ ապա նուազ կարեւորութիւն ունի։ Միակ կարեւոր բանն՝ այն է ինչ որ կ'ընենք։»

Բայց իմաստութիւնն ո՞ւր կը գտնուի,
Եւ հանճարի տեղն ո՞ւր է։
Մարդն անոր յարգը չգիտեր.
Եւ կենդանեաց եր՛կրին մէջ չգտնուիր։
Անդունդը կ'ըսէ. Ան իմ մէջս չէ,
Եւ ծովը կ'ըսէ. Իմ քովս չէ։
Զուտ ոսկիով ծախու չառնուիր,
Եւ անոր արժէքին համար արծաթ չկշռուիր։
Բուստն և բիւրեղն անոր քով չեն յիշուիր.
Եւ իմաստութեան գինն յակինթներու գինէն աւելի բարձր է։
Տէրոջը վախն է իմաստութիւնն,
Եւ չարութենէ ետ քաշուիլն հանճարն է(1)։

Անկեղծ և ճշմարտախօս եղէք. «Աշխարհի վրայ առաջին գործուած մեղքը, կ'ըսէ Ց. Պ. Րիխթըր—բարեբախտաբար յանցաւորը սատանան էր, բարւոյ և չարի գիտութեան ծառին վրայ — սուտ մ'եղաւ։»

Անկեղծութիւնը լաւագոյն և միակ ուղիղ քաղաքականութիւնն է։

«Նենգութեան կշիռքը Տէրոջ առջեւ պիղծ է. բայց ուղիղ կշիռքի քարն անոր հաճոյ է(2)։»

«Ճշմարտութիւնը, կ'ըսէ Շոսըր, մարդու համար ըստանալի ամէնէն վսեմ բանն է։»

Գլարէնտըն կ'ըսէր Ֆալգլէնտի համար թէ «այնք

---

(1) Գիրք Յոբայ։ (2) Գիրք Առակաց։

Digitized by Google

կը պաշտէր ճշմարտութիւնն որ սուտ խօսիլը գողութիւն ընելու չափ զզուելի էր իրեն։»

«Սուտ խօսիլը, կ'ըսէ Պլուտարքոս, նախ յայտնել է թէ զԱստուած կ'անարգենք, ապա թէ մարդոցմէ կը վախնանք։»

Յանցանք ունեցած ատեննիս պէտք է որ ամչնանք, բայց մեր յանցանքը խոստովանելու համար երբեք ամըչնալու չենք։

«Անհամար բարեմասնութիւններ կան որոնք մարդը կը կատարելագործեն, և կը կարողացնեն կեանքի մէջ պարտաւոր եղած բանն ընելու։ Բայց էական բարեմասնութիւն մը կայ, առանց որոյ մարդ մը մարդ ըլլալէ կը դադրի, առանց որոյ ո՛չ մէկ արդիւնաւոր կեանք ապրուած է երբեք, և առանց որոյ ո՛չ մէկ ճշմարտապէս մեծ գործ կրցած է կատարուիլ։ Անկեղծութիւնը կ'ուզեմ ըսել, ներքին անկեղծութիւնը։ Ձեր աչքին առջև բերէք բոլոր զանոնք որ մեծ կամ առաքինի եղած են։ Ինչո՞ւ առաքինի կամ մեծ կը կոչենք զիրենք։ Վասն զի անոնք կը համարձակին ճշմարտապէս հաւատարիմ ըլլալ իրենց անձին. կը համարձակին ըլլալ ինչ որ են(1)։»

Զայս մանաւանդ ի միտ առ, հաւատարիմ եղիր անձիդ,
Եւ ադկէ պիտի հետևի, այնքան ապահովապէս որքան որ գիշերը ցերեկին կը հետևի,
Թէ երբեք պիտի չկարենաս ոչ մէկ մարդու համար նենգաւոր ըլլալ (2)։

Երկու բան կայ, կ'ըսէ Վորտսվորթ, որք չեն կրնար իրարմէ բաժնուիլ, թէպէտև իրարու ներհակ կը թուին. այրական հպատակութիւնն և այրական անկախութիւնն, րական վստահութիւնն և միմիայն ինքն իւր անձին վըստահանալու այրական բնաւորութիւնը։

---

(1) Մագս Միւլլր։ (2) Շէյգսբիր։

Սորվեցէ՛ք հնազանդիլ և պիտի գիտնաք հրամայել, գէշ զինուոր մը չկրնար երբեք լաւ զօրավար մ'ըլլալ:

«Եթէ յաջողութիւնը ձեզի հեռուէ, տեղի մի՛ տաք հպարտութեան:»

«Կատարածին առջեւէն հպարտութիւն՝ ու կործանման առջեւէն ամբարտաւանութիւն կ'երթայ[1]:»

Մեր մտքին մէջ շատ անգամ իրարու կը միացնենք կիրքն ու գործն, համբերութիւնն և անգործութիւնը: Բայց սխալ է այս: Համբերութիւնն հոգւոյ զօրութիւն կը պահանջէ, մինչդեռ կիրքը տկարութեան նշան մ'է և ինքն իր անձին վրայ իշխանութիւն չունենալ կ'ապացուցանէ:

Եթէ ո՛ և է բարձր պաշտօնի մը վրայ էք, խղճմտօրէն արդարասէր եղէք և քաղաքավար:

Իշխանութիւնը միշտ պատասխանատուութիւններ կը բերէ իրեն հետ: Մի՛ խորհիք երբեք թէ ի՛նչ կը բաղձաք ընել, այլ թէ ի՛նչ կը պարտիք ընել: Երջանկութեան հասնելու միակ ուղիղ ճամբան այս է:

Եթէ երկու պարտաւորութեանց միջեւ երկմտութիւն մ'ունենաք, աղոնց մերձաւորագոյնն ընտրեցէք: Մարդիկ կան որ իրենց ընտանիքն անխնամ կը թողուն վայրենեաց դարձով զբաղելու համար. բայց պէտք է որ մարդ կարեկցութիւնն՝ ինչպէս նաեւ մարդասիրութիւնը նախ և առաջ իրեններուն համար ի գործ դնէ:

Ամէն բան այս աշխարհի մէջ բարւոյն համար գոյութիւն ունի: Ասոր դիւրաւ կրնանք համոզուիլ: Ամէնքս ալ մեղքի պատժին վրայ կը խօսինք: Ո՞վ կը պատժէ զմեզ: Մենք զմեզ կը պատժենք: Աշխարհս այնպէս կարգադրուած է, որ բարութիւնն ուրախութիւն կը պատճառէ, իսկ չարութիւնը՝ տրտմութիւն: Ասանց վշտակրե-

(1) Գիրք Առակաց:

Digitized by Google

լու մեղանչելն անհամաձայն կ'ըլլար բնութեան օրէնքներուն։

Մեղքերու թողութիւնը չնշանակեր թէ պիտի չպատժուինք։ Ոչ միայն անկարելիութիւն մ'է այդ, այլ նաև դժբախտութիւն մը կ'ըլլար։ Ստուգիւ չար գործերով յաջողութիւն գտնելէ աւելի մեծ դժբախտութիւն չկայ։ Եթէ չարիք գործէք, անցեալին յիշատակը ձեր ապագան պիտի թունաւորէ։ Ձեզմէ վնասուողները թերեւս ներեն ձեզի, բայց այդպէս ընելով՝ ձեր գլխուն վրայ վառած ածուխ պիտի դիզեն, վասն զի անոնց վեհանձնութիւնն աւելի եւս պիտի սեւցնէ ձեր յանցանքը։

Վարքը կեանքին վճիռը կուտայ, երջանկութիւնն և յաջողութիւնն անկէ կախում ունին։ Արտաքին պատահարներն համեմատաբար նուազ կարեւոր են. ինչ որ զմեզ կը շրջապատէ այնքան կարեւորութիւն չունի. քան ինչ որ մենք ենք։ Ուստի օրն օրին հսկեցէ՛ք, ձեր վրայ, սովորութիւնն երկրորդ բնաւորութիւն մ'է։ «Գործ մը սերմանեցէ՛ք և սովորութիւն մը պիտի քաղէք։ Սովորութիւն մը սերմանեցէ՛ք և նկարագիր մը պիտի քաղէք. նկարագիր մը սերմանեցէ՛ք և ճակատագիր մը պիտի քաղէք(1)։» Ամէնքս ալ ամէն օր քիչ մը կ'աճինք, կամ ի բարին կամ ի չարն։ Լաւ է որ ամէն գիշեր մենք մեզի հարցնենք թէ ո՛ւր ենք։

«Մարդկութիւնը, կ'ըսէ Էմէրսըն, երկու դասակարգի կը բաժնուի.—Բարիք գործողներու և չարիք գործողներու։» Եթէ վերջին դասակարգին վերաբերիք, ձեր բարեկամները ձեզի թշնամի պիտի դարձնէք, յիշատակը՝ վիշտ մը, կեանքը՝ տրտմութիւն մը, զաշխարհ բանտ մը և մահը՝ սոսկում մը։

Ընդհակառակն, եթէ մխիթարութեան կամ կարեկ-

(1) Փորտմէն։



Digitized by Google

*ցութեան խօսքով մը՝ գէթ մէկ ժամուան երջանկութեամբ հոգի մը հարստացնէք՝, բարերար հրեշտակի գործ կատարած պիտի ըլլաք։*

*Ի՞նչ սքանչելի բան կ'ըլլար եթէ իւրաքանչիւր ոք ամէն օր ժամ մը, ժա՛մ մը միայն, կամ նոյն իսկ կէս ժամ առանձնանար հանդարտ մտքով խորհրդածելու համար։ Ոչ ոք կրնայ արդարանալ ըսելով թէ ժամանակ չունի։ Սըր Ռօպըրդ Բիլ, ամէն երեկոյ, Խորհրդարանէն վերադարձին, Ս. Գրքէն գլուխ մը կը կարդար։*

*Բարւոյն վրայ խորհեցէք և չարը պիտի չգործէք։*

*Ով որ յաճախ կը խորհի մահուան և վերջին դատաստանի վրայ,*
*Երկնքի և դժոխքի վրայ, չկրնար բարի վարք ունենալէ Թերանալ(1)։*

*Եւ վարձատրութիւնը մեծ պիտի ըլլայ։*

*«Որդեակ իմ, մի՛ մոռնար իմ խրատս և թող քու սիրտդ իմ պատուէրներս պահէ, վասն զի անոնք երկար օրեր և կեանքի և յաջողութեան տարիներ պիտի պարգևեն քեզի (2)։»*

*Հետևաբար, ժամանակ մի՛ կորսնցնէք։ Երիտասարդութիւնն արդարացում մի՛ համարիք։ «Ամէնքս ալ պարտինք կատարելապէս առաքինի ըլլալ, կ'ըսէր Մարկըրիդ տը Վալուա, քանի որ կեանքերնիս կարճ է։»*

*«Ցի՛չէ՛ քու Արարիչդ քու երիտասարդութեանդ օրերուն մէջ։»*

*Մեր ուզած կերպով մեռնելու համար, մեր պարտաւոր եղած կերպով ապրելու ենք։ Առաքինի մարդուն համար մահը սոսկում չունի։ Թիրլուռլ եպիսկոպոսն, իր վերջին հիւանդութեան ժամանակ, սկսաւ եօթը լեզուի թարգմանել սա հատուածն. «Ըստ որում Քունը մահուան եղբայրն է, պէտք է որ ջանաս ինքզինքդ յանձնել Անոր հոգածութեան՝ որ պիտի արթն-*

---

(1) Սըր Ռ. Րալայ։ (2) Գիրք Առակաց։

Digitized by Google

ցնէ զքեզ, թէ՛ քունին մահէն և թէ մահուան քնէն։»

Երբ որ Սոկրատ իր դատաւորներուն առջև կը կենար, «Ո՛չ թէ մահուան դատապարտուած մարդու մը պէս կը խօսէր, կ'ըսէ Կիկերոն, այլ ուղղակի երկինք գացող մարդու՞մը պէս։»

«Ի՞նչ չահ պիտի ունենաք, կ'ըսէ Սենեկա, եթէ արիութեամբ և վեհանձնութեամբ ձեր պարտաւորութիւնը կատարէք։ Զայն կատարած ըլլալու չահը։» Պէտք է որ գործենք ինչ որ բարի է, ո՛չ թէ խոստումներու յուսով, կամ պատժուելու վախով, այլ բարւոյն սիրով։

Առաքինութիւնն իր մէջ կը պարունակէ վարձատրութիւնն։ Ստուգիւ, ոմանց համար, գերբնական վարձատրութիւններ և պատիժներ կարեւոր են, իբր չարժառիթ չար գործերէ զգուշանալու. բայց ճշմարիտ իմաստունին համար առաքինութեան վարձատրութիւնն ո՛չ թէ Յաջողութիւնն՝ այլ Առաքինութիւնն ինքն իսկ է։ Եւ անոր ճամբան թէպէտև զառիվեր է, բայց անել չէ.—ամէն պատուական բաներն ո՛րքան որ հազուագիւտ՝ նո՛յնքան ալ դժուարատաց են։

Արդարև, չենք կրնար ամէն կողմանէ կատարեալ ըլլալ, բայց գոնէ ջանալու ենք, ինչպէս ուրիշ ամէն բանով՝ նոյնպէս ալ նկարագրով կատարելութեան մօտենալ։ Ասկէ զատ, ամէնքս ալ մեր ներսի դին վստահելի առաջնորդ մ'ունինք. եթէ մեր խղճին ձայնին անսանք, չենք մոլորիր երբեք։ Ով որ կը բաղձայ. կրնայ ազնուութեամբ ապրիլ։

Ուստի, կեանքի կարելի եղածին չափ բարձր մտատիպարը միշտ ձեր աչքին առջև ունեցէք։

Ո՛րքան խեղճ բան է մարդն,
Եթէ չկարենայ ինքն իւր անձէն վեր բարձրանալ(1)։

---

(1) Վոկան։

Այս կերպով, և միմիայն այս կերպով է որ պիտի կարենաք զձեզ հրահանգել, այնպէս որ, եթէ այր մ'էք, կարենան օր մը ձեզ համար ըսել ինչ որ Շէյքսփիր Մարկոս-Անտոնինոսի ըսել կուտայ Բրուտոսի համար։

Իւր կեանքն ազնիւ էր, և իւր մէջ ամէն տարրերն
Այնքան լաւ խառնուած էին, որ Բնութիւնը պիտի կարենար կանգնիլ
Իրեն համար բոլոր աշխարհի ըսելու «Մա՛րդ մ'էր նա։»

Իսկ եթէ կին մ'էք, կարենան ձեզ համար ըսել,

Կատարեալ կին մ'էր նա, ազնիւ էակ մը,
Ցորդորելու, սփոփելու, հրամայելու համար եղած,
Նաև հոգի մ'էր նա հանդարտ և շքեղ,
Դոյզն ինչ հրեշտակային պայծառութեամբ(1)։

Սըր Վ. Սգօթի իւր մահուան անկողնին մէջ առ Լօգհարթ ըսած վերջին խօսքերն էին. «Առաքինի եղիր, բարեպաշտ եղիր, բարի մարդ եղիր։ Ոչ այլ ինչ պիտի կարենայ մխիթարել զքեզ երբ որ հասնիս հոն՝ ուր այժմ ես եմ։»

Նոյն իսկ Բաղաամ կ'ըսէր. «Արդարոց մահուամբ մեռնիմ, և իմ վերջս անոնց վերջին նման ըլլայ։»



(1) Վորտսվորդ։

# ԳԼՈՒԽ ԺԶ.

## ՀՈԳԻՈՅ ԵՒ ՄՏՔԻ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ԵՒ ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆ

*Ցաւջողութիւն և երջանկութիւն միշտ ի միասին չեն ընթանար, և շատ մարդիկ դժբախտ են, թէպէտև կը թուի թէ երջանիկ ըլլալու համար ամէն պէտք եղածն ունին: Բնութիւնը կրնայ առանց հաշուելու տալ «իւր հզօր սիրականին»,—հարստութիւն, կարողութիւն, տաղանդներ և երկայն կեանք, բայց չկրնար զինքն երջանկացնել: Այդ գործն անկէ կախում ունի: Աշխարհային յաջողութիւններով հիւսուած կեանք մը վտանգներով և հոգերով լի է: Այն մարդն որ երջանկութեան կարևոր տարրերը չունի իւր մէջ, աշխարհի ո՛չ բոլոր գեղեցկութեան և փոփոխութեան և ո՛չ հաճոյքներուն և չահերուն մէջ կրնայ զայն գտնել: Երջանկութիւնն յաւէտ խորհուրդներն ու հոգերը քննելու և վարելու կարողութեան մէջ կը կայանայ: «Ոմանց համար, կ'ըսէ Շօբընհաուըր, աշխարհս անապատ է, ձանձրացուցիչ է և հարեւանցի. իսկ ոմանց համար ճոխ, շահեկան և իմաստալից:» Եթէ լաւ վարուինք երջանկութիւնն ինքնին կուգայ, բայց չափազանց եռանդով անոր հետամուտ ըլլալու չէ: Մեր ամենամեծ ուրախութիւնը դժոխք կ'եջնէ, «եթէ Որփէոսի պէս, ետ դառնանք զայն դիտելու* (1):» *«Դուք խոյս տուէք հաճոյքներէն և անոնք զձեզ պիտի հալածեն* (2)»:

(1) Տալլաս. (2) Ֆրանգլին.

*Անդադար ձեր վրայ մի՛ մտածէք, առանձին չէք աշխարհիս վրայ։*

*«Զուարճութիւն մի՛ փնտռէք, կ'ըսէ Ըրսքին, բայց միշտ պատրաստ եղէք զուարճանալու։» Կեանքին հաճոյքներու չարք մ'ընել գիտնալը մեծ բան է, նոյն իսկ թէեւ աննշան ըլլան այդ հաճոյքները։*

*Զուարճախօսութեան զգացումը, զոր օրինակ, ձիրք մ'է զոր մարդը միայն ունի։ Կարելի է տարակուսիլ թէ արդեօք կենդանիք կը խորհի՞ն, բայց յայտնի կ'երեւի թէ անոնք խնդալ չեն գիտեր։ «Ամէնէն աւելի կորսուած համարուող օրն այն է՝ զոր առանց խնդալու կ'անցնենք,» կ'ըսէ Շանֆօր։ Ստուգիւ ո՛րքան հաճելի է ուրախ ծիծաղ մը լսել, ո՛րքան կարծես թէ նա զամէն բան կը զուարթացնէ։*

*Ուրախ սիրտ մը կ'երթայ օրն ի բուն,*
*Տխուր սիրտ մը մղոն մ'երթալով կը յոգնի(1)։*

*«Զուարթութիւնը» կ'ըսէր մեր եպիսկոպոսներէն մին, «քրիստոնեայ հոգւոյն իննը տասներորդ մասն է», եւ բարեմոյն բնաւորութեան գաղտնիքը գրգռիչ մտածութիւնները մտքէ հեռու վանելու մէջ կը կայանայ։ Եթէ բարկանաք, «մի՛ թողուք որ արեւը ձեր բարկութեան վրայ ի մուտս իջնէ(2)»։ Գժտելու համար երկու հոգի ըլլալու է, այդ երկուքէն մին դուք մ'ըլլաք։*

*Մարդիկ կան որ միակերպ կը տրտնջեն, այդպիսիք եթէ նոյն իսկ արքայութեան մէջ ծնած ըլլային, դարձեալ պիտի կարենային բանէ մը տրտնջելու միջոցը գտնել։ Ընդհակառակն մարդիկ ալ կան որ ամէն տեղ երջանիկ են. զիրենք շրջապատող ամէն բանի մէջ գեղեցկութիւն եւ քաղցրութիւն միայն կը տեսնեն։*

---

(1) Շէյգսբիր։ (2) Թուղթ առ Եփեսացիս։

Digitized by Google

*Ի՞նչ արքայութիւն կրնար արդեօք դառնալ աշխարհ*
*Եթէ երկիւղը կարենար առ յաւէտ Թաղուիլ,*
*Եւ յոյսը տեւական ըլլար, իսկ սէրն յաւիտենական։* (1)

*Զուարթութիւնը բարոյական զօրաւոր կազդուրիչ մ'է։ Ինչպէս որ արեւը ծաղիկները կը բանայ և պտուղը կը հասցնէ, նոյնպէս ալ զուարթութիւնը, մեր մէջ բարութեան բոլոր ծիլերն՝ և ինչ լաւագոյն բան որ կայ մեր մէջ կը զարգացնէ։*

*Զուարթութիւնը պարտաւորութիւն մ'է այլոց հանդէպ։ Հին աւանդութիւն մը կայ թէ կարելի է ոսկի բաժակ մը գտնել ամէն տեղ ուր որ ծիրանի գօտին երկրի կը դպչի. Նոյնպէս ալ կան մարդիկ որոնց ժպիտն, որոնց ձայնին հնչիւնն, որոնց ներկայութիւնն իսկ, արեւառագայթի մը նման՝ կարծէք թէ ի՛նչ բանի որ դպչին ոսկւոյ կը փոխեն։*

*Մարդիկ երբեք չեն ընկճիր, եթէ կարենան իրենց զուարթութիւնը պահել։ «Ուրախ սիրտ մը տեւական հանդէս մ'է, թէ՛ այլոց՝ և թէ՛ միանգամայն իրեն համար։» Ֆլորէնս Նայթինկէլի շուքն աւելի շատ հիւանդ կը բժշկէր քան թէ իւր դեղերն, և այլոց բեռերը թեթեւցնելով՝ մերիններն ալ թեթեւցուցած կ'ըլլանք։*

*Կարգ մը մարդիկ գոգցես այնպէս կը կարծեն թէ զուարթութիւնն անհոգութիւն կը բովանդակէ. այլ սակայն, աղոնք իրարու հետ անհրաժեշտ կապակցութիւն չունին։ «Ուրախութիւնն և զուարթութիւնն, ըսած է Արնոլտ, որք մարդկութեան ամենամեծ բարութեանց մին կը կազմեն, շատ անգամ ամենախոր մտածութեան և ամենափափուկ սիրոյ կ'ընկերանան, և շատ աւելի շնորհալի կերպով, քան երբ միացած են անոնք այնպիսի*

---

(1) Մօրրիս։

Digitized by Google

մէկու մը պարապութեան կամ կոպտութեան որ յիմար մ'է Աստուծոյ առջեւ[1]։»

Շատ մարդիկ կան որոնց ծնունդը դատապարտութիւն մ'է ցկեանս բունի աշխատութեանց։ Բայց միմիայն աղքատաց յատուկ չէ այս։ Այժմ հարուստներն ալ նոյնքան՝ և երբեմն աւելի եւս տաժանելի կերպով կ'աշխատին։ Ասկէ զատ, միթէ քի՞չ են այնպիսիները զորս նոյն իսկ դրամը դժբախտ կ'ընէ, և որոնց կեանքն ո՛չ հանգիստ կը ճանչնայ և ո՛չ խաղաղութիւն։

Այս աշխարհի մէջ չենք կրնար վշտէ խուսափիլ, բայց կրնանք, եթէ կամենանք, անկէ վեր բարձրանալ։ Զայն ընելու համար, պէտք է որ մեր յիշողութիւնը գեղեցիկ պատկերներով և երջանիկ յիշատակներով զարդարենք։ Եթէ չենք կրնար լիովին կանոնաւորել մեր երազները քունի մէջ, կրնանք սակայն մեր արթնութեան ժամերն երջանիկ օրերու երազներով լեցնել։

Ամէն մարդ կը բաղձայ զուարճանալ, բայց աղոր եղանակը գիտցողները քիչ են։ Մարդիկ չեն կրնար կեանքին արժանիքն և բերկրանքն իրագործել։

Վշտէ և ցաւէ զերծ մնալու յոյս չենք կրնար ունենալ, բայց մեզի կ'իյնայ զանոնք կամ հանդարտութեամբ կրել և կամ յուսահատութեամբ անոնց ներքեւ ընկճիլ։ «Կը վշտակրիմ, կ'ըսէր Ուէզլէյ, բայց շնորհօքն Աստուծոյ չեմ հիւծիր։» Փոքրիկ հոգերը մեծամեծ փորձանքներ դարձնելու աստիճան մի՛ մեծցնէք։ «Ի՞նչ վիշտ կայ այս կեանքի մէջ, կ'ըսէ Կիկերոն, որ կարենայ մեծ երեւիլ այն մարդուն՝ որ ծանօթութիւն ունի տիեզերքի մեծութեան և յաւիտենականութեան վրայ։ Վասն զի ի՞նչ բան կայ մարդկային հմտութեան՝ կամ այս կեանքին կարճատեւ ընթացքին մէջ որ կարենայ մեծ երեւիլ իմաս-

(1) Արնոլտ (Քրիստոնէական կեանք)։

Digitized by Google

տուն մարդու մը, որուն միտքն այն աստիճան զգուշաւոր է որ երբեք անակնկալ բան մը չկրնար պատահիլ իրեն։» Մարդ ի զուր ինքզինք կը նեղէ։

Ժամանակն ինչպէս որ մեր վէրքերը՝ նոյնպէս ալ մեր վիշտերը կը բժշկէ։ Ասկէ զատ, մահուան դէմ չէ որ մենք զմեզ պիտի պաշտպանենք այլ փորձութեան դէմ։

«Մշակուած միտք մը, կ'ըսէ Ց. Ստուարդ Միլ, և ո՛չ թէ փիլիսոփայի՝ այլ ո՛ և է միտք մը, որուն բացուած ըլլան հմտութեան աղբիւրները, և որուն սորվեցուցած ըլլան, մինչև մէկ աստիճան, իւր կարողութիւնները գործածել, անսպառ շահ մը պիտի գտնէ զինքը շրջապատող ամէն բանի՝ մէջ, բնութեան առարկայից, արուեստական գործոց, քերթողական երևակայութեանց, պատմութեան պատահարաց, անցեալ և ներկայ մարդկութեան շաւղաց, և անոր ապառնի հեռապատկերաց մէջ։ Կարելի է, անտարակոյս, ասոնց ամէնուն համար անտարբեր դառնալ, նոյն իսկ առանց ասոնց մեծագոյն մասն սպառած ըլլալու. բայց ա՛յն ատեն միայն երբ մէկն ի սկզբանէ չէ կարողացած ասոնց մէջ բարոյական կամ մարդկային շահ մը գտնել, և բաւականացած է ասոնց մէջ լոկ հետաքրքրութեան գոհացում մը փնտռելով։»

Ծաղիկներու, ծառերու և կանաչ մարդերու, գետերու, լիճերու և ծովերու, լեռներու, և պայծառ արեւու աշխարհի մը մէջ կ'ապրինք։ Բնութիւնը զուարթ է անոնց համար որ զուարթ են, նա սփոփանք կը պարգևէ անոնց՝ որք կ'ուզեն սփոփանք գտնել։

Առաւօտն արևափայլ էր, խաղաղ և գեղեցիկ.
Բուրումնաւէտ մէգ մը մթնոլորտը կը լեցնէր.
Օդն այնքան քաղցր էր որ կրնար ըսուիլ
Թէ գարունն ետ դարձած էր, իւր թևերը տարածելու
Մահամերձ տարւոյն վրայ, և իւր համբոյրներով՝
Զաշխարհ վերստին երջանկութեան երազի մը բերելու համար (1)։

---

(1) Մօրրիս։

Digitized by Google

*Բայց գեղեցիկը գնահատելու համար, պէտք է գեղեցկութեան զգացումն ունենալ։ Շատ և փոքր խելացութեան վրայ շատ կը խօսուի. պատճառ չկայ սակայն կարծելու թէ աշխարհիս ամէնէն գեղեցիկ տեսարանը կարենայ հաճոյք պատճառել անոնց։*

*Կան մարդիկ որ ուրիշ ընելու բան չունենալով՝ ձանձրանալէ կը տրտնջեն, բայց այդ պարագային ձանձրոյթը բուն իսկ իրենց մէջն է։ «Եթէ ունեալ մարդ մը, որ առողջութիւն, աչք, ձեռք և պարապ ժամանակ ունենալով հանդերձ՝ նպատակ մը չգտնէր իւր էութեան, պատճառն այն է որ Ամենակարողն Աստուած այն ամէն բարիքն այնպիսի մարդու մը պարգևած է որոնց արժանի չէր նա[1]։»*

*Ո՛չ հարստութիւն և ո՛չ աստիճան կրնան երջանկութիւնն ապահովել։ Առանց սիրոյ, գթութեան և հոգւոյ խաղաղութեան, թերևս կարենաք մեծ և կարող ըլլալ, բայց չէք կրնար երջանիկ ըլլալ։*

*Արդէն իսկ հաստատեցի, ինչպէս որ ամէն իմաստուն մարդիկ ալ ընդունած են, թէ երջանկութիւնը չկրնար դրամով գնուիլ, և ո՛չ ալ կարողութեան ենթակայ ըլլալ։*

*Եթէ դժբախտ էք, կրնաք Մասիյեոնի խօսքերուն մէջ մխիթարութիւն գտնել. «Ուստի՞ կուգայ այդ, ո՛վ մարդ. միթէ պատճառն այն չէ՞ որովհետև բուն քու տեղդ չես այս աշխարհիս մէջ, որովհետև երկնքի համար ստեղծուած ես դու, որովհետև աշխարհ քու հայրենիքդ չէ երբեք, և որովհետև այն ամէն բան որ Աստուծոյ համար չէ, բան մը չէ քեզ համար։»*

*«Բայց հաճոյքի բազմազան երանգներն և առաքինութեան բոլոր գեղեցիկ կերպերն յայտնելը, մեր կարողութենէն վեր է. ինչ որ կարելի է մեզ ընել ամենա-*

---

(1) *Սաութէյ։*

Digitized by Google

*բարձր առաքինութեան համար՝ սա է թէ անմեկնելի հրապոյր մը կայ անոր մէջ. իսկ ամենաբարձր երանութեան համար՝ թէ անասելի է նա (1)։»*

*Բնութեան մէջ ամէն բան իմաստուն և օգտակար օրէնքով մը կարգադրուած է, և ամէն բան բարւոյն կապուած է և անոր կ'աշխատակցի։ Եթէ մենք կը տառապինք, յանցանքը մերն է, և կամ այլոց երջանկութիւնն ապահովելու համար է։ «Չկայ պարտաւորութիւն մը, կ'ըսէ Սենեկա, որուն կատարումը գոհունակութիւն չպատճառէ, և ոչ փորձութիւն մը՝ որուն դարման չգտնուի։»*

*Ըստ Կիկերոնի, «Եպիկուրոս երեք՝ կարգ ցանկութիւն նշանակած է մարդու վրայ. առաջին անոնք՝ որ բնական են և կարեւոր. երկրորդ անոնք՝ որ բնական են բայց ոչ կարեւոր. իսկ երրորդ անոնք՝ որ ո՛չ բնական են և ո՛չ կարեւոր։ Կարեւորներն, ըստ իրեն, կարելի է գոհացնել առանց նեղութեան և առանց շատ ծախքի. վասն զի բնութեան դանձերն ամենուրեք կը գտնուին առատապէս։ Երկրորդ կարգիններուն համար նոյնպէս կը կարծէ թէ դիւրին է կամ զանոնք գոհացնել, և կամ անոնցմէ հրաժարիլ. իսկ վերջին կարգին վերաբերող անօտի ցանկութիւններուն համար կ'ըսէ թէ, անկարելի է անոնց չափ և սահման մը դնել։»*

*Կեանքը լիովին վայելելու համար պէտք է որ շատ հրապուրիչ հաճոյքներէ զրկուելու պատրաստ ըլլանք։ «Ինքզինք մոռնալով միայն կարելի է հանգչիլ» կ'ըսէ Շէռպիւլիէ։*

*Մեր բաղձանքներէն հրաժարիլն աւելի շահաւոր է քան թէ մեր կիրքերն յագեցնելը։ Մեր զգայարանք ո՛րքան որ ճշմարիտ վայելք հայթայթեն մեզ, կրնան՝ եթէ*

(1) Պազօն։

Digitized by Google

տեղի տանք իրենց, հին ատենի յուշկապարիկներուն պէս, կեանքի խութերուն կամ յորձանքներուն տանիլ զմեզ։

Մեր դարուն դժբախտութիւններէն մէկն այն է որ յոյժ քիչ պարապ ժամանակ կը մնայ մեզ։ Ցարատեւ յորձանքի մը մէջ կ՚ապրինք։ Որքան կինեբ և այրեր խակ զգացած են ինչ որ Բօրսիա կ՚ըսէ. «Իմ փոքրիկ մարմինս յոգնած է այս աշխարհէն։»

Լաւ գործը, սակայն, չկրնար չտապով կատարուիլ. խորհրդածութիւնը ժամանակ և հանդարտութիւն կը պահանջէ։

«Գիտեմ, կ՚ըսէ Քինկսլի, թէ ինչ որ մեզ ամէնուս կը պակսի, ներքին խաղաղութիւնն է, հոգւոյ և մտքի խաղաղութիւնն. հանդարտ և զօրաւոր նկարագիր մը, համակերպութեամբ և անձնուրացութեամբ կազմուած. որ գրգռիչ դեղերու պէտք չունի, վասն զի տկարութիւն և վհատութիւն չճանչնար. պէտք չունի նաև թմբրադեղերու, վասն զի ջղային գրգռութիւն չգիտեր. ոչ ալ հոգեւորական ճնշումներու, քանի որ ըստ բաւականի զօրաւոր է նա Աստուծոյ պարգեւներն առանց զեղծումի վայելելու համար. մէկ խօսքով, նկարագիր մը՝ որ իրապէս ժուժկալ է, ո՛չ միայն ուտելու և խմելու մասին, այլ նաև իւր ամէն բաղձանքներուն, ամէն խորհուրդներուն և ամէն գործերուն մէջ, որ զերծ է այն ցանկութիւններէն և այն փառասիրութիւններէն որոնց տեղի տուաւ հինն Ադամ, որն որ արգիլեալ միջոցներով փընտռեց կեանքն և լոյսն, որով պատիժ և մահ միայն գտաւ։ Այո՛, գիտեմ զայս, և գիտեմ նաև թէ հանգստութիւնն հո՛ն միայն կը գտնուի՝ ուր արդէն իսկ գտած էք զայն։»

«Ինչպէս որ Արամազդ հրամայած է, կ՚ըսէ Եպիկտետոս, այնպէս ըրէք. եթէ այնպէս չընէք, ձեր անհնազանդութեան հետեւանքը պիտի կրէք, պիտի պատժուիք։ Եւ գիտէ՞ք թէ ի՛նչ պիտի ըլլայ ձեր պատիժը։ Ձեր

պարտաւորութիւնը կատարած չըլլալն․ որով համեստութեան, հաւատարմութեան և վայելչութեան զգացմունքը պիտի կորսնցնէք։ Ասոնցմէ մեծ պատիժներ կրնա՞ն ըլլալ։»

«Ամէնքս ալ կը տրտնջենք, կ'ըսէ Բրուքին, թէ շատ բաներէ զուրկ ենք։ Բայց մեզմէ ո՞վ է գիտցողը թէ խաղաղութեան պէտք ունի։ Եթէ պէտք ունիք, երկու միջոց կայ զայն գտնելու համար։ Առաջինը բոլորովին ձեր կարողութեան ներքև է․ հաճոյական խորհրդածութեանց գանձեր դիզելն է այն։ Մեզմէ ո՛չ ոք գիտէ տակաւին — վասն զի մեզմէ ո՛չ մէկուն սորվեցուցած են զայն մեր մանկութեան ատեն — թէ ինչ դիւթական ապարանքներ կրնանք կառուցանել գեղեցիկ խորհրդածութիւններով, այնպիսի ապարանքներ՝ որոնք որ և փոցէ ձախորդութեան կրնան դիմանալ։ Փայլուն երևակայութիւններ, հանդարտ յիշատակներ, վսեմ պատմութիւններ, անկեղծ խօսքեր, թանկագին և հանգուցիչ խորհրդածութեանց գանձեր, զորս հոգը չկրնար վըրդովել, զորս ցաւը չկրնար նսեմացնել, զորս թշուառութիւնը չկրնար մեզմէ կապտել․ — ահաւասիկ անձեռագործ տուներ մեր հոգւոց բնակարան ըլլալու համար։»

«Բաղձալէ հրաժարէ՛, կ'ըսէ Թովմաս Գեմբացի, և խաղաղութիւն կը գտնես։»

Կեանքի մէջ ինչպէս որ մեծ փորձանքներէ կը տրտմինք, նոյնպէս ալ պզտիկ բաներէ կը նեղուինք։

«Առողջ մարմնէ մ'աւելի մեծ հարստութիւն չկայ, ըսուած է մեզ Սիրաքայ գրքին մէջ, ո՛չ ալ սրտի ուրախութենէն վեր ուրախութիւն։»

Վերջին նշանաբանը զոր մեռնելու ատեն արտասանեց Անտոնինոս, որուն բարեպաշտութիւնն իւր մեծութեան կը հաւասարէր, «Æquanimitas (1)» եղաւ։ Ոչինչ վրդոված

(1) Հոգւոյ խաղաղութիւն։

Digitized by Google

է երբեք Քրիստոսի կեանքին հանդարտութիւնն։ «Իմ լուծս ձեր վրայ առէ՛ք, կ՚ըսէ Նա, և ձեր հոգւոց մէջ հանգիստ պիտի գտնէք։»

Երջանկութիւն գտնելու համար պէտք չէ որ մեր անձէն դուրս խուզարկութիւն կատարենք, այլ մեր անձին վրայ, և մանաւանդ մեր հոգւոյն մէջ։

«Երկնքի արքայութիւնը ձեր մէջն է։» Եթէ այս աշխարհի մէջ չենք կրնար երջանիկ ըլլալ, ի՞նչպէս կրնանք յուսալ թէ հանդերձեալին մէջ պիտի ըլլանք։ Միթէ Նախախնամութիւնն հոն աւելի՞ լաւ պիտի հսկէ մեր վրայ քան թէ հոս։ Եթէ աշխարհիս վրայ մենք մեզ համար խաղաղութիւն չգտնենք, ի՞նչպէս կրնանք զայն երկնքի մէջ գտնելու յոյս ունենալ։

Անտարակոյս, ինչպէս որ երջանկութիւնը կրնայ եռապատիկ ըլլալ, վայելելու բանին վրայ կանխաւ ուրախութիւն զգալով, բան մը վայելելով, և վայելած բանին յիշատակով, նոյնպէս ալ երջանկութեան մեծ և անապակ աղբիւր մը կրնայ ըլլալ մեզ համար, դէպ յառաջ նայելու, և մեր սիրած և կորանցուցած անձինքը վերստին տեսնել՝ և այժմ մեզ համար ծածուկ եղող շատ բաներու ծանօթանալ յուսալու մէջ։ Այս երջանկութեան աղբիւրին դէմ ըսելիք չունիմ, բայց պէտք չէ որ նա մեր երկրային բարիքներն արհամարհել տայ մեզ։

Ուստի ջանացէ՛ք ձեր անձն այնպէս կառավարել որ կարենաք Քէպլի հետ ըսել —

Ո՛վ Տէր Աստուած իմ, Դու Քու սուրբ կամքդ կատարէ.
Ես հանդարտ պիտի կենամ,
Գիտի չշարժիմ, որպէս զի չըլլայ Թէ քու բազուկդ լքանեմ
Եւ եղծանեմ այն հիմայքն
Որ կը հանգչեցնէ զիս, Հօրս կուրծքին վրայ,
Կատարեալ հանգստութեան մէջ։

Այս կերպով միայն կրնաք վայելել Բնութեան հանդարտութիւնը —

Digitized by Google

*Լռութիւնն որ կը տիրէ աստեղազարդ երկնքին մէջ,*
*Խաղաղութիւնն որ կը տիրէ մենաւոր բլուրներու մէջ (1)։*

Այն ատեն հրեշտակներ պիտի գան ձեզ ձեր բնակարանին մէջ — ինչպէս որ վաղեմի Աբրահամին եկան, ժամանակաւ, Մամբրէի դաշտերուն վրայ։

Նոյն իսկ կարելի է որ «մարդուն անծանօթ չատ նոր հրճուանքներ կան տակաւին, և զորս պիտի գանէ քաղաքակրթութեան չքեղ ճամբաներուն մէջ(2)։»

«Վասն զի ա՛յն ատեն հոգին և մարմինը կատարեալ մարդ մը կը կազմեն, երբ որ հոգին իմաստութեամբ կը վարէ, կամ սիրով կ'ուղղէ մարմինն որ թէև իւր ընկերակիցն՝ այլ սակայն իրմէ ստորադաս է։ Բայց եթէ մարմինն օրէնք դնել ուզէ, և ցանկասիրութեամբ՝ նախ չարաչար գործածէ իմացականութիւնն, և ապա կամքի և ընտրողութեան մեծագոյն մասին տիրանայ, այն ատեն այլ ևս մարմինն և հոգին իրարու յարմար ընկերներ չեն, և իրենց կազմած մարդն յիմար և ողորմելի է։ Հոգին կամ պէտք է որ կառավարէ և կամ գերի դառնայ(3)։»

Ցանցանքը մերն է եթէ չենք կրնար կեանքը վայելել։ «Ամէն մարդ, կ'ըսէ Րըսքին, կրնար վայելել, թէպէտև քիչեր կը յաջողին։» Ձեր միտքն հանդարտ և երջանիկ պահելու համար պէտք է որ զայն ազնիւ և իմաստուն խորհուրդներով լեցնէք։ «Աստուածայինը, կ'ըսէ Պղատոն Փեդոնի մէջ, գեղեցիկը, ճշմարիտն և բարին է, և այն ամէն բան որ ասոնց նման յատկութիւններ ունի. ասոնցմով հոգւոյն թևերը կը սնանին և կը զօրանան, իսկ մոլութիւնները զանոնք կը խամրեն եւ կը հիւծեն։»

«Ամէնէն առաքինի մարդը, կ'ըսէ Սոկրատ, այն է որ կը ջանայ ինքզինք կատարելագործել. իսկ ամէնէն երջանիկն՝ այն որ կ'զգայ թէ իրօք կը կատարելագործուի։»

---

(1) Վորտսվորդ։ (2) Մանդէկացցա։ (3) Ճէրէմի Թէյլըր։

Digitized by Google

# ԳԼՈՒԽ ԺԷ.

## ԿՐՕՆՔ

*Եթէ Աստուածաբանութեան կրօնքը գաղտնիք մ՚է տակաւին նոյն իսկ ամէնէն գիտուններուն համար, Պարտաւորութեան կրօնքը դիւրըմբռնելի է նոյն իսկ տղու մը համար։*

*«Պարտաւորութեան սահմանները, կ՚ըսէ Ճէրէմի Թէյլըր, Ապողոնի պատգամներուն պէս երկայրի, ծածուկ և խաբէական չեն։ Աստուծոյ խօսքը, պարտաւորութեան սահմաններուն մէջ, երկնքի երեսին պէս պարզ է, լուսնի պէս պայծառ և արեւուն ազդեցութեանը պէս առողջարար։»*

*Ինչ որ Լոգ կ՚ըսէր տղայոց համար, կրնայ յարմարիլ նաեւ մարդոց մեծագոյն մասին համար։ «Պէտք է սէր և յարգանք ներշնչել իրենց գերագոյն էակին համար։ Այդչափը միայն բաւական է իբր սկզբնաւորութիւն, առանց այդ նիւթին աւելի եւս իրենց բացատրելու, վախնալով որ շատ կանուխ հոգւոց վրայ խօսելով տղայոց, և ժամանակէն առաջ այն Անհուն էակին անիմանալի բնութիւնն անոնց ճանչցնել փութալով, չըլլայ թէ սխալ և անըմբռնելի գաղափարներ կազմեն Անոր վրայ։ Ապա երբ որ ուզէք Աստուծոյ վրայ խօսիլ իրենց, ըսէ՛ք միայն. «Թէ զամէն բան Աստուած ստեղծած է և կը կառավարէ, թէ նա զամէն բան կը լսէ և զամէն բան կը տեսնէ և թէ նա ամէն տեսակ բարիք կը պարգեւէ անոնց որք զինքը կը սիրեն և իւր կամքին՝ կը հնազանդին։» Ձեր տղաք սորվելով այսպիսի գաղափարներ կազմել Աստուծոյ վրայ, պիտի տեսնէք թէ անոնք ինքնին և կանուխէն նորանոր խորհրդածութիւններ պիտի ունենան այն*

Digitized by Google

*Գերագոյն Էակին վրայ։ Եթէ երբեք նշմարէք թէ այդ նոր խորհրդածութիւնք ուղիղ չեն բոլորովին, պէտք է որ անմիջապէս ուղղէք զանոնք։ Ըստ իս, լաւագոյն կ՚ըլլար եթէ առհասարակ մարդիկ Աստուծոյ վրայ քիչ մ՚առաջ յայտնածիս չափ միայն գաղափար ունենային, առանց չափազանց հետաքրքրութեամբ խուզարկելու այնպիսի էակի մը յատկութիւնները զոր ամէն մարդ պարտի իբր անհասանելի նկատել, վասն զի կարգ մը մարդիկ կան որ, իրենց իմացականութենէն վեր եղող բանին վրայ ի՛նչ հասկնալու կարող ըլլալնին նախապէս որոշելու համար մտային բաւական կարողութիւն և պայծառութիւն չունենալով, այդ ծուռ հետաքրքրութեամբ կամ աւելորդապաշտութեան և կամ անաստուածութեան մէջ կ՚իյնան, զԱստուած իրենց նմանեցնելով, կամ զայն բնաւ երբեք չճանչնալով, վասն զի ուրիշ և ո՛չ մէկ գաղափարի ներքեւ կրնան զայն երեւակայել։*

*Լուէլ մասնաւոր հիացմամբ մը մէջ կը բերէր Ծօնսընի սա խօսքերն. «Այն ամէն բան որ զմեզ մեր զգայարանաց կարողութենէն վեր կը հանէ, այն ամէն բան որ անցեալն, ապագան և հեռաւոր իրերը ներկայ ժամանակէն աւելի կարեւոր կ՚ընծայէ մեզ, մեր խոհուն էակի արժանապատուութիւնը կ՚աւելցնէ։»*

*Աստուածաբանութիւնն և կրօնական վարդապետութիւնը կրօնքի գիտութիւնը կը կազմեն, բայց ո՛չ թէ իսկութիւնը։ Կրօնքն ամէնօրեայ կեանքի մէջ վարքի կանոն մ՚է, պաշտպանութիւն մը՝ յաջողութեան մէջ, զօրութիւն մը՝ դժբախտութեան մէջ, նեցուկ մը՝ տառապանքի մէջ, ապաւէն մը՝ վտանգի դէմ, մխիթա- Յիւն մը՝ տրտմութեան մէջ և ապաստան մը խաղաղութեան։ Կրօնքը, կերպով մը, ո՛րքան որ հոգւոյն՝ ո՛յնքան ալ մարմնոյն կը վերաբերի։ Պէտք է որ երկուքն ալ մի և նոյն պատուով մեծարուին։*



Digitized by Google

«Կրօնքն, ըսած է Ֆիհթէ, իրաւամբ, ինքն իրմէ և ինքն իրեն համար գոյութիւն ունեցող գործ մը չէ, զոր որոշեալ ժամեր կամ որոշեալ օրեր, մեր միւս զբաղումներէն զատ կարենանք կատարել. ընդհակառակն ամէնէն սերտ հոգին է այն որ մեր ամէն խորհուրդներուն և ամէն գործերուն մէջ կը թափանցէ, և անոնց ամէնուն վրայ կ'ազդէ. այլ սակայն անոնց ամէնքն ալ կրնան դարձեալ անփոփոխ և անընդհատ իրենց սովորական ընթացքը կատարել։»

Ս. Գիրքը մթին մեկնութիւններով չվարանեցներ զմեզ։ Մանաւանդ թէ մեր մտածմունքն այդպիսի նկատողութիւններէ հեռու կը դարձնէ։

«Վասն զի այս պատուիրանը, կ'ըսէ Մովսէս, որ այսօր քեզի կուտամ, քու վրայէդ շատ բարձր չէ երբեք, և քեզմէ հեռու չէ։ Երկնքի մէջ չէ նա որ հարկ ըլլայ ըսել. ո՞վ է որ մեզի համար երկինք պիտի ելլէ և զայն մեզի պիտի բերէ, որ լսենք և գործենք։ Բայց այն խօսքը քեզի շատ մօտ է. քու բերնիդ և քու սրտիդ մէջն է այն, որպէս զի կատարես զայն(1)։»

Յիսուս ըսաւ դատաւորին որ կը հարցաքննէր զինքը. «Պիտի սիրես քու Տէր Աստուածդ, քու բոլոր սրտովդ, քու բոլոր հոգւովդ և քու բոլոր մտքովդ։»

«Եւ ահա երկրորդ պատուիրանն որ անոր նման է. «Պիտի սիրես քու ընկերդ քու անձիդ պէս։ Ամէն օրէնքներ և մարգարէներ այս երկու պատուիրաններէն կախուած են(2).»

«Աստուծոյ՝ քու Հօրդ առջև, կ'ըսէ Ս. Յակոբ, մաքուր և անբիծ կրօնքն՝ որբերուն և այրիներուն տրտմութեանց մէջ այցելելու և ինքզինք աշխարհի աղտեղութեան դէմ պաշտպանելու մէջ կը կայանայ։»

---

(1) Գիրք Երկրորդ օրինաց։ (2) Ս. Մատթ. Աւետ։

Digitized by Google

Կրնայ ըլլալ որ չգիտնանք թէ ո՛ւրկէ կու գանք և ո՛ւր կ՚երթանք. կրնանք անվստահ ըլլալ մեր խորհուրդներուն և մեր համոզումներուն մէջ, բայց մեր սրտերուն մէջ գրեթէ միշտ գիտենք թէ ի՛նչ ընել կը պարտինք։ Մեր առ ընկերն ունեցած պարտաւորութիւնն՝ առ Աստուած մեր ունեցած պարտաւորութեան մէկ մասն է։ Միջնադարեան աւազակն որ լինքզինք «բարեկամ Աստուծոյ և թշնամի մարդկանց» կը կոչէր, Քրիստոնէութեան ճշմարիտ հոգւոյն վրայ աւելի կատարելապէս սխալած չէ քան կարգ մը մարդիկ որ իրմէ նուազ արդարանալի են։ Իր նմանները սիրելով է որ մարդ կրնայ առ Աստուած ունեցած սէրը լաւագոյն կերպով յայտնել։

Երբեմն ուրիշներէն գանգատելու կ՚ելլենք, բայց լաւագոյն կ՚ըլլար եթէ սա խօսքն յիշէինք. «Եթէ դու չես կարող զքեզ այնպէս ընել ինչպէս որ կ՚ուզես, ի՞նչպէս կրնաս յոյս ունենալ ուրիշ մէկը գտնելու որ ըստ ամենայնի քու ուզածիդ պէս ըլլայ(1)։»

Եւ նոյն իսկ եթէ արդար պատճառներ ունենանք գանգատելու, պէտք է որ ներենք, ինչպէս որ կը յուսանք թէ մեզի պիտի ներեն, ո՛չ թէ Պետրոս առաքեալին ըսածին պէս «մինչև եօթն անգամ», այլ «մինչև եօթանասուն անգամ եօթը (2)։»

Եթէ մենք չներենք, ի՞նչպէս կրնանք յուսալ որ մեզի ներեն։ Ներելն ու նուիրելն երկու մեծ առանձնաշնորհութիւններ են որ ամէնքս ալ կը վայելենք։ Ամէնքս ալ կրնանք ներել, և կրնանք նուիրել —եթէ ո՛չ դրամ— գէթ կարեկցութիւն, օգնութիւն և մարդասիրութիւն։

Շատ մտքերու վրայ վշտի երկիւղն աւելի զօրաւոր կերպով կ՚ազդէ քան թէ երջանկութեան յոյսը, Ցավէր-

---

(1) Թովմաս Գեմբացի։ (2) Ս. Մատթ. Աւետ։

Digitized by Google

չէմի եկեղեցւոյն մէջ հին տապանագիր մը կայ որ կ՚ըսէ․

Ով որ խորհած է
Ներքնապէս և յաճախ,
Թէ որքան տաժանելի է անցնիլն
Անկողնէն ի դժոխք,
Դժոխքէն ի տանջանք,
Որք պիտի չդադրին երբեք,
Մեղք մը պիտի չգործէ,
Նոյն իսկ բոլոր աշխարհը շահելու համար։

Պէտք չէ անփոյթ ըլլալ ո՛չ երկնային խոստումներուն և ո՛չ ազդարարութիւններուն մասին․ «Լոյսը դեռ քիչ մը ժամանակի համար ձեզի հետ է, քալեցէ՛ք մինչդեռ լոյսն ունիք, որպէս զի չըլլայ թէ խաւարը ձեր վրայ հասնի․ վասն զի ով որ խաւարի մէջ կը քալէ չգիտեր թէ ո՛ւր կ՚երթայ[1]։»

«Ով որ այս ըսած խօսքերս կը լսէ և զանոնք չգործադրեր, պիտի նմանի անմիտ մարդու մը, որ իւր տունն աւազի վրայ շինած է․ և անձրեւն իջաւ, և հեղեղներն յորդեցին և հովերը փչեցին և եկան այդ տան վրայ ջախջախուելու․ նա կործանեցաւ և նորա աւերակը մեծ եղաւ։» Բայց միւս կողմանէ, «Ով որ այս ըսած խօսքերս կը լսէ և զանոնք կը գործադրէ, ես խոհեմ մարդու մը պիտի նմանեցնեմ զինքն որ իւր տունը ժայռի մը վրայ շինած է․ և անձրեւն իջաւ, և հեղեղներն յորդեցին, և հովերը փչեցին և եկան այդ տան վրայ ջախջախուելու, բայց նա երբեք չկործանեցաւ, վասն զի ժայռին վրայ հաստատուած էր[2]։»

Եւ ամէն բանէ աւելի, վա՜յ անոր որ ուրիշն մոլորեցնէ․ մանաւանդ թէ երիտասարդները։

(1) Ս․ Յովհ․ Աւետ։ (2) Ս․ Մատթ․ Աւետ։

Digitized by Google

«Լաւագոյն էր իրեն համար որ իւր պարանոցէն երկանաքար մը կախէին և զինքը ծովը նետէին, փոխանակ այս փոքրիկներէն մին գայթակղեցնելու(1)։»

«Վասն զի, ի՞նչ օգուտ պիտի ունենար մարդու մը համար բոլոր աշխարհը շահիլ, եթէ նա իւր հոգին կորսնցնէր, կամ ի՞նչ պիտի տար մարդն իւր հոգւոյն փոխարէն(2)։»

Բայց սակայն, որքան ալ շատ մեղանչած ըլլանք, հատուած հատուածի վրայ, խոստում խոստումի վրայ, մեզմէ իւրաքանչիւրն յուսահատելէ կ'զգուշացնէ։ Թէպէտև Շաթօպրիան կ'ըսէ թէ «Զենք համարձակիր պարծենալու թէ ունինք հաւատքի այն հրաշալի գաւազանն որ, ժայռէն կենդանի ջրոյ աղբիւրներ կը բղխեցնէ,» բայց և այնպէս Քրիստոնէութիւնն յաւէտ Յուսոյ հաւատքն է քան թէ Երկիւղի։ «Աստուծոյ բարկութիւնը ժամանակաւոր է, կ'ըսէ Ժուպէռ, բայց Իւր ողորմութիւնն յաւիտենական։» Եւ կը յարէ նա, «Աստուծոյ երկիւղը կարեւոր է զմեզ առաքինութեան ճամբուն մէջ պահելու համար։»

Լաւագոյն կ'ըլլար եթէ յոյսն և երկիւղը խոհեմութեամբ միացնէինք մեր մտքին մէջ, ինչպէս որ Բալայ կ'ազդարարէ —

Ով որ յաճախ կը խորհի մահուան և վերջին դատաստանի վրայ, արքայութեան և դժոխքի վրայ,
Չկրնար բարի վարք ունենալէ ետ կենալ։

Բայց աւելի դիւրին է մարդիկն ուղղել քաղցրութեամբ քան թէ խստութեամբ։ Օրինակները պատուէրներէն լաւագոյն են։ Տրըմմընտ կ'ըսէ. «Օրը տասը վայրկեան Քրիստոսի հետ հաղորդակցութեան մէջ գտնուիլն,

(1) Ս. Ղուկ. Աւետ։ (2) Ս. Մատթ. Աւետ։

Digitized by Google

ԻՆչ կ'ըսեմ, նոյն իսկ երկու վայրկեան, եթէ մարդ անոր հետ երես առ երես և սիրտ առ սիրտ ըլլայ, բաւական է կեանքը բոլորովին փոխելու։»

Բարութեան վրայ խորհեցէք և չարիք պիտի չգործէք։ «Այն ամէն բաներն որ ճշմարիտ են, այն ամէն բաներն որ պատուաւոր են, այն ամէն բաներն որ բարի համբաւ ունին, և որոնց մէջ առաքինութիւն մը կայ, և որոնք գովեստից արժանի են, թող այս ամէն բաները ձեր մտածմունքը գրաւեն[1]։»

«Մի՛ խնդրէք Աստուծմէ, կ'ըսէ Սենեկա, այն բանը զոր պիտի չուզէիք որ մարդիկ իմանային, և ո՛չ ալ մարդոցմէ ո՛. և է բան մը՝ զոր պիտի ուզէիք Աստուծմէ ծածկել։» Երբ նկատողութեան առնունք թէ ի՛նչ վաղանցուկ և աննշան էակներ ենք ժամանակին և անջրպետին անհունութեան մէջ, դիւրաւ կրնանք Սրբէնսըրի հետ հարցնել.—

Մեզ կը խորհի՞ն արդեօք երկնքի մէջ։
Կա՞յ արդեօք այն երկնային հոգիներու մէջ սէր
Այսքան անարգ արարածներու համար։

Սաղմոսերգուն իրաւամբ կ'ըսէ. «Երբ քու երկինքդ կը դիտեմ, քու մատներուդ գործը, լուսինն և աստղերը զորս դու հաստատեցիր, կ'ըսեմ. Ի՞նչ է մահկանացու մարդն՝ որ դու զինքն յիշես, և ի՛նչ է մարդու որդին՝ որուն դու այցելես։»

Բայց Գօլէրիճի պատասխանը կը վստահացնէ զմեզ.

Սուրբերն օգնութեան պիտի հասնին,
Եթէ մարդիկ կոչեն զանոնք։
Վասն զի երկնքի կապուտակ կամարն
Ամէնուն վրայ հաւասարապէս կը տարածուի։

---

(1) Պօղոս Առաքեալ։

Digitized by Google

Միթէ խոստացուած չէ՞ մեզ․ «Խնդրեցէ՛ք և պիտի տրուի ձեզ․ փնտռեցէ՛ք և պիտի գտնէք․ բախեցէ՛ք և պիտի բացուի ձեզ (1)։»

Եւ դարձեալ․ «Եւ ինչ որ իմ անունովս խնդրէք, պիտի կատարեմ (2)։» Կ'ըսուի մեզ նաև թէ «Աստուծոյ համար ամէն սրտեր բաց են, և ամէն բաղձանքներ ծանօթ»․ թէ նա վշտաբեկ սրտի մը հառաչանքը չարհամարհեր, և ոչ բաղձանքն անոնց որ տրտում են․ թէ կրնաք «անոր վրայ թողուլ ձեր բոլոր հոգերը, վասն զի նա հոգ կը տանի ձեր վրայ (3)։»

Արդարև երկնային օգնութիւն մը պէտք չէ խնդրել ծուլութեամբ․ բայց, ոչ միայն օգնութիւն կը խոստացուի, այլ նաև կ'ըսուի մեզ․ «Եթէ Յաւիտենականը չշինէ տունը, զայն շինողներն ի զուր կ'աշխատին։ Եթէ Յաւիտենականը չպահպանէ քաղաքը, զայն պահպանողն ի զուր կը հսկէ։» Թէ «Ամէն բարի տուրք, և ամէն կատարեալ պարգև վերէն կուգայ և լուսոյ Հօրմէն կ'իջնէ, որուն վրայ չկայ երբեք տարբերութիւն, և ոչ բնաւ ստուեր փոփոխութեան (4)։»

Քրիստոնէութիւնը չհրամայեր մեզ այս աշխարհը զոհել հանդերձեալը շահելու համար։ Ընդհակառակը, «սիրել ինչ որ հրամայուած է, բաղձալ ինչ որ խոստացուած է» մեր երջանկութիւնը պիտի աւելցնէ այս աշխարհի մէջ ինչպէս նաև հանդերձեալին մէջ։ Երկրային երջանկութեան և երկնային երջանկութեան միջև տարբերութիւն չկայ․ վասն զի կրօնքը կը նուիրագործէ հանապազօրեայ կեանքը։

«Չեմ աղաչեր քեզ որ վերցնես զանոնք աշխարհէ,» կ'ըսէ Յիսուս, իւր աշակերտաց համար, «այլ զանոնք չարէն պահես։»

(1) Ս. Մատթ. Աւետ։ (2) Ս. Յովհ. Աւետ։
(3) Պետր. Առաքեալ։ (4) Յակոբ Առաքեալ։

Digitized by Google

Շատ ազնիւ զգացումներ յայտնուած են Պղատոնի, Արիստոտէլի, Եպիկտետոսի, Սենեկայի և Մարկոս-Աւրելիոսի մէջ, բայց չկայ սիրոյ աւետարան մը նման այն աւետարանին՝ զոր Նոր Կտակարանը կը պարունակէ։

Յիսուս իրաւամբ ըսաւ թէ իւր կրօնքը Նոր կրօնք մ՚է։ «Նոր պատուիրան մը կու տամ ձեզի, թէ զիրար սիրէք. ինչպէս որ ես զձեզ սիրեցի, դուք ալ զիրար սիրէք։ Ասկէ պիտի գիտնան մարդիկ թէ իմ աշակերտներս էք, եթէ զիրար սիրէք (1)։»

Եւ դարձեալ. «Այս բաներն ըսի ձեզի որպէս զի իմ ուրախութիւնս ձեր վրայ ըլլայ. և ձեր ուրախութիւնը կատարեալ ըլլայ։ Այս է իմ պատուիրանս թէ զիրար սիրէք, ինչպէս որ ես սիրեցի զձեզ։ Ոչ ոք ունի աւելի մեծ սէր մը՝ քան իւր անձը տալն իւր բարեկամաց համար։ Դուք իմ բարեկամներս էք, եթէ ձեզի պատուիրածս կատարէք։ Ասկէ ետքը ծառայ չեմ կոչեր զձեզ. վասն զի ծառան իւր տէրոջ գործածը չգիտեր, բայց ես զձեզ իմ բարեկամներս կոչեցի, վասն զի ես ծանուցի ձեզի զամէն բան որ իմ Հօրմէս լսեցի (2)։»

Քրիստոնէութեան գալուստն այսպէս ծանուցուած էր, «Փառք Աստուծոյ երկնքի բարձրութեան մէջ, և խաղաղութիւն երկրի վրայ, հաճութիւն ի մարդիկ (3)։»

Քրիստոս մասնաւորապէս ցուցուց այն տարբերութիւնն որ կայ Իւր և Մովսիսի վարդապետութեանց միջեւ, կրկին և կրկին պատուիրելով ներում և սէր, նոյն իսկ մեր թշնամեաց համար։

«Լսեցիք ինչ որ ըսուած էր, Պիտի սիրես քու ընկերդ, և պիտի ատես քու թշնամիդ. բայց ես կ՚ըսեմ ձեզի, Սիրեցէ՛ք ձեր թշնամիներն, օրհնեցէ՛ք զանոնք որ զձեզ կ՚անիծեն, բարիք ըրէք անոնց՝ որ զձեզ կ՚

---

(1, 2) Ս. Յովհ. Աւետ. (3) Ս. Ղուկ. Աւետ.

Digitized by Google

տեն, և աղօթեցէ՛ք անոնց համար՝ որ զձեզ կ'անարգեն և կը հալածեն։ Որպէս զի երկնքի մէջ եղող ձեր Հօր զաւակներն ըլլաք. վասն զի Նա իւր արեւը չարերուն և բարիներուն վրայ կը ծագեցնէ, և անձրեւն արդարներու և մեղաւորներու վրայ կ'իջեցնէ։ Վասն զի եթէ միայն զձեզ սիրողները սիրէք, ի՞նչ վարձք ունեցած կ'ըլլաք. միթէ մաքսաւորներն ալ այդպէս չե՞ն ըներ։ Եւ եթէ միայն ձեր եղբայրներուն ողջոյն տաք, արտաքոյ կարգի ի՞նչ ըրած կ'ըլլաք. միթէ մաքսաւորներն ալ այդպէս չե՞ն ըներ։ Արդ դուք կատարեալ եղէք, ինչպէս որ ձեր երկնաւոր Հայրը կատարեալ է (1)։»

Ապահով ըլլալու ենք որ կեանքի մէջ վիշտ և հոգեր պիտի ունենանք. բայց կրնանք «նոյն իսկ նեղութեանց և վշտաց մէջ պարծենալ, գիտնալով որ վիշտն համբերութիւն կը բերէ, համբերութիւնը՝ փորձառութիւն և փորձառութիւնն՝ յոյս(2)։» Նաև կը վստահացընեն զմեզ թէ «այս աշխարհիս չարչարանքները բան մը չեն հանդերձեալին փառքին քով՝ որ մեզի պիտի յայտնուի(3)։» Թէ «այն բաներն որ աչք չէ տեսած և ականջ չէ լսած և մարդուն սրտին մէջէն չէ անցած, Աստուած զինքը սիրողներուն համար պատրաստեց(4)։»

«Միւս բոլոր հաճոյքներու տեղ, կ'ըսէ Եպիկտետոս, ըրէ՛ք միայն գիտնալու հաճոյքը թէ Աստուծոյ կը հնազանդիք, և ադով ո՛չ թէ խօսքով՝ այլ գործով իմաստուն և առաքինի մարդու մը վայելուչ եղող բանը կ'ընէք։»

«Փոքրիկ շահու մը համար, երկար ճամբորդութեան կ'ելլեն, կ'ըսէ Թովմաս Գեմբացի, բայց յաւիտենա-

(1) Ս. Մատթ. Աւետ։
(2, 3) Պօղ. Առաք. (Թուղթ առ Հռովմ.)։
(4) Պօղ. Առաք. (Ա. Թուղթ առ Կորնթ.)։

Digitized by Google

*կան կեանք մը շահելու համար շատեր կան որ իրենց տեղէն իսկ չեն շարժիր։» Եւ ուրիշ տեղ մը. «Գրեցէ՛ք, կարդացէ՛ք, ողբացէ՛ք, լուռ կեցէ՛ք, աղօթեցէ՛ք, տառապեցէ՛ք արիաբար, յաւիտենական կեանքը կ'արժէ որ ասոնց ամէնուն՝ և դեռ աւելի ծանր բաներու հանդուրժէք։» Այլ սակայն իրապէս ո՛րքան քիչ բան կը պահանջուի մեզմէ։ Վասն զի, «Տէրը քեզմէ ի՞նչ կ'ուզէ, բայց միայն իրաւունք ընել, ողորմութիւն սիրել և խոնարհութեամբ քու Աստուծոյդ հետ քալել(1)։»*

*Բայց նոյն իսկ այն պարագային որ մեծամեծ զոհողութիւններ սպասուէր մեզմէ, եթէ նոյն իսկ պահանջուէր մեզմէ աշխարհիս մէջ մեր ունեցած ամէն բանէն հրաժարիլ, միթէ այս կեանքին կարճութիւնը բաւական չէ՞ ադոր հաւանելու համար։*

*Կիկերոն շատ իրաւամբ կ'ըսէ. «Եթէ ստոյգ է որ բարի մարդը միայն երջանիկ է, և թէ ամէն բարի մարդիկ երջանիկ են, այն ատեն ի՞նչ բան կրնայ իմաստասիրութենէ աւելի արժանի ըլլալ մշակուելու, կամ ի՞նչ բան կրնայ առաքինութենէ աւելի սքանչելի ըլլալ։»*

*Անհաւատալի կը թուի, թէպէտև տարակոյս չկայ թէ էապէս ստոյգ է, որ մարդիկ իրենց համբերութեան չափէն աւելի փորձի չեն ենթարկուիր, այլ թէ «Աստուած հաւատարիմ է, որ զձեզ պիտի չթողու ձեր կարողութենէն աւելի փորձուելու, հապա փորձութեանը հետ խոյս տալու միջոց մ'ալ պիտի տայ, որ կարող ըլլաք համբերելու(2)։»*

*Բայց մարդ այնքան տկար է որ նաև կ'ըսուի մեզ. «Արթուն կեցէք և աղօթեցէ՛ք, որ չըլլայ թէ փորձութեան մէջ իյնաք, վասն զի հոգին յօժար է, բայց մ մինը տկար։» (3)*

---

(1) Միքիա մարգարէ։ (2) Փող. Առաք. (Ա. Թուղթ առ Կոր.
(3) Ս. Մատթ. Աւետ.

Digitized by Google

Պէտք է որ կատարելութիւնը մեր նպատակակէտն ըլլայ. «Կատարեալ եղէ՛ք, ինչպէս որ երկնքի մէջ եղող ձեր Հայրը կատարեալ է։» Եւ վարձքն անմիջական է և անչափ։ Մեր նեղութեանց մեծ մասը մեր ներսի դիէն կը ծագի։ «Մարդ մնոտի ստուերի մը մէջ ինքզինք անհանգիստ կ'ընէ,» Մեզմէ շատեր կրնան Դանիէլի հետ ըսել. «Իմ գլխուս տեսիլքները զիս խռովեցուցին։» Բաւական է որ կամենանք, կրնանք հանգստութիւն վայելել, յանցանքը մերն է միայն եթէ անկէ զուրկ կը մնանք։

Կրօնքն հանգստութիւն և հանդարտութիւն կը խոստանայ մեզ, հոգւոյ և մտքի խաղաղութիւն, և վշտի մէջ մխիթարութիւն, նոյն իսկ այս աշխարհի մէջ։ Երկինքը միմիայն ապառնութեան և հեռաւորութեան մէջ չէ. երկինքը ձեր մէջն է։

Եթէ յոգնած և նեղուած էք, ըսուած չէ՞ ձեզ. «Եկէ՛ք ինձ, ամէն աշխատաւորներ և բեռնաւորուածներ, և ես պիտի հանգչեցնեմ զձեզ (1)։»

Կը վստահացնեմ զմեզ թէ երկիւղի և մտահոգութեան իրական պատճառ մը չունինք. «Երկնքի թռչուններուն նայեցէք, անոնք ո՛չ կը սերմանեն և ո՛չ կը հնձեն, ո՛չ ալ շտեմարաններու մէջ բան կը ժողվեն, և ձեր երկնաւոր Հայրը կը կերակրէ զանոնք։ Միթէ դուք անոնցմէ պատուական չէ՞ք։ Եւ հագուստի համար ինչո՞ւ հոգ կ'ընէք։ Դաշտին շուշանները դիտեցէ՛ք. անոնք ինչպէս կ'աճին. ո՛չ կ'աշխատին և ո՛չ կը հիւսեն. այլ սակայն կ'ըսեմ ձեզ թէ, և ո՛չ իսկ Սողոմոն իւր բոլոր փառաւորութեան մէջ երբեք անոնցմէ մէկուն պէս հագուած չէր։ Ուրեմն, եթէ Աստուած այսպէս կը հագուեցնէ դաշտին խոտն որ այսօր կայ, և որ վաղը փուռին մէջ պիտի նետուի. զձեզ մանաւանդ պիտի չհագուեցնէ՞. ո՛վ թերահաւատներ (2)։»

(1, 2) Ս. Մատթ. Աւետ.

Digitized by Google

«Ալ դուք մի՛ փնտռէք թէ ի՛նչ պիտի ուտէք և ի՛նչ պիտի խմէք, և մի՛ չփոթիք. վասն զի այդ բոլոր բաները աշխարհիս ազգերը կը փնտռեն. և ձեր Հայրը գիտէ որ այդ բաները ձեզի պէտք են։ Բայց դուք Աստուծոյ թագաւորութիւնը խնդրեցէք, և այդ բոլոր բաներն ալ ձեզի պիտի տրուի (1)։»

Միևնոյն դասը կը յեղյեղուի, և միևնոյն խոստումները կ'ըլլան մեզ, կրկին և կրկին։ «Գանձեր մի՛ դիզէք ձեզ երկրի վրայ. ուր որդերն և ցեց զամէն բան կ'ապականեն, և ուր գողերը կը ծակեն և կը գողնան։ Բայց գանձեր դիզեցէք ձեզ երկնքի մէջ, ուր որդերն և ցեց բան մը չեն ապականեր, և ուր գողերն երբեք չեն ծակեր և չեն գողնար. վասն զի ձեր գանձն ուր որ է՝ ձեր սիրտն ալ հոն պիտի ըլլայ։» Եւ դարձեալ. «Հարստութիւնը եթէ շատնայ, անոր վրայ սիրտ մի՛ դնէք։» Իրօք, պէտք էր որ յաւէտ հարստութիւնն հոգ պատճառէր մեզ քան թէ չքաւորութիւնն։ «Հարստութեան վրայ վստահացողներու համար ո՜րքան դժուարին է երկնքի արքայութեան մէջ մտնել։»

Լերան քարոզին մէջ երկինքը միմիայն ողորմածներուն, խոնարհներուն, խաղաղասէրներուն և մաքուր սիրտ ունեցողներուն խոստացուած է։

Կ'ըսուի մեզ Աստուծմէ չվախնալ. ըստ որում Նա մեր Հայրն է. և կատարեալ սէրն երկիւղը կը վանէ։

Մարդոցմէ վախնալու պատճառ չունինք։ «Տէրն իմ հետս է, չեմ վախնար. մարդն ինձ ի՞նչ կրնայ ընել(2)։»

Արդարև բան մը չկրնար իրապէս վնասել մեզ։ «Գիտենք որ ամէն բաները բարւոյ գործակից կ'ըլլան ան որ զԱստուած կը սիրեն (3)։»

---

(1) Ս. Ղուկ. Աւետ։ (2) Գիրք Սաղմոսաց։ (3) Առաքեալ։

Digitized by Google

*Եւ այս խոստումներն առհասարակ ամէնուս համար են։ Ո՛չ թէ միայն հարուստներու և մեծամեծներու, գիտուններու և հանճարեղ մարդոց համար. այլ մեր ամէնուս համար, վասն զի, «Աստուած իւր արարածներն իրարմէ չզանազաներ [1]։»*

*«Թողէ՛ք մանուկներն ինձ գալու, և մ'արգիլէք զանոնք, վասն զի երկնքի արքայութիւնն այդպիսիներուն համար է որուն կը նմանին [2]։»*

*Մենք միայն կրնանք զմեզ բոլոր այս չարերէն և չնորհներէն զրկել։*

*«Վասն զի ես հաստատ գիտեմ, թէ ո՛չ մահն, և ո՛չ կեանքն, և ո՛չ հրեշտակներն, և ո՛չ զօրութիւններն, և ո՛չ ներկայ իրերն, և ո՛չ ապագայ իրերն, և ո՛չ բարձրութիւնն, և ո՛չ խորութիւնն, և ո՛չ մէկ ուրիշ արարած կրնայ զմեզ զատել Աստուծոյ սէրէն՝ որ Քրիստոս Յիսուս մեր Տէրոջմով է [3]։»*

*Այսպէս, և մի՛ միայն այսպէս, կրնայ կեանքը զուարթ, խաղաղ և երջանիկ ըլլալ։*

*Անմեղութիւնը պահեցէք, և պահպանեցէ՛ք ինչ որ բարի է,*
*Վասն զի այս է որ պիտի տանի զմարդ հուսկ յետոյ ի խաղաղութիւն։*

*Եւ այս կերպով է որ պիտի կարենաք անցնիլ այնպիսեաց դասին մէջ «որոնց անուններն կեանքի գրքին մէջ արձանագրուած են։»*

*Եւ այս կերպով է վերջապէս որ պիտի կարենաք երջանիկ ըլլալու յոյս ունենալ, ինչ որ ալ ըլլայ ձեր ճակատագիրն և ձեր նիւթական կացութիւնը, վասն զի,*

*Այն ամէն տեղերն՝ ուր Երկնքի աչքը կ'այցելէ,*
*Երջանկութեան նաւահանգիստներ և ապաստանարաններ են իմաստունին համար։*

(1) Պօղոս Առաքեալ (Թուղթ առ Հռովմ.)։ (2) Ս. Մարկ. Աւետ։ Թուղթ առ Հռովմ։

*Բարի եղէ՛ք, Քինկսլիի ընտիր խօսքերով —*

*Եւ ուզողը Թող փայլի,*
*Դուք ազնիւ բաներ ըրէք — փոխանակ օրն ի բուն անոնց վրայ մտածելու,*
*Եւ այս կերպով Կեանքը, Մահն, և Յաւիտենականութիւնը մեծ և քաղցր նուագի մը պիտի վերածէք։*

*Այսպէս կրնանք վստահ ըլլալ թէ, կեանքի բոլոր նեղութիւններուն, վիշտերուն և դժուարութիւններուն մէջ, «Աստուծոյ խաղաղութիւնն, որ ամէն իմացականութենէ վեր է, ձեր սիրտն ու միտքն Աստուծոյ գիտութեան և սիրոյն մէջ պիտի պահէ,» և Աստուծոյ օրհնութիւնը ձեզի հետ պիտի ըլլայ և միշտ ձեզի հետ պիտի մնայ։*



Digitized by Google

# ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ

## ԵՒ ԱՅԼ ԿԱՐԵՒՈՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ



**Ագրիպպա.** — *Հռովմայեցի զօրավար* (63—12 Ն. Ք. զՔ.)։

**Աթենաս.** — *Ըստ առասպելաց, դուստր Արամազդայ, աստուածուհի գիտութեանց, արուեստից և պատերազմի*։

**Անճէլօ (Միքայէլ).** — *Իտալ. հռչակաւոր պատկերիչ, քանդակագործ և ճարտարապետ* (1475—1567)։

**Աննիբաղ.**—*Կարքեդոնացի հռչակաւոր զօրավար* (247—183 Ն. Ք. զՔ.)։

**Անտոնինոս.** — *Հռովմայեցի կայսր*։

**Ասքամ (Ռօճըր).** — *Անգղ. գիտուն մանկավարժ և բանաստեղծ* (1515—1568)։

**Արամազդ.** — *Ըստ առասպելաց, աստուածոց վեհագոյնն և անմահից և մահկանացուաց հայրը*։

**Արգվրայթ (Սըր Ռիչարտ).**— *Անգղիացի մեքենագէտ* (1732—1792)։

**Արիստոտէլ.** — *Հռչակաւոր Յոյն փիլիսոփայ* (385—322 Ն. Ք. զՔ.)։

**Արխիտաս.** — *Յոյն փիլիսոփայ, ժամանակակից և բարեկամ Պղատոնի* (*Ծն. դէպ ի* 430 Ն. Ք. զՔ.)։

**Արնոլտ (Մաթ.)** . — *Անգղ. բանաստեղծ և քննադատ* (*Ծն.* 1822)։

**Բասգալ (Պլէզ).** — *Գաղղիացի մատենագիր, երկրաչափ և բնագէտ* (1623 1662)։

**Բեդրարգա (Ֆրանչիսկոս).** — *Իտալ. բանաստեղծ* (1304—1374)։

**Բիլ (Սըր Րօպըրդ).** — *Անգղ. Պետական մարդ* (1788—1850)։

**Բօբ (Ալեքսանտր).** — *Անգղ. բանաստեղծ* (1688—1744)։

**Գամբպէլ (Թօմաս).** — *Անգղ. բանաստեղծ* (1777—1844)։

**արլայլ (Թօմաս).** — *Անգղ. հռչակաւոր մատենագիր* (1795—1881)։

**լայվ (Լորտ).** *Անգղ. Պետական մարդ* (1725—1774) —

**լարէնտըն (Կոմս).** *Անգղ. Պետական մարդ և պատմագիր* (1608—1674)։



Digitized by Google

**Գսենոֆոն**. — *Յոյն զօրավար, աշակերտ Սոկրատայ, պատմագիր և փիլիսոփայ* (445—355 Ն. Ք. զՔ.)։
**Գրոմբբըն**. — *Անգղ. երկրաչափ* (1816—1888)։
**Գօլէրիճ**. — *Անգղ. բանաստեղծ* (1772—1834)։
**Գուբբըր (Ուիլեըմ)**. — *Անգղ. բանաստեղծ* (1731—1800)։
**Գոպըըն (Րիչարտ)**. — *Անգղ. տնտեսագէտ* (1804—1865)։

**Եպիկթետոս**. — *Յոյն փիլիսոփայ* (*Բ. դարու մէջ ապրած է*)։

**Էլիըթ (Ճօրճ)**. — *Անգղ. գրագիտուհի* (1819—1880)։
**Էմէրսըն**. — *Ամերիկացի փիլիսոփայ և գրագէտ* (1803—1882)։
**Էքէրման**. — *Գերմանացի մատենագիր* (1792—1857)։

**Թալմուտ**. — *Հաւաքածոյ Հրէից կրօնական և քաղաքական օրինաց և իրաւաբանութեան*։
**Թէգըրէյ (Ուիլեըմ)**. — *Անգղ. մեծանուն վիպասան* (1811—1863)։
**Թէմբլ (Սըր Ուիլեըմ)**. — *Անգղ. մատենագիր և քաղաքագէտ* (1628—1698)։
**Թէննիսըն (Ալֆրէտ)**. — *Անգղ. հռչակաւոր բանաստեղծ* (1809—1892։
**Թէյլըր (Ճէրէմի)**. — *Անգղ. աստուածաբան և քարոզիչ* (1613—1667)։
**Թինտօլ**. — *Անգղ. փիլիսոփայ* (1657—1733)։
**Թովմաս-Քեմբացի**. — *Գերմանացի հոգեւորական մատենագիր* 1380—1471
**Թօրոյ**. — *Ամերիկացի գրագէտ և բարոյախօս* (1817)։

**Ժուպէռ (Յովսէփ)**. — *Գաղղ. բարոյախօս* (1754—1824)։

**Իբօկրատ**. — *Հին ատենի ամէնէն մեծ բժիշկը* (460 Ն. Ք. զՔ.)։

**Լայէլ (Չարլս)**. — *Անգղ. երկրաբան* (1797—1875)։
**Լապռիւյէռ (Յովհաննէս)**. — *Գաղղ. մատենագիր և բարոյախօս* 1645—1696)։
**Լաֆօնթէն (Յովհաննէս)**. — *Գաղղ. առակագիր բանաստեղծ* (1621—1695)
**Լիգուրգոս**. — *Ըստ աւանդութեան, Սպարտայի օրէնսդիր* (Թ. դար Ն.՝ Ք. զՔ.)։

Digitized by Google

**Լոնկֆէլլօ (Հենրիկոս)**. — *Ամերիկացի հռչակաւոր բանաստեղծ* (1807–1882)։

**Լօք (Ջօն)**. — *Անգղ. փիլիսոփայ* (1632—1704)։

**Կէօթէ** — *Գերմանիոյ ամէնէն մեծ բանաստեղծը* (1749—1832)։

**Կիկերոն**. — *Հռովմայեցի մեծանուն ճարտասան և Պետական մարդ* (106—43 Ն. Ք. զՔ.)։

**Կիպպըն (Էտուարտ)**. — *Անգղ. պատմագիր* (1737—1794)։

**Կոլոմպոս (Քրիստափոր)**. — *Ճենովացի հռչակաւոր նաւարկող* (1440—1506)։

**Կոնփուկիոս**. — *Չինացի հռչակաւոր փիլիսոփայ և բարոյախօս* (500 Ն. Ք. զՔ.)։

**Հազլիթ (Ուիլեըմ)**. — *Անգղ. բանաստեղծ, պատմագիր և պատկերահան* (1778—1830)։

**Հերակլէս**. — *Ըստ առասպելաց, որդի Արամազդայ, իւր քաջագործութիւններով նշանաւոր էր*։

**Հերմէս**. — *Ըստ առասպելաց, որդի Արամազդայ, աստուածոց պատգամաւոր, նաև աստուած բժշկութեան և վաճառականութեան*

**Հերշէլ (Սըր Ջօն)**. — *Անգղ. նշանաւոր աստեղագէտ* (1792—1871)։

**Հեփեստոս**. — *Ըստ առասպելաց, որդի Արամազդայ, աստուած հրոյ*։

**Հըքսլի (Թօմըս, Հենրիկոս)**. — *Անգղ. բնախօս* (1825—1900)։

**Հիւկօ (Վիկտօր)**. — *Գաղղ. մեծանուն բանաստեղծ* (1802—1885)։

**Հումպոլդ**. — *Բրուսիացի բնախօս և գիտուն մատենագիր* (1769—1859)։

**Հոմերոս**. — *Յոյն դիւցազներգակ բանաստեղծ, որ հաւանականաբար Քրիստոսէ տասը դար առաջ ապրած է*։

**Ջօնսըն (Սամուէլ)**. — *Անգղ. մատենագիր և բանաստեղծ* (1709—1784)։

**Մաքսուէլ**. — *Անգղ. բնագէտ* (1831—18/9)։

**Մաքօլէյ (Լորտ)**. — *Անգղ. հռչակաւոր պատմագիր, քննադատ և Պետական մարդ* (1800—1859)։

**Մանդէկացցա**. — *Իտալ. բնախօս և մանկավարժ*։

**Մասիյեոն (Յովհաննէս-Մկրտիչ)**. — *Գաղղ. հռչակաւոր պերճախօս քարոզիչ* (1663—1743)։

**Մարկոս-Անտոնիոս**. — *Հռովմայեցի ճարտասան* (148—87 Ն. Ք. զՔ.)։

Digitized by Google

**Մարկոս-Ավրելիոս.** — *Հռովմայեցի կայսր* (161—180 ։
**Մելիտոս.** — *Աթենացի, Սոկրատայ ամբաստանողներէն մին։*
**Մեկենաս.** — *Հռովմայեցի երեւելի մարդ. Օգոստոս կայսեր սիրելին, արուեստներն ու դպրութիւնները պաշտպանեց* (Մ. 8 Ն. Ք. զՔ.)։
**Մէլպըրն (Լորտ).** — *Անգղ. Պետական մարդ* (1779—1848)։
**Միլթըն (Ճօն).** — *Անգղիացի բանաստեղծ* (1608—1674)։
**Միւլլըր (Մագս).** — *Գերմ. հռչակաւոր արեւելագէտ* (1823)։
**Միւսէ (Ալֆրէտ ըը).** — *Գաղղ. բանաստեղծ* (1804—1880)։
**Մորլէյ (Յովհաննէս).** — *Անգղ Պետական մարդ և հրապարակագիր* (1838)
**Մօնթէկիւ (Տիկին).** — *Անգղ. գրագիտուհի* (1690—1762)։
**Մօնթէնեը (Միքայէլ ըը).** — *Գաղղ. բարոյախօս մատենագիր* (1533—1592)։
**Մօնթէսքիէօ (Պարոն ըը).** — *Գաղղ. հռչակաւոր ատենակալ և հրապարակագիր* (1689—1755)։
**Մօրրիս (Ուիլեէմ).** — *Անգղ. բանաստեղծ և պատկերհան* (1838—1896)։

**Նափօլէոն (Պօնափարդ).** — *Կայսր Գաղղիոյ* (1769—1821)։
**Նէլսըն (Հօրաս).** — *Անգղ. ծովակալ* (1758—1805)։
**Նիւթըն (Իսահակ).** — *Անգղ. երեւելի չափագէտ, աստեղագէտ, բնագէտ և փիլիսոփայ* (1642—1727)։

**Շաթօպրիան (Ֆրանչիսկոս-Ռընէ ըը).** — *Գաղղ. հռչակաւոր մատենագիր և Պետական մարդ* (1768—1848)։
**Շանֆօր.** — *Գաղղ. մատենագիր* (1741—1794)
**Շէլմըրս.** — *Սկովտիացի աստուածաբան* (1780—1847)։
**Շէյգսփիր (Ուիլեէմ).** — *Անգղ ամենամեծ Թատերգակ բանաստեղծ* 1564—1616)։
**Շէռպիւլիէ (Վիքթոր).** — *Գաղղ. վիպասան և հրապարակագիր* (1829—1899)։
**Շէրիտան (Ռիչարտ-Պրինսլի-Պըթլըր).** — *Անգղ Թատերագիր հեղինակ և ճարտասան* (1751—1816)։
**Շօբընհաուըր (Արթուր).** — *Գերմանացի յոռետես փիլիսոփ.* (1788—1860)։
**Շօսըր (Ճիօֆֆրէյ).** — *Անգղ. բանաստեղծ* (1328—1400)։

**Ոսկեբերան (Ս. Յովհան).** — *Յոյն եկեղեցւոյ Հայր* (347—407)։

Digitized by Google

**Ուաթ (Ճէյմս).** — *Անգղ. մեքենագէտ* (1736—1819)։
**Ուալբօլ (Ռօպըրդ).** — *Անգղ. մեքենագէտ և Պետական մարդ* (1717—1797)։
**Ուէզլի (Ճօն).** — *Անկլիգան եկեղեցւոյ պաշտօնեայ* (1703—1791)։
**Ուէլլինկդըն (Դուքս).** — *Անգղ. զօրավար* (1769—1852)։
**Ուէճվուտ (Ճօզիա).** — *Անգղ. նշանաւոր արուեստագէտ* (1730—1795)։
**Ուիթթիէ.** — *Ամերիկացի բանաստեղծ և վիպագիր* (—1892)։

**Չէսթրֆիլտ (Լորտ).** — *Անգղ. Պետական մարդ և մատենագիր* (1694—1773)։

**Պաքօն (Ֆրանչիսկոս).** — *Անգղ. երեւելի փիլիսոփայ* 1560—1626)։
**Պայրըն (Լորտ).** — *Անգղ. բանաստեղծ* (1788—1824)։
**Պէկիհօդ.** — *Անգղ. տնտեսագէտ*։
**Պէն Ճօնսըն (Բենիամին Ճօնսըն).** — *Շէյգսփիրէ յետոյ Անգղ. առաջին Թատերգակ բանաստեղծ* (1574—1637)։
**Պէռնարտէն տը Սէն-Բիէռ.** — *Գաղղ. նշանաւոր մատենագիր* (1737—1814)։
**Պըդլըր (Յովսէփ).** — *Անգղ. աստուածաբան* (1692—1752)։
**Պըրնս (Ռօպըրդ).** — *Սկովտիացի անուանի բանաստեղծ* (1759—1796)։
**Պիւֆօն (Գէորգ-Լուդովիկոս Լըգլէրք).** — *Գաղղ. երեւելի բնախօս և մատենագիր* (1707—1788)։
**Պլինիոս.** — *Լատին բնախօս և մատենագիր* (23—79)։
**Պլուտարքոս.** — *Յոյն պատմագիր և բարոյախօս* (50—139)։
**Պղատօն.** — *Յոյն փիլիսոփայ Սոկրատի աշակերտն և Արիստոտէլի վարժապետն եղած է* (430—347 Ն. Ք. զՔ.)։
**Պուտտա (այսինքն Իմաստուն)** *կամ* **Սաքիամունի.** — *Հիմնադիր պուտտայական կրօնքի*։
**Պրինտլի.** — *Անգղ. նշանաւոր մեքենագէտ*։
**Պրօուն (Թովմաս).** — *Անգղ. նշանաւոր բժիշկ և մատենագիր* (1605—1682)։

**ատի.** — *Պարսից ամէնէն մեծ բանաստեղծը* (1184—1291)։
**նսըր (Հէրպէրդ).** — *Անգղ. փիլիսոփայ* (1820—1903)։
**օթ (Սըր Ուալթըր).** — *Անգղ. բանաստեղծ և վիպասան* (1771—1832)։

Digitized by Google

